ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 4
Ա Պ Ր Ի Լ
1958 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



### Письма и корреспонденции



### Критика и библиография



# ԱՎԵԼԻ ԽՈՐԱՑՆԵԼ ԱԳԻՏԱՑԻՈՆ-ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

*Մասսաների կոմունիստական դաստիարակության գործում անգնահատելի դեր է կատարում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը։ Պատահական չէ, որ մեր պարտիան իր ամենօրյա բազմակողմանի գործունեության մեջ մեծ ուշադրություն է դարձնում այդ աշխատանքին, խնամքով ընտրում է պրոպագանդիստներին ու ագիտատորներին, հոգ է տանում նրանց արդյունավետ գործունեության մասին։*

*Մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքի հիմնական բովանդակությունը Կոմունիստական պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության խոր պարզաբանումն է, որի միջոցով աշխատավորները մոբիլիզացվում են ժողովրդատնտեսական պլանների կատարման, կոմունիստական շինարարության գործում նորանոր հաջողությունների հասնելու համար։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջին ընտրությունների ժամանակշրջանում պարտիական կազմակերպությունները ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի հսկայական փորձ կուտակեցին։ Այժմ մեր խնդիրն է՝ լայնորեն արմատավորել այդ փորձը, հավաքել և ի մի բերել այն ամենը, ինչ դրական է ու կարող է օգտակար լինել մեր հետագա աշխատանքի մեջ։*

*Ի՞նչն էր ամենից բնորոշը ընտրությունների շրջանում մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքի համար։*

*Հայտնի է, որ նախընտրական կամպանիայի օրերին պարտիան մեր պրոպագանդիստներին ու ագիտատորներին զինեց ևս մի հիանալի փաստաթղթով՝ ՍՄԿՊ Կենտկոմի դիմումով, որն ուղղված էր բոլոր ընտրողներին և որի մեջ վառ ու համոզիչ ցույց էր տրված, թե ինչպես Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը հաջողությամբ կատարեցին այն ծրագիրը, որով հանդես էին եկել նախորդ ընտրություններին։ Պարտիան ու կառավարությունը դրանով իսկ մեկ անգամ ևս ցույց տվին իրենց հավատարմությունը ժողովրդին, հսկայական հաջողությունների հասան մեր երկրի ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման բոլոր բնագավառներում, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում։*

*Սովետական ժողովրդի քառամյա պայքարի արդյունքների պրոպագանդան ու լայն մասսայականացումը մեր բոլոր պրոպագանդիստների ու ագիտատորների գլխավոր խնդիրն էր։ Նրանք իրենց զեկուցումների, զրույցների ժամանակ հատուկ ուշադրություն էին հատկացնում ինչպես ՍՍՌՄ-ի, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի այն նվաճումների ցուցադրմանը, որոնք ձեռք են բերվել Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականությունն անշեղորեն իրականացնելու շնորհիվ։*

*Հենվելով անցյալ ընտրությունների ժամանակ կատարած քաղաքական*

աշխատանքի փորձի վրա, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություն-
ները ձգտում էին ավելի լրիվ օգտագործել իդեոլոգիական աշխատանքի բոլոր
լծակները, միջոցներն ու ձևերը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնը ագիտպունկտն էր։
Այստեղ պարբերաբար տեղի էին ունենում կուլտուր-մասսայական միջոցա-
ռումներ, դասախոսություններ, կոնսուլտացիաներ, հարց ու պատասխանի
երեկոներ, ինչպես և անհատական զրույցներ ընտրողների հետ։

Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի կազմակերպման գոր-
ծում ուշադրության արժանի փորձ ձեռք բերեց Երևանի պարտիական կազ-
մակերպությունը։

Քաղաքի մի շարք ագիտկետերում կազմակերպվում էին ռադիոհաղոր-
դումների կոլեկտիվ ունկնդրումներ և հեռուստատեսային հաղորդումների դի-
տումներ, ինչպես նաև մասսայական էքսկուրսիաներ դեպի «Հայաստանի ժո-
ղովրդական տնտեսության» ցուցահանդեսը, քաղաքի թանգարանները։ Կազ-
մակերպվում էին նաև երիտասարդության հանդիպումներ Հոկտեմբերյան ռևո-
լյուցիայի, քաղաքացիական ու Հայրենական պատերազմների վետերանների,
գիտության, կուլտուրայի և արվեստի ականավոր գործիչների հետ։

Շատ ագիտկետերում կիրառվում էր մասսայական աշխատանքի այնպիսի
ձև, ինչպիսին է «բանավոր հանդեսը»։ Այսպես, օրինակ, Կիրովի անվան գոր-
ծարանի պարտիական կազմակերպության կողմից սպասարկվող ագիտպունկ-
տում «բանավոր հանդես»-ին մասնակցել են պարտիայի քաղկոմի դասախոս-
ներից, ինչպես նաև ՍՍՌՄ ժողովրդական արտիստ Հր. Ներսիսյանը, Հայկա-
կան ՍՍՌ ժողովրդական արտիստներ՝ Ա. Ավետիսյանը, Թ. Սարյանը, գրող-
ներ՝ Գ. Սարյանը, Ա. Դարբնին և Սարմենը։

Երևանի քաղաքային կոմիտեն պարտիական կազմակերպությունների
ուշադրությունն ուղղում էր ընտրողների հետ շերտավորված աշխատանք
կատարելու վրա՝ անմիջականորեն ըստ նրանց բնակավայրի։

Պարտիայի Երևանի քաղկոմը և շրջկոմները մեծ ուշադրություն էին հատ-
կացնում ագիտկոլեկտիվներին մեթոդական օգնություն ցույց տալու և հրա-
հանգավորման հարցի վրա։ Քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը
ագիտատորների համար հայերեն և ռուսերեն պատրաստել էր տեղեկատու
նյութեր՝ չորս տարվա ընթացքում քաղաքի արդյունաբերության, տրանսպոր-
տի, բնակարանային ու կուլտուրական շինարարության բնագավառներում կա-
տարած աշխատանքի արդյունքների մասին, ինչպես և առաջիկա տարիներին
քաղաքի զարգացման հեռանկարների մասին։ Ագիտատորներին օգնելու հա-
մար նույնանման տեղեկատուներ էին պատրաստված նաև մի քանի խոշոր
ձեռնարկություններում։

Բովանդակալից աշխատանք էին կատարում Լենինական քաղաքի շատ
ագիտկետեր։ Այս տեսակետից աչքի էր ընկնում, օրինակ, № 18 ընտրական
տեղամասի ագիտկետի աշխատանքը։ Այս ագիտկետը կահավորված էր լավ,
այնտեղ ստեղծված էր ագիտկոլեկտիվ, մշակված էր տեղամասի ընտրողների
հետ կատարվելիք աշխատանքի մանրամասն պլան, կազմակերպված էր ցու-
ցահանդես։ Դիագրամների, թվերի, փաստերի, ֆոտոնկարների միջոցով
ցույց էին տրված սովետական ժողովրդի այն հաջողությունները, որ ձեռք են
բերվել Սովետական իշխանության տարիներին։ Ագիտկետում սիստեմատիկա-
բար զեկուցումներ ու դասախոսություններ էին կազմակերպվում «ՍՍՌՄ



Կոնստիտուցիայի», «Սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական բնույ-
թի», «Սոցիալիստական հանրային սեփականության պաշտպանման», «Քաղա-
քում և բնակելի տներում սանիտարական ռեժիմի պահպանման» և այլ թե-
մաների մասին։

Ագիտկետում գործում էր շրջիկ գրադարան, որից օգտվում էին մեծ թվով
ընտրողներ։ Հաճախ ընտրողների համար ցուցադրվում էին կինոնկարներ, իսկ
երեխաների համար կազմակերպվում էին մանկական ցերեկույթներ։ Ընտրող-
ների օգնությամբ ագիտկետում պարբերաբար լույս էր ընծայվում «Սովետա-
կան ընտրող» պատի թերթը։

Ինչպես Լենինականում, այնպես էլ ուրիշ տեղերում լայնորեն կիրառվում
էր քաղաքական աշխատանքի այնպիսի մի ձև, ինչպիսին է հարց ու պատաս-
խանի երեկոն։ Ընդհանրապես ագիտկետերը լուրջ էին մոտենում այդ երեկո-
ներին և խնամքով էին նախապատրաստում դրանք։ Այդպիսի երեկոներին պա-
տասխաններով հանդես էին գալիս բանիմաց մարդիկ՝ պարտիական ու սովե-
տական աշխատողներից։

Ընտրական կամպանիան նախապատրաստելու և անցկացնելու, մասսա-
ների մեջ քաղաքական աշխատանք կազմակերպելու գործում շրջանային կազ-
մակերպություններին օգնելու համար փետրվար ամսի սկզբներին պարտիայի
Կենտկոմը շրջաններն ուղարկեց մի խումբ ընկերների, որոնց մեջ կային
Հայաստանի ԿՊ Կենտկոմի անդամներ, ռեսպուբլիկայի իդեոլոգիական բնա-
գավառի հիմնարկությունների ղեկավար աշխատողներ։ Ռեսպուբլիկայի բոլոր
շրջաններն ուղարկվեց նաև որակյալ դասախոսների մի քանի խումբ, որոնց
մեջ էին Երևանի Պետական համալսարանի իրավաբանական ֆակուլտետի ամ-
բողջ պրոֆեսորա-դասախոսական կազմը, համալսարանի և Երևան քաղաքի
մյուս բուհերի մարքսիզմ-լենինիզմի, քաղաքատնտեսության ու փիլիսոփայու-
թյան դասախոսները։ Պարտիական կոմիտեների դասախոսներին տեսական ու
մեթոդական օգնություն ցույց տալու համար ՀԿՊ Կենտկոմի պրոպագանդայի
ու ագիտացիայի բաժինը մշակեց և տեղերն ուղարկեց ՍՍՌՄ Գերագույն Սո-
վետի ընտրություններին վերաբերող դասախոսությունների, զեկուցումների և
զրույցների օրինակելի թեմատիկա, ինչպես նաև պատրաստի տեքստեր՝ հե-
տևյալ թեմաներով. «Սովետական կարգերն ամենադեմոկրատական կարգերն
են աշխարհում», «Սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական սկզ-
բունքները» և այլն։

Հայպետհրատը մեծ տիրաժով լույս ընծայեց «ՍՍՌՄ Կոնստիտուցիան»
և «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությունը», մի շարք
բրոշյուրներ մասսայական ընթերցանության համար և պլակատներ։

Լայն աշխատանք ծավալեցին նաև մամուլը և ռադիոն։

Ընտրական կամպանիայի օրերին պարտիական կազմակերպությունների
կատարած մասսայական-քաղաքական աշխատանքը նպաստում էր աշխատա-
վորների արտադրական ակտիվության բարձրացմանը։ Ամենուրեք սոցիալիս-
տական մրցություն էր ծավալվում վերջերորդ հնգամյակի երկրորդ տարվա
պլանները ժամկետից շուտ կատարելու համար։

Այստեղ, իհարկե, դժվար է թվարկել բոլոր այն դրական երևույթները,
որոնք երևան եկան ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակա-
շրջանում ծավալված ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքում։
Այժմ խնդիրը կայանում է նրանում, որ պարտիական կազմակերպություններն

ընդհանրացնեն այդ աշխատանքի դրական փորձը, է՛լ ավելի բարձրացնեն ագիտացիայի ու պրոպագանդայի գաղափարական-քաղաքական մակարդակը, այն ավելի սերտորեն կապեն կյանքի, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ։

Դրական փորձի ընդհանրացումը կարևոր և անհետաձգելի գործ է, որով պարտավոր են զբաղվել մեր բոլոր պարտիական կազմակերպությունները։ Սակայն ընդհանրացնել դրական փորձը, այդ չի նշանակում հավաքել դրական երևույթները և արձանագրել նրանց գոյության փաստը։ Դրական փորձի ընդհանրացումը պետք է հասկանալ այն արմատավորելու, ավելի լայն տարածելու իմաստով։

Հենվելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակաշրջանում կատարված ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձի վրա, պարտիական կազմակերպությունները պարտավոր են է՛լ ավելի առաջ մղել այդ գործը, է՛լ ավելի ծավալել ու խորացնել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը, որը պետք է լինի սիստեմատիկ, նպատակասլաց ու արդյունավետ։ Մինչդեռ փաստերը ցույց են տալիս, որ շատ տեղերում ընտրությունների ավարտելուց հետո առանձին պարտիական կազմակերպություններ իրենց միսիան համարել են վերջացած։ Անշուշտ դժվար է Գերագույն Սովետի ընտրություններից հետո անխտիր պահպանել բոլոր ագիտպունկտերը, բայց ագիտկոլեկտիվները հնարավոր է և անհրաժեշտ է պահպանել։ Ավելին։ Ոչ միայն պետք է պահպանել ագիտկոլեկտիվները, այլև հարկավոր է է՛լ ավելի բարելավել նրանց աշխատանքը։ Այդ հարկավոր է անել նախ և առաջ այն պատճառով, որ մեր երկրի առաջ նոր խնդիրներ են դրված, որոնց լուծումը պահանջում է ավելի բարձրացնել աշխատավոր մասսաների գիտակցականության մակարդակը։

Սովետական ժողովուրդը և նրա հետ միասին ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը մեծ գոհունակությամբ ընդունեց ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիայի՝ կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու, ՍՍՌՄ կառավարության՝ ՍՍՌ Միության Մինիստրների Սովետ կազմելու, Սովետական Միության կողմից ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումները միակողմանիորեն դադարեցնելու մասին որոշումները, ինչպես նաև աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին՝ միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու հարցի վերաբերյալ ընդունած Դիմումը։ Պատմական մեծագույն նշանակություն ունեցող այդ փաստաթղթերում վառ կերպով ցույց են տրված Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սոցիալիզմից դեպի կոմունիզմ ընթացող սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի հաջողությունները, տրված է նրա պայքարի ու աշխատանքի հետագա ծրագիրը՝ ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու անհողդողդ կամքը։ Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ լայնորեն մասսայականացնել ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի նյութերը և մեր բոլոր աշխատավորներին մոբիլիզացնել նրանց առաջ դրված նոր խնդիրները պատվով կատարելու համար։

Պարտիայի ու կառավարության առաջադրած նոր խնդիրների կատարումը պահանջում է ամենուրեք պահպանել ու ավելի ուժեղացնել ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակաշրջանում ծավալված ագիտացիոն-



պրոպագանդիստական աշխատանքի թափը։ Իսկ նրանք, ովքեր փորձում են թուլացնել այդ թափը, չեն ըմբռնում հարցի լրջությունը կամ չեն պատկերացնում այն աշխատանքը, որ պարտավոր են կատարել մեր Հայրենիքի զարգացման նոր էտապում։

Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի հետագա բարելավումը պարտիական կազմակերպություններից պահանջում է ավելի լուրջ ուշադրություն դարձնել հատկապես ագիտատորների ընտրության ու նրանց ցույց տրվող օգնության վրա։ Ճիշտ է, որ վերջին շրջանում ագիտացիոն աշխատանքում ներգրավվեցին նոր մարդիկ. հատկապես նկատելի է այն աշխուժությունը, որ հանդես են բերում ակտիվը, ինտելիգենցիան։ Բայց դրա հետ միասին առանձին տեղերում որպես ագիտատորներ առաջ են քաշվել մարդիկ, որոնք անհրաժեշտ գիտելիքներ չունեն այդ գործի համար։ Ուրեմն, հարկավոր է ո՛չ միայն վերանայել և ուժեղացնել ագիտկոլեկտիվների կազմը, այլև մեթոդական ու տեսական օգնություն կազմակերպել, ամեն կերպ բարձրացնել նրանց աշխատանքի գաղափարական մակարդակը։

Պարտիական կազմակերպությունները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն նաև ցուցադրական ագիտացիայի վրա։ Դիագրամաների, պլակատների, ֆոտոթերթերի և ցուցադրական ագիտացիայի այլ ձևերի միջոցով նրանք պետք է ցույց տան ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զարգացման բնագավառներում ձեռք բերված նվաճումները և այն ցուցանիշները, որին հասել է տվյալ արդյունաբերական ձեռնարկությունը, կոլտնտեսությունն ու հիմնարկությունը։ Ցուցադրական ագիտացիայի միջոցով միաժամանակ պետք է ցույց տալ նաև այն խնդիրները և սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները, որոնց կատարումը դրված է մեր առաջիկա աշխատանքի հիմքում։

Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի հետագա բարելավման ու ծավալման գործում պարտիական կազմակերպություններին պետք է իրական օգնություն ցույց տան ռեսպուբլիկական, քաղաքային, շրջանային ու բազմատիրաժ թերթերը։ Նրանք իրենց էջերում պետք է մասսայականացնեն լավագույն պրոպագանդիստների և ագիտատորների աշխատանքի դրական փորձը, սիստեմատիկաբար նյութեր տպագրեն մարքսիզմ-լենինիզմի տեսության, սոցիալիստական լագերի երկրների ձեռք բերած հաջողությունների, տեխնիկայի ու գիտության նորությունների, միջազգային դրության և այն բոլոր խնդիրների մասին, որոնք անհրաժեշտ են պրոպագանդիստներին ու ագիտատորներին։ Դրա հետ միասին թերթերի էջերում քննադատության պետք է ենթարկել այն պարտկազմակերպություններին ու նրանց ղեկավարներին, որոնք ինչպես հարկն է չեն զբաղվում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի կազմակերպման հարցերով։ Բայց միայն քննադատելը բավական չէ. անհրաժեշտ է հետևողականություն ցուցաբերել նշված թերությունները կարճ ժամանակամիջոցում վերացնելու և ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը սիստեմատիկաբար ու գաղափարական-քաղաքական բարձր մակարդակով ծավալելու համար։

Լուրջ անելիքներ ունեն նաև ռադիոն, հեռուստատեսությունը, կուլտուրլուսավորական հիմնարկները, Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը, հրատարակչությունները և իդեոլոգիական աշխատանքի մյուս հիմնարկություններն ու կազմակերպությունները։ Հաշվի առնե-

*լով մեր հասարակության զարգացման ներկա էտապի հոյակապ խնդիրների մեծությունն ու սովետական ժողովրդի բազմաբեղուն աշխատանքի լայն ծավալը, նրանք պետք է ավելի ուժեղացնեն և բովանդակալից դարձնեն բնակչության շրջանում կատարվող աշխատանքը, սիստեմատիկաբար ու հետևողականորեն պրոպագանդեն նորը, առաջավորը, ուսանելին, որ ամեն օր ծնունդ են առնում մեր գործարաններում ու ֆաբրիկաներում, հանքերում ու տրանսպորտում, կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում, ուսումնական ու գիտական հաստատություններում։ Պրոպագանդելով ու մասսայականացնելով նորը, առաջավորը, մեր կադրերի, սովետական բոլոր մարդկանց մոտ պետք է էլ ավելի բարձրացնել պարտիական ու պետական կարգապահությունը, ամեն կերպ զարգացնել նորարարությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը, չթուլացող պայքար ծավալելով հասարակության առանձին խավերի գիտակցության մեջ եղած կապիտալիզմի մնացուկների վերացման համար։*

*Իդեոլոգիական հիմնարկությունների և կազմակերպությունների ամբողջ աշխատանքը պետք է նպաստի այն բոլոր խնդիրների կատարմանը, որոնք առաջադրել են Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը։*

*Այժմ, երբ երկրի արդյունաբերական ձեռնարկությունները թևակոխել են ընթացիկ տնտեսական տարվա երկրորդ եռամսյակը, երբ կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում լայն ծավալ են ստանում գարնան դաշտային աշխատանքները, պարտիայի քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները պետք է ամենուրեք ամրապնդեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակաշրջանում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի բնագավառում ձեռք բերված հաջողությունները, ավելի կատարելագործեն և ուժեղացնեն մասսաների շրջանում կատարվող քաղաքական աշխատանքը, գործի դնեն պրոպագանդայի ու ագիտացիայի բոլոր ձևերն ու մեթոդները։ Ներգործուն, նպատակասլաց և կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ սերտորեն կապված ագիտացիայի ու պրոպագանդայի միջոցով ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները պետք է բոլոր բանվորներին, ինժեներա-տեխնիկական անձնակազմին, կոլտնտեսականներին ու գյուղատնտեսության մասնագետներին մոբիլիզացնեն արտադրական պլանները ոչ միայն կատարելու, այլև գերակատարելու։ Դա է պահանջում մեր Հայրենիքի, սովետական ժողովրդի շահը, ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն ստեղծելու շահը։*

---

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻՑ ՍՈՑԻԱԼԻԶՄԻՆ ԱՆՑՆԵԼՈՒ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

*Ա. ԲԱՂՄԱՆՅԱՆ*

*Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունների և ազգային առանձնահատկությունների հարցը կարևորագույն տեղ է գրավում գիտական կոմունիզմի թեորիայի մեջ։ Այն ժամանակակից բանվորական և կոմունիստական շարժման ամենաակտուալ հարցերից մեկն է։ Այդ հարցի բացառիկ կարևորության մասին են վկայում ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները և սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 թվականի նոյեմբերին Մոսկվայում տեղի ունեցած խորհրդակցության Դեկլարացիան։*

*Համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այդ փաստաթղթերում ընդգծվեց, որ մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, որն սկսվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայով Ռուսաստանում։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան նոր դարագլուխ բացեց ամբողջ մարդկային հասարակության պատմության մեջ։ Նա առհավետ ոչնչացրեց կապիտալի տիրապետությունը, մարդու կողմից մարդու շահագործումը և երկրագնդի մեկ վեցերորդ մասում դրեց պրոլետարիատի քաղաքական տիրապետության սկիզբը։*

*Հոկտեմբերյան հեղաշրջումը և սոցիալիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում հսկայական հեղափոխականացնող ազդեցություն ունեցան բոլոր երկրների շահագործվող և աշխատավոր մասսաների վրա։ Հաղթանակած սոցիալիզմի առաջին երկրի օրինակով նրանք սկսեցին մահու և կենաց պայքար մղել կապիտալի տիրապետության դեմ, հանուն այնպիսի արդար հասարակարգի, որտեղ չի լինի մարդու կողմից մարդու շահագործում, ուր բոլորը կլինեն ազատ, և հասարակական կյանքում բնականորեն կիշխեն խաղաղությունը և աշխատանքը։*

*Երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում և նրանից հետո այդ պայքարն էլ ավելի հզոր թափ ստացավ։ Դրա անմիջական արդյունքը եղավ այն, որ Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրների ժողովուրդներ իրենց ուսերից դեն նետեցին շահագործման լուծը և կանգնեցին զարգացման նոր ուղու վրա։ Իմպերիալիզմի լուծը թոթափեցին և սոցիալիզմի ուղի դուրս եկան այնպիսի երկրներ, ինչպիսիք են՝ 600 միլիոն բնակչություն ունեցող Չինաստանը, Լեհաստանը, Չեխոսլովակիան, Բուլղարիան, Ռումինիան, Հունգարիան, Ալբանիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Հարավսլավիան։ Այդ նշանակում է, որ հետպատերազմյան*

*ժամանակաշրջանում սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի սահմաններից և
վերածվեց համաշխարհային սիստեմի։*

*Մենք ապրում ենք մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ անչափ աճել
են սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերը, երբ սոցիալիզմը ձգողական ուժ է
դարձել բոլոր երկրների աշխատավորական մասսաների համար։ Կապիտալիզմն
անզոր եղավ և այսուհետև էլ ավելի ևս անզոր է կասեցնելու մարդկության
հաղթական երթը դեպի կոմունիզմ։ Ոչ մի ուժ չի կարող կապիտալիզմը փրկել
նրա անխուսափելի կործանումից։ Այն կարգերը, որոնք հիմնված են մի բուռ
շահագործողների բռնի իշխանության, արտադրության միջոցների մասնավոր
սեփականության, մարդու կողմից մարդու շահագործման վրա, որոնց պայ-
մաններում աշխատանքը կրում է հանրային բնույթ, իսկ յուրացումը՝ մասնա-
վոր, որտեղ գոյություն ունի արտադրության անարխիա, անդունդ քաղաքի
և գյուղի, մեծ և փոքր ազգերի միջև, որտեղ սովը, աղքատությունը, թշվառու-
թյունն ու համաճարակը հանդիսանում են մարդկանց բացարձակ մեծամաս-
նության կյանքի մշտական ուղեկիցը, պատմականորեն դատապարտված են
կործանման։*

⁂

*ՍՍՌՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների փորձը լիովին հաստատել է
մարքս-լենինյան տեսության այն դրույթի ճշտությունը, որ սոցիալիստական
ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության պրոցեսները խարսխված են
սոցիալիզմի ուղին թևակոխող բոլոր երկրներին հատուկ մի շարք գլխավոր
օրինաչափությունների վրա։*

*«Այդպիսի ընդհանուր օրինաչափություններ են. այս կամ այն ձևով պրո-
լետարական ռևոլյուցիայի իրականացման և այս կամ այն ձևով պրոլետա-
րիատի դիկտատուրայի հաստատման գործում աշխատավոր զանգվածների
ղեկավարումը բանվոր դասակարգի կողմից, որի կորիզը մարքս-լենինյան
պարտիան է. բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հիմնական զանգ-
վածի և աշխատավորության մյուս խավերի հետ, արտադրության հիմնական
միջոցների նկատմամբ կապիտալիստական սեփականության վերացումը և
հանրային սեփականության հաստատումը։ Գյուղատնտեսության աստիճանա-
կան սոցիալիստական վերափոխումը. ժողովրդական տնտեսության պլանա-
չափ զարգացումը, որն ուղղված է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման,
աշխատավորների կենսամակարդակի բարձրացման նպատակին. գաղափարա-
խոսության ու կուլտուրայի ասպարեզում սոցիալիստական ռևոլյուցիայի իրա-
կանացումը և բանվոր դասակարգին, աշխատավոր ժողովրդին, սոցիալիզմի
գործին նվիրված ստվար ինտելիգենցիայի ստեղծումը. ազգային ճնշման վե-
րացումը և ժողովուրդների միջև իրավահավասարության ու եղբայրական բա-
րեկամության հաստատումը. արտաքին և ներքին թշնամիների ոտնձգություն-
ներից սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը. մյուս երկրների բանվոր
դասակարգի հետ տվյալ երկրի բանվոր դասակարգի համերաշխությունը՝ պրո-
լետարական ինտերնացիոնալիզմը» (Սոցիալիստական երկրների կոմունիստա-
կան և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության
Դեկլարացիան)։*

*Այդ ընդհանուր օրինաչափությունների իմաստն ու նշանակությունը հաս-*



*կանալու և վերլուծելու համար անհրաժեշտ է տալ նրանցից յուրաքանչյուրի
համառոտ բնութագրումը։ Պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի ապա-
հովման, պրոլետարիատի դիկտատուրայի նվաճման ու ամրապնդման և նոր
հասարակարգի կառուցման առաջին անհրաժեշտ պայմանը ամենուրեք աշխա-
տավոր մասսաների նկատմամբ բանվոր դասակարգի ղեկավար դերի իրականա-
ցումն է, անկախ այն բանից, թե ինչ ձևով կարող է տեղի ունենալ այդ ռևո-
լյուցիան և ինչպիսի ձևեր կընդունի պրոլետարիատի դիկտատուրան։ Սոցիա-
լիստական ռևոլյուցիայի հիմնական հարցը պրոլետարիատի դիկտատուրայի
հարցն է։ Պրոլետարիատի դիկտատուրան հանդիսանում է տապալված դասա-
կարգերի դիմադրության ճնշման, աշխատավորներին բանվոր դասակարգի
շուրջը համախմբելու և սոցիալիզմի կառուցման գլխավոր գործիքը ժողովրդի
ձեռքին։*

*Բացահայտելով հասարակական զարգացման խոր պրոցեսները և կա-
պիտալիզմից սոցիալիզմին անցնելու կարևորագույն օրինաչափությունը, Վ. Ի.
Լենինը ցույց էր տալիս, որ «առաջընթաց զարգացումը, այսինքն՝ զարգացու-
մը դեպի կոմունիզմ, ընթանում է պրոլետարիատի դիկտատուրայի միջով, և
այլ կերպ ընթանալ չի կարող, որովհետև շահագործող կապիտալիստների դի-
մադրությունը խորտակելու համար էլ ուրիշ ոչ ոք չկա և այն այլ ճանապար-
հով խորտակել չի կարելի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 600)։ Դրա հետ
միասին նա սովորեցնում էր, որ պրոլետարիատը կարող է կատարել իր հա-
մաշխարհային պատմական միսիան՝ ոչնչացնել բուրժուազիայի քաղաքական
ու տնտեսական տիրապետությունը, նվաճել քաղաքական իշխանությունը և
կառուցել նոր հասարակարգ միայն այն դեպքում, երբ նա ունենա ռևոլյուցիոն
թեորիայով զինված պարտիա։*

*Պարտիան բանվոր դասակարգի ամենաառաջավոր, ամենագիտակից և
կազմակերպված ջոկատն է։ Նա գաղափարապես դաստիարակում և իր շուրջն
է համախմբում բանվոր դասակարգին ու բոլոր աշխատավորներին և նրանց
գործունեությունն ուղղում է մի ընդհանուր նպատակի։*

*Պրոլետարիատի կողմից պարտիայի ղեկավարությամբ քաղաքական իշ-
խանության նվաճման ու պահպանման և սոցիալիզմի կառուցման մյուս կա-
րևորագույն օրինաչափությունը բանվոր դասակարգի դաշինքն է գյուղացիու-
թյան հիմնական զանգվածի և մնացած աշխատավորական խավերի հետ։
Չնայած ռևոլյուցիայի հիմնական և ղեկավար ուժը հանդիսանում է պրոլետա-
րիատը, բայց քանի որ երկրների մեծ մասում նա կազմում է բնակչության
փոքրամասնությունը, ուստի նրա ուժերը բավական չեն ռևոլյուցիայի մեջ
հաղթանակն ապահովելու և սոցիալիստական հասարակարգ կառուցելու հա-
մար։ Դրա համար անհրաժեշտ է, որպեսզի բանվոր դասակարգը դաշինք կնքի
գյուղացիության և հասարակության մյուս աշխատավորական խավերի հետ,
որոնք կազմում են բնակչության հոծ մեծամասնությունը։ Պատմության դա-
սերը ցույց են տալիս, որ ռևոլյուցիայի ելքը և պրոլետարիատի դիկտատու-
րայի ամրությունը խոշոր չափով կախված են գյուղացիության հիմնական զանգ-
վածի և մնացած աշխատավորական խավերի բռնած դիրքից։ Ահա թե ինչու
բանվոր դասակարգը պետք է գործադրի բոլոր ջանքերը՝ իր կողմը գրավելու
աշխատավորական լայն մասսաներին և նրանց հետ ստեղծելու ամուր դա-
շինք։*

*Այդ խնդրի իրագործման հետ միասին պրոլետարական ռևոլյուցիան ար-*

մատապես պետք է լուծի նաև ազգային հարցը: Միայն այդ դեպքում կարելի է ստեղծել ամուր դաշինք բոլոր ազգությունների ու ժողովուրդների բանվոր դասակարգի, գյուղացիության հիմնական զանգվածի և մնացած աշխատավորների միջև:

Այդ պատճառով էլ ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո պրոլետարիատն օգտագործում է իր տրամադրության տակ եղած բոլոր քաղաքական ու տնտեսական միջոցները, որպեսզի լիկվիդացնի բուրժուազիայի կողմից սերմանվող ազգային ատելությունն ու խտրականությունը, մեծ և փոքր ազգությունների միջև ստեղծի իրական հավասարություն ու սերտ բարեկամություն, նախկինում հետամնաց ազգերին բարձրացնի առաջավոր ազգի մակարդակին:

Սոցիալիստական ռևոլյուցիայի մյուս գլխավոր խնդիրներից մեկն այն է, որպեսզի լիկվիդացվեն մասնավոր սեփականության վրա խարսխված կապիտալիստական արտադրահարաբերությունները և ստեղծվեն նոր, սոցիալիստական արտադրահարաբերություններ, որոնք հիմնվում են արտադրության միջոցների հանրային սեփականության վրա: Կապիտալիզմի օրոք աշխատանքը կրում է հասարակական բնույթ, իսկ յուրացումը՝ մասնավոր: Սոցիալիստական ռևոլյուցիայի խնդիրն է՝ վերացնել այդ անտագոնիզմը, մեկընդմիշտ բուրժուազիայից խլել արտադրության միջոցները, այն վերածել համաժողովրդական սեփականության և այդ հիման վրա ստեղծել այնպիսի արտադրահարաբերություններ, որոնք համապատասխանում են արտադրողական ուժերի բնույթին: Բայց սոցիալիզմի լիակատար հաղթանակի համար բավական չէ ոչնչացնել արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը և այն համաժողովրդական սեփականություն դարձնել: Դրա համար անհրաժեշտ է նաև հիմնովին վերափոխել մանր անհատական սեփականության վրա հիմնըված արտադրությունը, բայց բոլորովին այլ եղանակով: Եթե պրոլետարական իշխանությունն ունեզրկում է շահագործող դասակարգին, ապա մանր արտադրողներին՝ գյուղացիներին և քաղաքի մանր արհեստավորներին ու տնայնագործներին աստիճանաբար, կամավորական հիմունքներով ընդգրկում է զանազան տիպի կոոպերատիվ միավորումների մեջ:

Նոր, սոցիալիստական արտադրահարաբերությունները ծնում են ամբողջ ժողովրդական տնտեսությունը համապետական մասշտաբով պլանավորելու և զարգացնելու օրենքը: Ժողովրդական տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարման անհրաժեշտությունը բխում է սոցիալիստական արտադրական հարաբերությունների բուն էությունից, որոնք խարսխվում են արտադրության միջոցների հանրային սեփականության վրա: Ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը սոցիալիստական տնտեսության անընդհատ վերելքի գրավականն է: Պետական պլանավորումը պարտիային ու կառավարությանը թույլ է տալիս երկրի էկոնոմիկայի զարգացման ասպարեզում իրագործել նպատակների միասնություն և լիակատար համաձայնություն, առավել ռացիոնալ կերպով օգտագործել նրա տնտեսական ռեսուրսները, դրանք ուղղելու ժողովրդա-տնտեսական կարևորագույն խնդիրների լուծմանը:

Նոր հասարակարգի կառուցման մյուս անհրաժեշտ պայմանն այն է, որպեսզի քաղաքական ու տնտեսական վերափոխություններին զուգընթաց իրականացվի նաև ռևոլյուցիա գաղափարախոսության և կուլտուրայի ասպարեզում: Դրա նպատակն է մարդկանց գիտակցությունը մաքրել կապիտալիզմի



մնացուկներից, նախապաշարմունքներից և հին հասարակության վնասակար տրադիցիաներից: Բայց այդ բոլոր միջոցառումների կենսագործման և պետական, տնտեսական ու կուլտուրական բնագավառներում աշխատելու համար հաղթանակած պրոլետարիատը պետք է ստեղծի կոմունիզմի գործին նվիրված նոր ինտելիգենցիա: Երկրորդ ինտերնացիոնալի լիդերները պնդում էին, որ պրոլետարիատը չի կարող նվաճել քաղաքական իշխանությունը և այն պահել իր ձեռքում, եթե առկա չեն բավական քանակությամբ պատրաստի կուլտուրական և ադմինիստրատորական կադրեր, որոնք ընդունակ լինեին երկիր կառավարելու: Լենինը ջախջախեց այդ տեսակետը և ցույց տվեց, որ կապիտալիզմի օրոք բանվոր դասակարգը ոչ ժամանակ, ոչ էլ նյութական հնարավորություն ունի լուծելու սեփական ինտելիգենցիա ստեղծելու պրոբլեմը: Այդ պրոբլեմի լուծման հնարավորությունը և նրա իրականացման ռեալ պայմաններն ստեղծվում են միայն ռևոլյուցիայի հաղթանակից հետո: Այդ խնդրի լուծումն անխուսափելիորեն ծառանում է դեպի սոցիալիզմ ընթացող բոլոր երկրների առջև: Այդ պատճառով էլ դա հանդիսանում է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափություններից մեկը:

Ռևոլյուցիոն հեղաշրջման և նոր հասարակարգի կառուցման մյուս բնորոշ գիծն էլ կայանում է նրանում, որ ոչ մի տեղ և ոչ մի ժամանակ վերոհիշյալ խոր սոցիալ-տնտեսական վերափոխությունները տեղի չեն ունենում խաղաղ ու հանգիստ, առանց դասակարգային ընդհարումների: Ընդհակառակը, դրանք իրականացվում են դասակարգային սուր պայքարի պայմաններում, որովհետև հասարակության հին, ռեակցիոն ուժերը իրենց դիրքերը ոչ մի կերպ չեն ուզում զիջել պրոլետարիատին: Տապալված դասակարգերը և նրանց օտարերկրյա պաշտպանները տասնապատկում են իրենց դիմադրությունը պրոլետարական պետությանը, ճգնում են ձախողել նրա կողմից իրականացվող սոցիալիստական միջոցառումները:

Ռևոլյուցիայի ներքին ու արտաքին թշնամիները գործադրում են ամեն միջոց, լարում են բոլոր ուժերը բանվոր դասակարգի և աշխատավորների իշխանությունը ոչնչացնելու և հին կարգերը վերականգնելու համար, իսկ հասարակության միջին խավերը տատանվում են պայքարող ուժերի միջև:

«Անցումը կապիտալիզմից կոմունիզմին,— գրել է Վ. Ի. Լենինը,— մի ամբողջ պատմական դարաշրջան է: Քանի այն չի ավարտվել, շահագործողների մեջ անխուսափելիորեն մնում է ռեստավրացիայի հույսը, իսկ այդ հ ո ւ յ ս ը ռեստավրացիայի փ ո ր ձ ե ր ի է վերածվում: Եվ առաջին լուրջ պարտությունից հետո՝ տապալված շահագործողները, որոնք իրենց տապալմանը չէին սպասում, դրան չէին հավատում, մտքով անգամ այդ չէին անցկացնում, տասնապատկված եռանդով, կատաղի կրքով, հարյուրապատիկ ուժեղացած ատելությամբ նետվում են դեպի մարտ և նետվում՝ հանուն խլված «դրախտի» վերադարձման, հանուն իրենց ընտանիքների, որոնք այնքան քաղցր էին ապրում, և որոնց այժմ «ռամիկ խուժանը» դատապարտում է քայքայման ու թշվառության (կամ «հասարակ» աշխատանքի...): Իսկ շահագործող-կապիտալիստների հետևից ձգվում է մանր բուրժուազիայի լայն մասսան, որի նկատմամբ բոլոր երկրների տասնյակ տարիների պատմական փորձը վկայում է, որ նա երերվում է ու տատանվում, այսօր գնում է պրոլետարիատի հետևից, վաղը վախենում է հեղաշրջման դժվարություններից, խուճապի է մատնվում բանվորների առաջին պարտությունից կամ կիսապարտությունից, ջղայնանում

է, պատեպատ է դիպչում, նվնվում, մի բանակից մյուսն է փախչում...» (Երկեր, հ. 28, էջ 319—320)։

Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ պրոլետարիատը պիտի անխնա կերպով ոչնչացնի ռևոլյուցիայի թշնամիներին, իսկ տատանվող տարրերին դաստիարակչական և համոզման այլ մեթոդներով գրավի իր կողմը։ Խոսելով պրոլետարիատի դիկտատուրայի բուն դաստիարակչական ֆունկցիաների մասին, նա գրել է, որ այդ դիկտատուրան «համառ պայքար է՝ արյունոտ և անարյուն, բռնի ու խաղաղ, ռազմական ու տնտեսական, մանկավարժական ու ադմինիստրատորական, պայքար հին հասարակության ուժերի և տրադիցիաների դեմ»։

Վ. Ի. Լենինը ամբողջ ուժով մերկացնում էր բուրժուազիայի այն ծախու գրչակներին, որոնք գործադրում են ստի, կեղծիքի և այլ կարգի կեղտոտ մեթոդներ, որպեսզի սքողեն «պրոլետարիատի դիկտատուրայի ավելի ևս կարևոր դերը, նրա դաստիարակչական խնդիրը»։

Պրոլետարական պետությունը խաղաղ մեթոդներ կարող է գործադրել ոչ միայն աշխատավորների, այլև կապիտալիստների նկատմամբ, եթե նրանք ցույց չտան վայրենի. դիմադրություն և ենթարկվեն ռևոլյուցիոն իշխանության օրենքներին։ Այդ տեսակետից շատ ուշագրավ է և ուսանելի Վ. Ի. Լենինի հետևյալ միտքը. «Բուն պայքարը շահագործողների դեմ մենք փորձից ենք վերցրել։ Եթե մեզ երբեմն դատապարտել են դրա համար, ապա մենք կարող ենք ասել. «Պարոնա՛յք կապիտալիստներ, դուք դրանում մեղավոր եք։ Եթե դուք ցույց չտայիք այդպիսի վայրենի, այդպիսի անմիտ, լկտի ու կատաղի դիմադրություն, եթե դուք դաշինք չկռեիք ամբողջ աշխարհի բուրժուազիայի հետ,— հեղաշրջումն ավելի խաղաղ ձևեր կընդուներ»» (Երկեր, հ. 29, էջ 251)։

Անցման շրջանի սոցիալիստական պետության կառուցման միջազգային փորձը և նրա դեմ հրահրված բազմաթիվ պատերազմների, խռովությունների, դիվերսիաների և պայքարի մյուս ձևերի դասն ասում է, որ բանվոր դասակարգը պետք է կարողանա իր իշխանությունը պաշտպանել ներքին ու արտաքին թշնամիների ամեն տեսակ ոտնձգություններից։ Նա այդ խնդիրը կարող է կատարել և իրականացնել կոմունիզմի կառուցումը միայն մյուս երկրների բանվորների ինտերնացիոնալ համերաշխության դեպքում։ Պրոլետարիատի դեմ մղվող պայքարում բոլոր երկրների կապիտալիստները հանդես են գալիս միասնական ուժով։ Իմպերիալիզմի այդ միասնական ճակատին պրոլետարիատը պետք է հակադրի իր ինտերնացիոնալ ճակատը։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիմքում ընկած է ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի տնտեսական ու քաղաքական շահերի և նպատակների ընդհանրությունը։ Ոչ մի երկրի պրոլետարիատ չի կարող հասնել հաղթանակի և ամրապնդել այն առանց մյուս երկրների բանվոր դասակարգի բարոյական և, շատ հաճախ նաև, փաստական օգնության։

* * *

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունների համառոտ շարադրանքը ցույց է տալիս, որ դրանք ունեն ոչ թե տեղական, նեղ-ազգային, այլ միջազգային նշանակություն։ Այդ օրինաչափությունները դրսևորվում են և այսուհետև կդրսևորվեն դեպի սոցիալիզմ ընթացող



բոլոր երկրներում։ Այլ կերպ էլ լինել չի կարող, քանի որ այդ օրինաչափու-
թյունները ունեն օբյեկտիվ բնույթ, բխում են պրոլետարական ռևոլյուցիայի
և սոցիալիստական հիմունքներով կառուցված հասարակարգի բնույթից, նրա
բուն էությունից։ Այդ պատճառով էլ նրանք կազմում են ռևոլյուցիոն սոցիա-
լիստական հեղաշրջման բաղկացուցիչ մասերը, որտեղ և երբ էլ տեղի ունե-
նա այն։

Մարքսիզմ-լենինիզմը խոշոր նշանակություն է տալիս սոցիալիստական
ռևոլյուցիայի այդ հատկանշական գծերին և բանվոր դասակարգին ու նրա
պարտիային ուսուցանում է ղեկավարվել այդ գլխավոր սկզբունքներով։ Բայց
դրա հետ միասին այն պահանջում է սոցիալիստական ռևոլյուցիայի և սո-
ցիալիստական շինարարության ընդհանուր սկզբունքների ստեղծագործական
կիրառում՝ յուրաքանչյուր երկրի կոնկրետ պատմական պայմաններին հա-
մապատասխան։

Վ. Ի. Լենինը պահանջում էր կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու այդ
ընդհանուր օրինաչափությունների այնպիսի կիրառում, որը «մասնավորու-
թյուններում ճիշտ ձևափոխեր այդ սկզբունքները, դրանք ճիշտ հարմարեցներ,
կիրառեր ազգային ու ազգային-պետական տարբերությունների նկատմամբ»
(Երկեր, հ. 31, էջ 98)։

Նա ուսուցանում էր կոնկրետ մոտեցում ունենալ յուրաքանչյուր երկրի
նկատմամբ, հետազոտել, ուսումնասիրել, գտնել, կռահել, ըմբռնել ազգային-
առանձնահատուկը, ազգային-սպեցիֆիկը՝ միասնական ինտերնացիոնալ խըն-
դիրը լուծելու համար։ Ընդգծելով հասարակության սոցիալիստական վերա-
փոխությունների միասնական ինտերնացիոնալ բովանդակությունը և նրանց
իրականացման ազգային առանձնահատկությունները, Լենինը գրում էր, որ
«Եվրոպան դեպի ռևոլյուցիա է գնում ոչ այնպես, ինչպես մենք եկանք, բայց
Եվրոպան ըստ էության կատարում է նույնը» (Երկեր, հ. 30, էջ 540)։ Մարք-
սիզմը ոչ թե մեկընդմիշտ տրված դոգմա է, այլ ուղեցույց է գործողության
համար։ Նրա հիմնադիրները մշակել են այնպիսի ընդհանուր ղեկավար դրույթ-
ներ, որոնք «...կիրառվում են մասնավորապես Անգլիայի նկատմամբ այլ
կերպ, քան Ֆրանսիայի նկատմամբ, Ֆրանսիայի նկատմամբ այլ կերպ, քան
Գերմանիայի նկատմամբ, Գերմանիայի նկատմամբ այլ կերպ, քան Ռուսաս-
տանի նկատմամբ» (Երկեր, հ. 4, էջ 262)։

Սոցիալիզմի ուղիով ընթացող բոլոր երկրների զարգացման փորձը լիովին
հաստատում է լենինյան դրույթն այն մասին, որ բոլոր ազգերն անխուսափե-
լիորեն կգան դեպի սոցիալիզմ, բայց նրանցից յուրաքանչյուրը իր յուրահատ-
կությունը կմտցնի պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն ձևի մեջ,
հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխում-
ների տեմպերի և մեթոդների մեջ։

Հաղթանակած սոցիալիստական երկրների յուրաքանչյուր կոմունիստա-
կան պարտիա մշակել և կենսագործել է իշխանության նվաճման յուրահատուկ
տակտիկա և սոցիալիստական շինարարության իրականացման հատուկ ձևեր
ու մեթոդներ, ընդ որում ռևոլյուցիոն վերափոխությունների պրոցեսում, առան-
ձին դեպքերում, փոփոխման են ենթարկվել այդ նույն ձևերն ու մեթոդները։
Սովետական Միության և ժողովրդա-դեմոկրատական երկրների գլխավոր ու-
ղին դեպի սոցիալիզմ եղել է նույնը, բայց նրա իրականացման ձևերը՝
տարբեր։

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի հետևանքով Ռուսաստանում հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա՝ Սովետների իշխանության ձևով, որի ղեկավար ուժը կոմունիստական պարտիան է։ Ռևոլյուցիան մի կողմից խոշոր ազդեցություն թողեց ամբողջ միջազգային ռևոլյուցիոն շարժման վրա, մյուս կողմից էլ սարսափ ու կատաղություն առաջացրեց իմպերիալիզմի լագերում։ Կապիտալիստական պետությունների և Ռուսաստանի ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի բազմիցս փորձերը՝ ոչնչացնելու Սովետական իշխանությունը, ապարդյուն անցան։ Հաղթանակած սոցիալիզմի առաջին երկիրը՝ ՍՍՌՄ-ը, ավելի քան քառորդ դար միակ երկիրն էր, որ պաշարված ամրոցի պես գտնվում էր կապիտալիստական շրջապատման մեջ, իմպերիալիստական ագրեսիայի մշտական սպառնալիքի պայմաններում։ Այդպիսի դրության մեջ նա միաժամանակ ստիպված էր որոշ չափով նեղացնելու դեմոկրատիայի սահմանները, շահագործող դասակարգերին զրկելու ոչ միայն տնտեսական հզորությունից, այլև քաղաքական իրավունքներից, թշնամիների նկատմամբ կիրառելու պրոլետարիատի դիկտատուրան՝ նրա ամենախիստ ձևով։*

*Եվրոպայի և Ասիայի ժողովրդա-դեմոկրատական երկրներում պրոլետարիատը նվաճեց քաղաքական իշխանությունը շատ ավելի նպաստավոր պայմաններում։ Իհարկե, այնտեղ էլ պրոլետարիատի դիկտատուրան նվաճվեց ներքին ու արտաքին թշնամիների դեմ մղվող համառ պայքարի միջոցով, բայց այդ պայքարը չստացավ այն ծայրահեղ սրությունը, ինչ ՍՍՌՄ-ում էր։ Այդ երկրներում պրոլետարիատի դիկտատուրայի յուրահատուկ պետական ձևը հանդիսացավ ժողովրդական ռեսպուբլիկան, որի ղեկավար ուժը նույնպես կոմունիստական պարտիան է։*

*Ներկա ժամանակաշրջանում, երբ միջազգային ասպարեզում տեղի են ունեցել արմատական տեղաշարժեր հօգուտ սոցիալիզմի, միանգամայն հավանական և հնարավոր է, որ մի շարք կապիտալիստական երկրներ կարող են անցնել սոցիալիզմին առանց քաղաքացիական կռիվների, պառլամենտական ուղիով, այսինքն՝ պայքարի համեմատաբար խաղաղ, դեմոկրատական մեթոդների օգտագործման միջոցով։ Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու այդ բազմազան ձևերի կիրառումը կախված է ժամանակից, տեղից և պայմաններից։ Նա բխում է այս կամ այն երկրի ազգային առանձնահատկություններից, տնտեսական զարգացման մակարդակից, պատմական տրադիցիաներից, դասակարգերի փոխհարաբերություններից, բուրժուազիայի և կալվածատերերի դիմադրության աստիճանից ու համառության չափից, միջազգային իրադրությունից, նոր հասարակարգի կառուցման փորձի կուտակումից և նման կարգի այլ հանգամանքներից։ Բայց ինչքան էլ որ բազմազան լինեն սոցիալիզմին անցնելու ձևերը, այնուամենայնիվ նրանք ոչ մի չափով չեն փոխում և չեն կարող փոխել այդ անցման գլխավոր օրինաչափությունները, որոնց մասին խոսվեց վերևում։ Սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիզմի կառուցման պրոցեսում կարող են տարբերություններ դրսևորվել, օրինակ, պրոլետարիատի դիկտատուրայի ձևերի, գյուղատնտեսության կոոպերացման տեմպերի ու մեթոդների մեջ, բայց պրոլետարիատի դիկտատուրայի, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման բովանդակությունը մնում է նույնը։ Ոչ մի երկիր չի կարող անցնել սոցիալիզմին՝ առանց պրոլետարիատի դիկտատուրայի, առանց կոմունիստական պարտիայի ղեկավարության, առանց ստեղծելու և ամրապնդելու բանվոր դասակարգի դաշինքը աշխատավորական լայն*



*զանգվածների հետ։ Ամենուրեք հաղթանակած պրոլետարիատը պետք է ունեզրկի շահագործող դասակարգերին, ոչնչացնի արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, հաստատի հանրային սեփականություն, տնտեսությունը վարի պլանաչափ ձևով, մանր արտադրողներին աստիճանաբար փոխադրի սոցիալիզմի ռելսերի վրա, անընդհատ բարձրացնի ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակը, պաշտպանի ռևոլյուցիայի նվաճումները տապալված դասակարգերի և օտարերկրյա թշնամիների ոտնձգություններից, ռևոլյուցիա իրականացնի գաղափարախոսության և կուլտուրայի ասպարեզում, եղբայրական կապեր և սերտ համագործակցություն հաստատի մյուս երկրների բանվոր դասակարգի հետ։ Սրանք պատմության փորձով հաստատված հանրահայտ ճշմարտություններ են։*

*Մինչդեռ մարքսիզմի ռևիզիոնիստներն ու ռենեգատները ժխտում են այդ հանրահայտ ճշմարտությունները։ Իմպերիալիզմի գաղափարախոսները և նրանց գործակալները գիտական կոմունիզմի դեմ հանդես են գալիս «ազգային կոմունիզմի» դրոշով և բարբաջում են սոցիալիզմին անցնելու ինչ-որ «հատուկ ուղիների» մասին։ Այդ կեղծ «թեորիայի» հեղինակները ժխտում են կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունները և գտնում են, որ տարբեր երկրներ կարող են բոլորովին տարբեր ուղիներով ընթանալ դեպի սոցիալիզմ, որ գոյություն չունի սոցիալիզմին անցնելու որևէ մայր ուղի և այլն և այլն։ Իհարկե, յուրաքանչյուր երկիր յուրահատուկ ձևով է իրականացնում անցումը դեպի սոցիալիզմ, բայց դա բոլորովին էլ չի նշանակում շեղում կամ անջատում նոր հասարակարգի կառուցման գլխավոր ուղուց։ Դա նշանակում է միայն մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթների ստեղծագործական կիրառում։ Միակողմանի մոտեցումը այս կամ այն երկրում դեպի սոցիալիզմ ընթանալու ազգային առանձնահատկություններին, ինչ-որ «հատուկ ուղիների» ուռճացումը, ազգային առանձնահատկությունների ֆետիշացումը վնաս են հասցնում ինչպես տվյալ երկրի սոցիալիստական շինարարության գործին, այնպես էլ սոցիալիստական երկրների ամբողջ համագործակցությանը։ Սոցիալիզմի գործին նույնպիսի վնաս է հասցնում նաև մյուս ծայրահեղությունը՝ ընդհանուր օրինաչափությունների շաբլոն և դոգմատիկ կիրառման քարոզը բոլոր երկրներում, առանց հաշվի առնելու նրանց ազգային ու պետական առանձնահատկությունները։ Ռևիզիոնիստական նման խեղաթյուրումները ոչ միայն ոչնչով չեն նպաստում սոցիալիզմի կառուցմանը, այլև ուղղակի ջուր են լցնում թշնամու ջրաղացին։*

*Թե ուր է տանում ժամանակակից ռևիզիոնիզմի ճանապարհը, երևում է Իմրե Նագի (Հունգարիա), Մ. Ջիլասի (Հարավսլավիա) օրինակից։ Նրանք առանձնապես ցցուն կերպով դրսևորեցին արդի ռևիզիոնիզմի բոլոր հատկանշական կողմերը և վերջիվերջո դավաճանեցին սոցիալիզմի գործին։ Իմպերիալիստական շրջանները, տապալված դասակարգերը, տատանվող և ռևիզիոնիստական տարրերը փորձում են օգտագործել հասարակության տականքներին կամ որոշ սոցիալիստական երկրներում թույլ տրված առանձին սխալները, որպեսզի նշավակեն սոցիալիզմը և գովերգեն իր դարն ապրած կապիտալիստական սիստեմը։ Սակայն այդ փորձերը չէին կարող և չեն կարող որևէ հաջողություն ունենալ։ Ոչ ոք չի կարող սասանել սոցիալիստական երկրների միասնությունը, որը հիմնված է նպատակների ընդհանրության վրա։*

*Սոցիալիստական երկրները օգտագործում են մեկը մյուսի փորձը, եղբայ-*

րական օգնություն են ցույց տալիս միմյանց տնտեսության, կուլտուրայի և հասարակական կյանքի մյուս բոլոր բնագավառներում:

Սոցիալիզմի լագերի պետություններից ամենաավագը, ամենահարուստ փորձ ունեցողը և ամենահզորը Սովետական Միությունն է: Այն բանի շնորհիվ, որ Սովետական Միությունը հաղթանակած սոցիալիզմի առաջին երկիրն է, իսկ սոցիալիզմի լագերը ստեղծվելուց հետո այդ լագերի առաջատար պետությունը, որն ընդունակ է առավելագույն օգնություն ցույց տալու սոցիալիստական երկրներին և կապիտալի ճիրաններում տառապող ժողովուրդներին, քառասուն տարվա ընթացքում հանդիսանում է միջազգային բանվորական շարժման կենտրոնը: Միանգամայն բնական է, որ նոր գոյավորված ավելի երիտասարդ սոցիալիստական երկրները կարող են հաջողություններ ունենալ միայն այն դեպքում, եթե օգտագործեն, և իրոք օգտագործում են, ՍՍՌՄ-ի կուտակած սոցիալիստական շինարարության հարուստ փորձը: Սակայն այդ բոլորովին էլ չի նշանակում, թե նրանք պետք է ամբողջությամբ պատճենավորեն պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիզմի կառուցման ձևերն ու մեթոդները ՍՍՌՄ-ում: Խնդիրն այն է, որպեսզի օգտագործվի Սովետական Միության հիմնական դրական փորձը և խույս տրվի եղած որոշ սխալներից, որոնք շատ դեպքերում պատմականորեն անխուսափելի էին: Վ. Ի. Լենինը իր ժամանակին ասում էր, թե ուրիշ երկրների փորձի կենսագործման համար «...անհրաժեշտ է գիտենալ քննադատորեն վերաբերվել այդ փորձին և ինքնուրույնորեն ստուգել այն» (Երկեր, հ. 5, էջ 488):

Ղեկավարվելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով՝ XX համագումարը պահանջեց պատշաճ վերաբերմունք ունենալ սոցիալիզմի կառուցման գոյություն ունեցող ձևերի նկատմամբ, ուսումնասիրել և փոխադարձաբար օգտագործել այդ բնագավառում կուտակված ամբողջ դրական փորձը, նոր հասարակարգի կառուցման լավագույն մեթոդներն ու եղանակները:

Նոյեմբերյան խորհրդակցության Դեկլարացիայում ընդգծվեց, որ սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները պետք է հաստատ հետևեն իրենց երկրներում ռևոլյուցիայի և շինարարության կոնկրետ պրակտիկայի հետ մարքսիզմ-լենինիզմի համընդհանուր ճշմարտության զուգորդման սկզբունքներին, սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության ընդհանուր օրինաչափությունները ստեղծագործաբար կիրառեն իրենց երկրների կոնկրետ պայմաններին համապատասխան, սովորեն միմյանցից և կատարեն փորձի փոխանակում:

Սոցիալիզմի երկրների ինտերնացիոնալ համերաշխությունն ու անխախտ միասնությունը հանդիսանում է մյուս երկրներում սոցիալիզմի հաղթանակի գլխավոր գործոնը: Սոցիալիզմի համաշխարհային լագերի գոյությունը ամրապնդում է բոլոր երկրների առաջադեմ ուժերի դիրքերը, ակտիվացնում և հեղափոխականացնում է ժողովուրդների պայքարը հանուն պայծառ ապագայի, արագացնում է ամբողջ մարդկության հաղթական երթը դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները:

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԴՐԱՆՑ ՀԱՂԹԱՀԱՐՄԱՆ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Ա. ՍՈԲՈԼԵՎ*

Օբյեկտիվ իրականության մեջ գոյություն ունեցող բոլոր պրոցեսներից և օրգանիզմներից ամենաբարդը և ամենաբազմազանը հասարակական պրոցեսներն ու օրգանիզմներն են, ընդ որում նրանց բազմակողմանիությունը մեծանում է հասարակական հարաբերությունների զարգացման՝ մեկ, ավելի ցածր ֆորմացիայից մեկ ուրիշ՝ ավելի բարձր ֆորմացիայի անցնելու համեմատ:

Առաջին հայացքից նման հարցադրումը կարող է անճիշտ թվալ: Ինչպես հայտնի է, կապիտալիզմի օրենքները գործում են տարերայնորեն, իշխում են մարդկանց վրա: Ի հակադրություն դրա, սոցիալիզմը զարգանում է պլանաչափորեն, և մարդիկ, ճանաչելով օբյեկտիվ տնտեսական օրենքները, տիրապետում են դրանց, ծառայեցնում են իրենց: Բայց սոցիալիզմի պլանաչափ զարգացումը և մարդկանց կողմից նրա տնտեսական օրենքների գիտակցական օգտագործումը ամենևին էլ չի նշանակում, թե հասարակական հարաբերությունները դառնում են ավելի պարզեցված:

Սոցիալիզմը որպես նոր, կոմունիստական հասարակական ֆորմացիա (ավելի ճիշտ, որպես նրա առաջին փուլ) բարձր է կապիտալիզմից և ավելի հարուստ է նրանից. նա բնութագրվում է հասարակական կյանքի մեծ բազմակողմանիությամբ, մարդկանց միջև եղած կապերի և նրանց փոխգործողությունների մեծ հարստությամբ, հասարակական խմբերի միջև եղած ավելի բազմակողմանի հարաբերություններով: Անհրաժեշտ է այդ հանգամանքը հաշվի առնել հասարակության շարժման օրենքները և դրանց գործողության «մեխանիզմը» վերլուծելիս, այդ թվում սոցիալիստական հասարակության հակասությունների պրոբլեմը վերլուծելիս:

Սոցիալիզմի ժամանակ եղած հակասությունների և դրանք հաղթահարելու հարցի մասին կան Կ. Մարքսի և Վ. Ի. Լենինի խոր ասույթները: Սոցիալիստական հասարակության մեջ եղած հակասությունների պրոբլեմը բազմակողմանի հիմնավորում է ստացել ՍՄԿԿ համագումարների և կոնֆերենցիաների նյութերում, պարտիայի Կենտկոմի պլենումների որոշումներում: Բոլոր երկրների կոմունիստական պարտիաները ուշադրությամբ ուսումնասիրում են հասարակության մեջ տիրապետող հակասությունները և նշում դրանք հաղթահարելու ուղիները: Մեծ ավանդ են մտցրել այդ պրոբլեմի մշակման մեջ Չինաստանի Կոմունիստական պարտիան և անձամբ ընկեր Մաո Ցզե-դունը:

ՍՍՌՄ-ում հակասությունների հարցը ակտիվորեն քննարկվում է բուհերի հասարակական գիտությունների ամբիոններում, գիտա-հետազոտական հիմնարկներում, ժուռնալների էջերում: Մասնավորապես օգտակար դիսկուսիա է մղվում «Вопросы философии» ժուռնալի էջերում: Այդ դիսկուսիայի ընթացքում քիչ հետաքրքրական մտքեր չեն արտահայտվել: Դրա հետ միասին պետք է նշել, որ սովետական հասարակությունը հետազոտող որոշ ընկերներ սխալ

բարելավման միաժամանակյա պրոցեսով: Այդ ուղղությամբ նկատելի միջոցառումներ են կենսագործվել հատկապես վերջին տարիներին՝ բարձրացվել է ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը, ավելացել է այն աշխատավորների թիվը, որոնցից հարկեր չեն գանձվում, ցածր վարձատրվող բանվորներն ու ծառայողները թոշակներ են ստանում աշխատավարձի չափով: Նման միջոցներ կիրառվելու են նաև հետագայում: Դրա հետ միասին վերջին տարիներին կարգավորվել և մասամբ իջեցվել է մի շարք կատեգորիաների բարձր վարձատրվող աշխատողների աշխատավարձը:

Արտադրության միջոցների նկատմամբ եղած հավասար վերաբերմունքի և նյութական բարիքների բաշխման գործում եղած անհավասարության միջև գոյություն ունեցող հակասության հաղթահարման համար քիչ ժամանակ չի պահանջվում, բայց խաղաղ աշխատանքի յուրաքանչյուր տարին մեզ մոտեցնում է մեծ նպատակին՝ ըստ պահանջմունքների բաշխմանը:

Սովետական հասարակության զարգացման գործում խիստ կարևոր դեր է խաղում անձնականի և հասարակականի դիալեկտիկական հակասությունը: Ամբողջ հասարակության մասշտաբով անհատական և հասարակական շահերի հակասության հաղթահարումը ձեռք է բերվում հասարակական և անհատական պահանջմունքների ճիշտ, տնտեսապես հիմնավորված փոխհարաբերության հաստատմամբ: Այդ փոխհարաբերության խախտումը այս կամ այն կողմի վրա՝ անխուսափելիորեն դժվարություններ կհարուցի էկոնոմիկայի զարգացման գործում:

Սոցիալիզմի ժամանակ հակասությունների մի շատ կարևոր խումբ կա՝ դա ռեալ տնտեսական պրոցեսների, օբյեկտիվ տնտեսական օրենքների գործողության և բոլոր օղակներում տնտեսական կազմակերպական ղեկավարության մակարդակի, այդ ղեկավարության որակավոր և արդյունավետ լինելու, օրենքները խորը ճանաչելու և ճիշտ օգտագործելու միջև եղած հակասությունների խումբն է:

Ղեկավարության արդյունավետությունը կախված է մարդկանց կողմից տնտեսական կյանքը ճանաչելու խորությունից, կառավարման սիստեմի ճկունությունից և պլանների գիտական հիմնավորվածությունից: Բայց նույնիսկ ամենաիդեալական դեպքերում, այսինքն՝ ռեալ պրոցեսների ամենաստույգ իմացության, կառավարման բացառիկ լավ սիստեմի և անսխալ պլանավորման դեպքերում էլ ղեկավարությունը սոսկ անվերջ մոտենալու է այն բանին, որպեսզի ընդգրկի օբյեկտիվ տնտեսական պրոցեսների բոլոր կողմերը, երբեք չհասնելով դրան, որովհետև կյանքը միշտ առաջ է ընթանում: Այդպես է ծնվում հակասությունը:

Իսկ իրականում տնտեսական կյանքի և ղեկավարության փոխհարաբերությունը շատ ավելի բարդ է: Սովետական տնտեսագիտությունը գնալով ավելի ու ավելի է խորանում տնտեսական պրոցեսների ըմբռնման մեջ, բայց մի շարք պրոբլեմներ պահանջում են է՛լ ավելի լուրջ գիտական հետազոտություններ: Օրինակ, դեռևս շատ չլուծված հարցեր է պարունակում արժեքի օրենքը, հատկապես նրա գործողությունը կոլտնտեսային արտադրության մեջ: Արդյունաբերական արտադրության արդյունավետության բարձրացումը տնտեսապես խթանելու չափազանց բարդ պրոբլեմը նույնպես մինչև վերջ մշակված չէ: Մեծ վեճեր են ծագում կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը վերլուծելիս և այլն: Խոշոր թերություններ կան տնտեսության կառավարման կառուցվածքում, էկոնոմիկան ղեկավարող օրգանների աշխատանքում: Սխալներ ու սխալ հաշիվներ են թույլ տրվում պլանավորման գործում: Թվում է, սոցիալիստական երկրներում չկան մարդիկ, որոնք ժխտեին այդպիսի հակասությունները: Բայց ահա հակասությունների հաղթահարման տարբեր ուղիներ են ցույց տրվում:

Սուբյեկտիվ-վոլյունտարիստական պատկերացումներով վարակված մարդիկ կցանկանային տնտեսությունը կառավարել՝ ելնելով միայն իրենց ցանկություններից և ձգտումներից, հաշվի չառնելով տնտեսական օրենքները:

Մտցվում են նաև այլ առաջարկություններ՝ բոլորովին հրաժարվել տըն-



տեսությունը ղեկավարելուց, ամբողջ գործը թողնելով ինքնահոսի, տարերքին: Որպես այդպիսի տեսակետի ակտիվ պաշտպան, հանդես է գալիս, մասնավորապես, հարավսլավյան սոցիոլոգ Միտո Հաջի-Վասիլևը, որը «Կոմունիստ» շաբաթաթերթում 1957 թվականի դեկտեմբերի 6-ին և 13-ին զետեղել է «Կոլեկտիվ և անհատական շահեր: Լուծվող հակասություններ» հոդվածը: Այդ հոդվածում նա վաղուց լուծված հարցերի շուրջը մի շարք առարկություններ անելով «Կոմունիստ» ժուռնալին և «Պրավդա» թերթին, հանդես է գալիս սոցիալիզմի ժամանակ տնտեսական զարգացման տարերայնության գաղափարի ակտիվ պաշտպանությամբ: Հաջի-Վասիլևի հոդվածի ամբողջ պաթոսը ուղղված է այն բանին, որպեսզի ապացուցի տնտեսության պետական ղեկավարման անիմաստ լինելը, պլանավորման և, ընդհանրապես, տնտեսական պրոցեսների կառավարմանը ամեն տեսակ գիտակից մասնակցության ավելորդությունն ու նույնիսկ վնասակարությունը:

Հեղինակի բոլոր դատողությունների հիմքում ընկած է այն սխալ պատկերացումը, թե իբր սոցիալիզմի ժամանակ մարդկանց ամեն տեսակ գիտակից մասնակցությունը տնտեսության կառավարմանը իրենից ներկայացնում է բռնություն տնտեսական հարաբերությունների նկատմամբ: «...Էկոնոմիկայի բնագավառում,— գրում է նա,— պետության մենաշնորհի հիման վրա կառավարմանը միջամտելը անխուսափելիորեն ավելի կամ պակաս չափով իր մեջ կրում է տնտեսական չափանիշի բացասումը տնտեսական պրոցեսների զարգացման մեջ: Այստեղից ծագում են ամեն ինչի սուբյեկտիվացման տենդենցները»:

Նրա պատկերացմամբ պլանը պլանավիկ-կանցելյարիստների կամայական հաշիվներն են: «Պլանավիկները,— գրում է նա,— չեն կարող փոխարինել հասարակությանն ու նրա օբյեկտիվ օրինաչափություններին...»: Այս կշտամբանքը արդարացի կլիներ սուբյեկտիվիստների հասցեին, որոնք կցանկանային օբյեկտիվ օրինաչափությունները փոխել պլանով, բայց սուբյեկտիվիստները վաղուց են ջախջախված: Սակայն Հաջի-Վասիլևը հանդես է գալիս ամեն ինչի դեմ, այդ թվում գիտականորեն հիմնավորված պլանավորման դեմ, և աչքաթող է անում այն փաստը, որ ժողովրդական տնտեսության պլանավորումը ստուգվել է ՍՍՌՄ փորձով, Չինաստանի և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների փորձով: Ինչպես հայտնի է, ՍՍՌՄ, Չինաստանի և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների ժողովրդատնտեսական պլանները միշտ էլ կատարվել ու գերակատարվել են, և այդ պլանների օգնությամբ վիթխարի հաջողություններ են ձեռք բերվել արտադրության զարգացման մեջ: Դժվար է գտնել պլանների հիմնավորվածությունը, պլանավորման խիստ կարևորությունը հաստատող ուրիշ ավելի համոզիչ փաստարկներ: Բայց ահա, ինչպես երևում է, այդ ամենը քիչ է Հաջի-Վասիլևի համար:

Իսկ ինչո՞ւ չի կարելի, նրա կարծիքով, պլանավորել տնտեսությունը: Այն պատճառով, գրում է նա, որ «գոյություն չունի օբյեկտիվ անհրաժեշտություն և օրինաչափություն, որը ճանաչվեր լիովին, իր գործողության ու դրսևորման ամբողջ հարստության մեջ, և որը կարելի լիներ բացառապես դրասենյակից ստացված պլանի օգնությամբ մտցնել արտադրական հարաբերությունների մեջ»:

Նախ, ոչ մի մարքսիստ-տնտեսագետ չի առաջարկել և չի առաջարկում օբյեկտիվ անհրաժեշտությունն ու օրինաչափությունը դրասենյակից «մտցնել» արտադրական հարաբերությունների մեջ ոչ պլանի օգնությամբ, ոչ էլ առանց դրան: Երկրորդ, այն ճիշտ դրույթից, թե չի կարելի լիովին ճանաչել տնտեսական իրականության բոլոր կողմերը, Հաջի-Վասիլևը այնուհետև խիստ տարօրինակ հետևություն է անում, թե դրանք օգտագործել պետք չէ: Բայց հենց միայն այն պատճառով, որ մարդկությունը երբեք լիովին, մինչև վերջը չի ճանաչում բնության օրենքները, քանի որ նյութը անսպառ է, ամենևին էլ չի հետևում, թե այդ օրենքները չպետք է օգտագործել: Եթե մարդկությունը այդ տեսակետին լիներ, չէր լինի ոչ արբանյակ, ոչ ատոմային էներգիա, ոչ էլեկտրականություն, ոչ մեքենաներ, այսինքն՝ չէր լինի տեխնիկայի զարգաց-

Սովետական բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան, մեր բազմազգ սոցիալիստական Հայրենիքի բոլոր ժողովուրդները գտնվում են սերտ միասնության և սրտաբուխ բարեկամության մեջ։ Ոգևորված կոմունիզմի մեծ գաղափարներով, պարտիայի ղեկավարությամբ, նրանք, օգտագործելով արտադրության սոցիալիստական եղանակի առավելությունները, ուր արտադրական հարաբերությունները համապատասխանում են արտադրողական ուժերի բնույթին, ապահովում են արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի զարգացման բուռն տեմպեր։

Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ավանգարդն է։ Սովետական կառավարությունը իսկական ժողովրդական կառավարություն է։ Կոմունիստական պարտիայի և ՍՍՌՄ կառավարության կարևորագույն գիծը, նրանց տարբերությունը բուրժուական պարտիաներից և կառավարություններից նախ և առաջ կայանում է նրանում, որ ՍՄԿՊ-ն և Սովետական կառավարությունը մոտ են ժողովրդին, որը նրանց հարազատ է համարում և միահամուռ կերպով պաշտպանում է նրանց քաղաքականությունը, անձնուրաց կերպով պայքարում է այդ քաղաքականությունը կյանքում կիրառելու համար։

Կապիտալիստական երկրներում կան ոչ քիչ թվով զանազան պարտիաներ, կառավարող և չկառավարող, որոնք դեմագոգիկ կերպով բղավում են ժողովրդական շահերի պաշտպանության մասին, բայց իրականում անխիղճ կերպով սակարկում են նրանով։ Կապիտալիստական երկրներում կառավարությունները խոսքով բարբաջում են ժողովրդի շահերի համար, բայց իրականում անխնայորեն ճնշում և կեղեքում են աշխատավորներին։

Սովետական Միության մեջ միանգամայն այլ հարաբերություն է ստեղծվել մասսաների և պարտիայի միջև, ժողովրդի և կառավարության միջև։ Սովետական պետությունը մեր երկրի կազմակերպված ժողովուրդն է։ Այդ ժողովուրդն ունի հենց իր կողմից ստեղծված կառավարություն, որի բարձրագույն և միակ կոչումն է պաշտպանել աշխատավորների ընդհանուր, արմատական և անձնական շահերը։ Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը հանդիսանում է Կոմունիստական պարտիան։ Բանվոր դասակարգն է ստեղծել այդ պարտիան, որին մեծ Լենինը դաստիարակել է ժողովրդական գործի պայքարի համար, նա որևէ այլ նպատակ չունի, բացի աշխատավորների համար իսկական ազատ և երջանիկ կյանք ստեղծելուց։ Բազմաթիվ մարտերում ժողովուրդը փորձել է Կոմունիստական պարտիային և համախմբվել նրա շուրջը, և վստահորեն ընթացավ նրա ետևից մեծամեծ գործերի համար։

Կապիտալիստական երկրների ժողովուրդների համեմատությամբ սովետական ժողովրդի մեծ առավելությունը կայանում է հենց նրանում, որ նա միասնություն է կազմում պարտիայի և կառավարության հետ։ Սովետական ժողովրդի ուժը պարտիայի և կառավարության հմուտ ղեկավարության մեջ է, նրանց կիրառած քաղաքականության ճշտության, գիտականության մեջ։ Պարտիայի և կառավարության ուժը այն անսահման աջակցության մեջ է, որպիսին ստանում են նրանք ժողովրդի կողմից։

Ժողովրդի և կոմունիստական պարտիայի միասնության շրջանակներում նրանց միջև առաջանում է այնպիսի փոխգործողություն, որն իրենից ներկայացնում է աշխատավոր մասսաների և նրանց մարտական, գիտակից և կազմակերպված ավանգարդի փոխգործողություն։ Այդ փոխգործողությունը կայանում է նրանում, որ ավանգարդը ղեկավարում է մասսաներին, դաստիարակում է նրանց և միաժամանակ սովորում նրանցից, իսկ մասսաները իրենց ավանգարդի ղեկավարությամբ առաջ են ընթանում, միաժամանակ հարստացնելով նրան իրենց փորձով։ «Ավանգարդը միայն այն ժամանակ է կատարում ավանգարդի խնդիրները,— գրել է Լենինը,— երբ նա կարողանում է չկտրվել իր կողմից ղեկավարվող մասսայից, այլ իսկապես առաջ մղել ամբողջ մասսան»։ Ավանգարդը չպետք է առաջ վազի, բայց նա չի էլ կարող ետ մնալ մասսաներից։ Այդպես է տեղի ունենում աշխատավոր մասսաների և ավան-



գարդի անընդհատ փոխգործողությունը, որը ավելի է հարստացնում, ուժեղացնում թե՛ մասսաներին, թե՛ ավանգարդին։

Այս փոխգործողությունը նույնպես իր արտահայտությունն է գտնում անձնականի և հասարակականի, դեմոկրատիզմի և ցենտրալիզմի դիալեկտիկայում։ Պարտիայի քաղաքականությունն ուղղված է աշխատավորների անձնական պահանջմունքների առավել լիակատար բավարարմանը՝ արտադրության անընդհատ աճման միջոցով, այսինքն՝ ամենից առաջ հասարակական նպատակների կենսագործման միջոցով։ Մասսաները հասարական նպատակների համար մղվող պայքարի անհրաժեշտության ըմբռնմանը հասնում են պարտիայի դաստիարակչական աշխատանքի ազդեցության տակ, անձնական պահանջմունքների բավարարման պրոցեսում։ Պրակտիկ գործունեության ընթացքում ուժեղանում է պարտիայի և ժողովրդի միասնությունը։

Դրա հետ միասին լինում են այնպիսի փաստեր, երբ առանձին ղեկա-
վարներ, պարտիայի առանձին անդամներ կտրվում են կյանքից, մոռանում
են ժողովրդի շահերի մասին, կորցնում են հասարակության զարգացման հե-
ռանկարը։ Նրանց հայացքները տարամիտում են Կոմունիստական պարտիայի
քաղաքականության հետ։ Այդ տարաձայնությունը, եթե դա ժամանակին
չհաղթահարվի, կարող է բացասական ազդեցություն թողնել ժողովրդի ստեղ-
ծագործական գործունեության վրա։ Օրինակ, այն սկզբունքային տարբերու-
թյունը, որ կար մի կողմից պարտիայի ու ժողովրդի, մյուս կողմից՝ մասսա-
ներից կտրված, ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կատարումն արգելա-
կելու փորձ անող Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի պահպանողական-
դոգմատիկ, հակապարտիական խմբի միջև, կրում էր սուր կոնֆլիկտի բնույթ,
որը լուծվեց այդ խմբի ջախջախմամբ։ Հակասություն կա մասսաների ակտի-
վության և բյուրոկրատների, ազնվազարմների և այն ղեկավարների միջև,
որոնք զբաղվում են վարչարարությամբ։ Հակասություն գոյություն ունի ժո-
ղովրդի վերափոխող գործունեության և մի շարք կազմակերպությունների ղե-
կավարման ցածր մակարդակի միջև։

Իհարկե, նման փաստերը վերաբերում են մեր աշխատողների շատ փոքր
խմբին։ Մեր երկրի պարտիական, սովետական, պրոֆմիութենական, կոմերի-
տական, տնտեսական, գիտական, ինժեներա-տեխնիկական կադրերը ազնիվ
և անձնուրաց կերպով, չխնայելով ուժերը, կատարում են իրենց պարտակա-
նությունները, հավատարմաբար ծառայում են սովետական ժողովրդին, ակ-
տիվ կերպով մասնակցում են կոմունիզմի շինարարության համար մղվող
պայքարին։ Բայց բյուրոկրատական վարքագծի նույնիսկ փոքրաթիվ փաս-
տերը չի կարելի հանդուրժել։ Պարտիան վճռականորեն և համարձակ կերպով
բացահայտում է դրանք, կազմակերպում է կոմունիստներին, ամբողջ սովե-
տական ժողովրդին՝ դրանց հաղթահարման համար։ Պարտիան անդադրում
պայքար է մղում ազնվազարմների և բյուրոկրատների, մորթապաշտների և
կարիերիստների դեմ, պետական ապարատի ամեն մի օղակի աշխատանքում
եղած բոլոր թերությունների դեմ։ Այդ պայքարի ընթացքում անընդհատ բարձ-
րանում է ղեկավարության մակարդակը, բարձրանում է նրա որակավորումն
ու օպերատիվությունը։

Պարտիան պարզաբանում է պարտիական, սովետական, տնտեսական,
պրոֆմիութենական, կոմերիտական բոլոր աշխատողներին, բոլոր ակտի-
վիստներին, որ կենսականորեն անհրաժեշտ է ամրապնդել ժողովրդի միաս-
նությունը, բոլոր քաղաքացիներին համախմբել ընդհանուր խնդիրների շուրջը
և միացյալ ջանքերով հասնել ընդհանուր նպատակների շուտափույթ իրակա-
նացմանը։

Կոմունիստական պարտիան մեծ ուշադրություն է դարձնում սովետական հասարակության հակասությունների խոր վերլուծությանը, բացահայտում է դրանց էությունը, զարգացման տենդենցները և մասսաներին մոբիլիզացնում է դրանք ժամանակին հաղթահարելու համար։ Արդյունաբերության, գյուղատնտեսության, պետական-քաղաքական հարաբերությունների, կուլտուրայի

բնագավառներում պարտիայի բազմաթիվ միջոցառումները իրենցից ներկայացնում են կոմունիստական շինարարության հասունացած խնդիրների լուծման նկատմամբ մարքսիստական դիալեկտիկայի օրենքների ստեղծագործական կիրառման ցայտուն օրինակ, կոմունիզմ կառուցող մասսաների վերափոխող գործունեության գիտական ամփոփման հիման վրա դիալեկտիկայի օրենքների զարգացման ու հարստացման ցայտուն օրինակ։

Այն մեծ հաջողությունները, որ ձեռք է բերել սովետական ժողովուրդը կոմունիստական հասարակության շինարարության բնագավառում, բանվոր դասակարգի, գյուղացիության ու ինտելիգենցիայի և ՍՍՌՄ-ում բնակվող բոլոր ժողովուրդների համերաշխ ստեղծագործական աշխատանքը վկայում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականության ճշտության մասին։ Լենինյան Կենտկոմի գլխավորած պարտիայի իմաստուն ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ հաղթահարում է ծագող հակասությունները, ձեռք է բերել էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բուռն տեմպեր, անընդհատ բարձրացնում է իր բարեկեցությունը։

«Коммунист», № 2, 1958 թ.։

# ԷՋԵՐ ԲԱԼԿԱՆՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Պ. ԿՈԿԻՆՈՍ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի անմիջական ազդեցության տակ և Կոմունիստական Ինտերնացիոնալի հիմնադրման շնորհիվ Բալկանների հայ աշխատավորության մեջ ստեղծվեցին կոմունիստական առաջին կազմակերպությունները։

Բուլղարիայի հայկական գաղութը, լինելով սփյուռքահայ հնագույն և բազմամարդ գաղութներից մեկը, մյուսների հետ համեմատած ուներ այն առավելությունը, որ նրա հիմնական աշխատավորական մասսաները համախմբված էին այնպիսի բանվորական կենտրոններում, ինչպիսիք են՝ Պլովդիվ, Սոֆիա, Վառնա, Ռուսչուկ և այլ քաղաքներ, ուր Բուլղարիայի ռևոլյուցիոն բանվոր դասակարգը առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմից դեռ տասնյակ տարիներ առաջ փայլուն էջեր էր գրել ռևոլյուցիոն շարժման պատմության մեջ։

Բուլղարահայ կոմունիստական խմբերի կազմակերպական ու գաղափարական համախմբվածությունը, նրանց ռևոլյուցիոն կոփվածությունը պետք է բացատրել նրանով, որ առաջին համաշխարհային պատերազմից առաջ հայ ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատները գործում էին Դմիտրի Բլագոևի հիմնադրած Բուլղարիայի սոցիալ-դեմոկրատական պարտիայի, նրա ռևոլյուցիոն ձախ թևի, այսպես կոչված՝ «տեսնյակների» ղեկավարությամբ։ Տեսնյակների շարքերում կոփվեց և առնականացավ նաև արևմտահայ աշխատավորության պարծանք, կոմունիզմի բոցավառ մարտիկ Ստեփան Շահբազյանը, որը հետագայում դարձավ Բուլղարական կոմպարտիայի ականավոր գործիչներից մեկը և Պլովդիվ քաղաքի բանվորության մարտական ղեկավարը։

Ստեփան Շահբազյանը, Տիգրան Իսմիյանը և մի շարք ուրիշ հայ ռևոլյուցիոներներ 1900-ական թվականներին մտնելով Բուլղարիայի սոցիալ-դեմոկրատական պարտիայի շարքերը, սկսեցին խոշոր աշխատանք ծավալել բուլղարահայ բանվորների ինտերնացիոնալ դաստիարակման, ռևոլյուցիոն արհմիություններում նրանց կազմակերպելու ուղղությամբ։ 1905—1907 թթ. ռուսական բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի տարիներին բուլղարահայ աշխատավորության մեջ լայն տարածում էին գտնում Ժնևում ու Թիֆլիսում հայերեն լեզվով լույս տեսնող մարքսիստական գրականությունն ու մամուլը։ 1909—1910 թթ. բուլղարահայ բանվորության զգալի մասն արդեն կազմակերպվել էր ռևոլյուցիոն արհմիություններում, իսկ նրա առաջավոր տարրերը գտնվում էին Տեսնյակների շարքերում։ Նրանց թվում էին կոմունիստական պարտիայի և բուլղարահայ աշխատավորության ակտիվ գործիչներ՝ Գրիգոր

Շիշմանյանը, Արտաշես Ասլանյանը և ուրիշներ: Այդ տարիներին, Ստեփան Շահբազյանի ղեկավարությամբ, Պլովդիվ քաղաքում կազմակերպվել էր հայ բանվորական «Նոր հուսանք» միությունը, որը 1909 թվականին տպագիր կոչ հրատարակեց դաշնակցության և մյուս ազգայնական պարտիաների դեմ: Այդ կոչը հրատարակվել էր մեծ տիրաժով ու տարածվել Բուլղարիայում և արտասահմանի մյուս հայաշատ գաղութներում[1]:

Համաշխարհային պատերազմի տարիներին Բալկանյան երկրներում Տեսնյակների պարտիան այն միակ ուժն էր, որ հետևելով մեծ Լենինի և բոլշևիկների օրինակին, մարտնչում էր իմպերիալիստական պատերազմի դեմ և կանգնել էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերում:

Տասնյակ հազարավոր պրոլետարների հետ միասին բանակ էին գնացել նաև բազմաթիվ բուլղար և հայ ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատներ, որոնք զինվորական շորեր հագած, բանվորների ու գյուղացիների մեջ շարունակում էին ռևոլյուցիոն աշխատանք տանել իմպերիալիստական պատերազմի դեմ: Ստեփան Շահբազյանը, որ ուրիշ շատ ընկերների հետ նույնպես զորակոչված էր և գտնվում էր բուլղարական բանակի զորամասերից մեկում, ռևոլյուցիոն աշխատանք էր կատարում զինվորների մեջ, տարածում էր ռևոլյուցիոն թերթեր, գրքույկներ և թռուցիկներ:

Ռևոլյուցիոն շարժման ընդհանուր վերելքի պայմաններում՝ Կոմունիստական Ինտերնացիոնալի անդրանիկ կոնգրեսից հետո, 1919 թվականի մայիս ամսին, Տեսնյակների XXII համագումարի որոշմամբ պարտիան վերանվանվեց Բուլղարական Կոմունիստական պարտիա: Բուլղարիայի Կոմունիստական պարտիան մեծ ուշադրություն նվիրեց ազգային փոքրամասնությունների մեջ տարվող աշխատանքներին, նրանց դիտելով որպես բանվոր դասակարգի մարտական զինակիցը ռեակցիայի և ֆաշիզմի դեմ մղվող պայքարում:

Բուլղարիայի հայաշատ քաղաքներում 1919 թվականից սկսեցին կազմակերպվել բազմաթիվ կոմունիստական խմբեր ու միություններ, որոնք խոշոր աշխատանք ծավալեցին բուլղարահայ աշխատավորությանը կոմունիզմի դրոշի տակ համախմբելու ուղղությամբ: Այսպիսի խմբերի աշխատանքները միավորելու և ընդհանուր ղեկավարության ենթարկելու համար Բուլղարական Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեին կից ստեղծվեց, այսպես կոչված, «Մամուլի կոմիտե», որի գլխավոր նպատակն էր բանավոր ու գրավոր ագիտացիա կազմակերպել հայ աշխատավորության մեջ: Մամուլի կոմիտեն այդ ժամանակ գտնվում էր Պլովդիվ քաղաքում և ղեկավարվում էր Ստեփան Շահբազյանի կողմից, որը այդ տարիներին Պլովդիվի կոմունիստական կազմակերպության քաղկոմի և հետագայում օկրուգային կոմիտեի քարտուղարն էր:

Այդ կոմիտեի առաջին կազմի մեջ մտնում էին՝ Ստեփան Շահբազյանը (նախագահ), Գրիգոր Շիշմանյանը (քարտուղար), Արտաշես Ասլանյանը, Գառնիկ Թյությունչյանը, Հարություն Հովհաննիսյանը, Արմենակ Թյությունչյան—Թագվորյանը և ուրիշներ:

1919 թվականի հուլիս ամսին Պլովդիվի «Հայ բանվորական կոմունիստական ինքնազարգացման միության» անունից Մամուլի կոմիտեն հրապարակեց իր առաջին կոչը՝ ուղղված Բուլղարիայի և արտասահմանի հայ աշխատավորությանը: Այդ կոչը, որ արևմտահայ աշխատավորության պայքարի պատմու-

[1] Տե՛ս Գր. Շիշմանյան, «Հուշեր», Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի ՊԱ:



թյանը վերաբերող առաջին տպագիր փաստաթղթերից է, մեծ տիրաժով տարածվեց Բուլղարիայում և այլ երկրներում: Դա իրենից ներկայացնում է յուրատեսակ մի մանիֆեստ, որով հայ կոմունիստները բալկանահայ և սփյուռքահայ աշխատավորությանը պարզաբանում էին մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային դրույթները պատերազմի, խաղաղության, սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ, մերկացնում հայ ազգայնական պարտիաների հակաժողովրդական քաղաքականությունը:

«Ընդհանուր անկումի, համաշխարհային աղետքի, համազգային դժբախտության... պատմական վայրկյանին,— ասված է այդ կոչում,— կբարձրացնենք մեր ձայնը կապիտալիստական դժոխքի ավերակներու մեջեն ու կկոչենք ձեզ համախմբվելու, կազմակերպվելու, լուսավորվելու, հաղորդակցելու իրար մեջ, ստեղծելու հայ մարտական կոմունիստական օրգան մը, որը... անապատներու մեջ մարտիրոսաբար ինկած մեր փառավոր ընկերներուն ու ռազմիկներուն նվիրական ուխտը ստանձնե՝ ի դեմ փշրված կուռքերու, ոճրագործ հայ բուրժուազիայի՝ կազմակերպված իր վարկաբեկված քաղաքական կուսակցություններու մեջ, որոնք հայկական ընդհանուր ջարդերու ծանր պատասխանատվությունը կկրեն,— կկոչենք ձեզ՝ հին ու եղեռնական աշխարհի ավերակներուն վրա կառուցանելու սոցիալիստական աշխարհի հոյակապ շենքը՝ գեղեցկության, ճշմարտության, ազատության, եղբայրության ու հավասարության կոմունիստական նոր աշխարհը»[1]:

Մերկացնելով դաշնակների ազգակործան քաղաքականությունը, ինչպես նաև ռամկավար և հնչակյան պարտիաների քաղաքական սնանկությունը, բուլղարահայ կոմունիստները դեռ մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը՝ 1919 թվականին, հայ աշխատավորներին պարզաբանում էին, որ հայ ժողովրդի «ազատագրումը կարելի է միայն հայ սոցիալիստական խորհրդային հանրապետության շրջանակի մեջ»[2]:

Արևմտահայ գիտակից աշխատավորությունը իր փրկությունը ապավինում էր միայն իր դասակարգային կազմակերպությանը և միջազգային բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ուժերի միասնությանը: Բուլղարահայ կոմունիստները 1919 թվականին հպարտորեն իրենց մարտական առաջին խոսքերն ուղղում էին ամբողջ արևմտահայ բանվորությանը. «...մենք կբարձրացնենք հայ փըրկարար կոմունիզմի կարմիր դրոշակը՝ կոչելով ձեզ — կազմակերպվեցեք ձեր համադասակարգային, միջկուսակցական, կոմունիստական խմբերու մեջ, որովհետև ապագան մեզի՝ կոմունիզմի կպատկանի»[3]:

Պլովդիվ քաղաքից բացի 1919 թվականի երկրորդ կեսին կոմունիստական խմբեր էին կազմակերպվել Ռուշչուկ, Վառնա, Շումեն (ներկայումս Կոլարովգրադ), Դեդեաղաչ (ներկայումս Ալեքսանդրուպոլիս՝ Հունաստան) քաղաքներում, և նոր խմբերի կազմակերպման շրջան էին ապրում Սոֆիա, Իսլիմյա (ներկայումս Սլիվեն), Բուրգաս, Էդիրնե (Թուրքիա), Դեմոտիկա (Հունաստան), Գյումուլջինա (ներկայումս Քոմոթինի՝ Հունաստան), Հարմանլի, Օրեխովո և ուրիշ քաղաքներ, ուր աշխատում և ռևոլյուցիոն գործունեություն էին ծավալում հայ կոմունիստները[4]: Բուլղարիայի, Հունաստանի և Թուրքիայի

[1] ՀՍՍՌ ՊԿԱ, ֆ. 4/114, ց. 1, գ. 63, թ. 9:
[2] Նույն տեղը, թ. 14:
[3] Նույն տեղը, թ. 15:
[4] Նույն տեղը, թ. 1:

հայկական կոմունիստական խմբերը սերտ հարաբերություններ էին ստեղծել իրար հետ և կազմակերպված աշխատանք էին կատարում Բալկանյան երկրների և Թուրքիայի հայ աշխատավորության մեջ։

Բուլղարական Կոմպարտիայի Կենտկոմի ցուցումներով Մամուլի կոմիտեն հայկական կոմունիստական խմբերին պարբերաբար ուղարկում էր շրջաբերական-նամակներ, որոնցում պարզաբանվում էին նրանց հետաքրքրող հարցերը և ղեկավար ցուցումներ տրվում հայ աշխատավորության մեջ տարվելիք աշխատանքների մասին։ «Մեր խումբին նպատակն է,— ասված էր 1920 թվականի հունվարի 3-ի առաջին շրջաբերական-նամակում,— կազմակերպել հայ բանվորներն ու մանր արհեստավորները հայ ազգայնական, հնչակյան, դաշնակցական ու ռամկավար կուսակցություններեն դուրս-անջատ միության մը մեջ հանուն կոմունիզմի և Երրորդ Կոմունիստական Միջազգայնականի, հեռացնել հայ բուրժուական, ազգայնական կուսակցություններու պատկանող բանվորներն անոնց շովինիստական ապականիչ ազդեցութենեն, զարգացնել անոնց մեջ դասակարգային գիտակցությունը, պրոպագանդայի, ագիտացիայի և ընդհանուր քաղաքական ակցիաներու միջոցով ու միացնել յուր համեստ ուժերը կոմունիզմի հզոր հեղափոխական ուժերու հետ Բուլղարիա, Բալկաններն ու արտասահման, ջնջելու համար ափ մը դրամատերերու ու ֆինանսիստներու տիրապետությունը, որոնք կազմակերպված են հափշտակիչ կապիտալիստական պետության մը մեջ և կանգնել կոմունիզմի հոյակապ աշտարակը, որը կբերե շահագործվողներու, վարձկան բանվոր դասակարգի և փոքր ազգերու ազատագրումը միջազգային ավազակ իմպերիալիզմի գազանային ճանկերեն»[1]։

Կիրառելով կոմպարտիայի գլխավոր գիծը, Մամուլի կոմիտեն հանձնարարում էր կոմունիստական խմբերի բոլոր անդամներին՝ «բուռն ու գիտակցորեն մասնակցել Բուլղարիո մեջ կոմունիզմի բոլոր կռիվներուն»[2]։

Հայ ազգայնական պարտիաների դեմ գաղափարական կռիվը հաջողությամբ պսակելու համար արևմտահայ աշխատավորության ուժերի միավորման ու կազմակերպման հրատապ խնդիրներն առաջ բերին նաև կոմունիստական մամուլ ստեղծելու անհրաժեշտությունը։ Կոմունիստական խմբերի եռանդուն գործունեության շնորհիվ հայ, բուլղար, հույն, թուրք և հրեա բանվորների նվիրատվությունների ու զանազան հանգանակությունների միջոցով հնարավոր եղավ ստեղծել պրիմիտիվ մի տպարան։

1920 թվականի ամռանը, 60 օրինակ տիրաժով, ապակետիպի վրա բազմացրած, լույս տեսավ «Նոր հոսանք» առաջին կոմունիստական թերթը հայերեն լեզվով, որը շուտով վերանվանվեց «Կարմիր լուրեր»։ «Կարմիր լուրերը» կոմունիստական առաջին տպագրական ամսաթերթն էր Բալկաններում, որը 1920 թվականի վերջերին խմբագրում էր մարքսիստ հրապարակախոս Ստեփան Շահբազյանը։ Նրա առաջին համարը լույս տեսավ 800 օրինակ տիրաժով, իսկ հետևյալ համարների տիրաժը հասել էր մինչև 2000-ի։ Դա մեծ հաջողություն էր բուլղարահայ կոմունիստական կազմակերպությունների համար։ «Կարմիր լուրերը» 1922 թվականի մարտի 15-ից վերածվեց երկշաբաթաթերթի, մեծացրեց իր ծավալը և շարունակեց հրատարակվել «Նոր աշխարհ» անվան տակ։ «Նոր աշխարհը», որպես արևմտահայ աշխատավորության մար-

[1] ՀՍՍՌ ՊԿԱ, ֆ. 4/114, ց. 1, գ. 63, թ. 9։
[2] Նույն տեղը, թ. 2։



տական օրգաններից մեկը, տարածվում էր ո՛չ միայն Բալկանյան երկրնե-
րում, այլև եվրոպական, ամերիկյան և այլ հայաշատ կենտրոններում։
Բուլղարահայ առաջին կոմունիստական կազմակերպությունների աշխա-
տանքներն ընդգրկում էին բազմաթիվ բնագավառներ։ Այդ աշխատանքներում
խոշոր տեղ էին գրավում մասսայական ագիտացիան և պրոպագանդան։ Այս
տեսակետից չափազանց հետաքրքիր է վերոհիշյալ Մամուլի կոմիտեի կազ-
մած 1920 թվականի լուսավորության գործունեության ծրագիրը, որ շրջաբե-
րական-նամակով հանձնարարվում էր բոլոր կոմունիստական հայկական
խմբերին։ Հայ աշխատավորության մեջ ըստ ծրագրի կարդացվելիք դասախո-
սություններն ընդգրկում էին հետևյալ թեմաները. Ներկա հայ իրականությու-
նը։ Հայ քաղաքական կուսակցությունները։ Հայ մամուլը և բանվորությունը։
Բանվորության դերը Բուլղարիայի մեջ։ Թե ինչ ըսել է կոմունիզմ։ Դաշնակ-
ցությունը և կոմունիզմը։ Հնչակյանները և կոմունիզմը։ Ռամկավարները և
կոմունիզմը։ Հայրենիքի գաղափարը և կոմունիզմը։ Բանվորական արհես-
տակցական միությունների մասին։ Համագործակցական միությունները (կոո-
պերացիաները)։ Քաղաքական կռիվները և պրոլետարիատը։ Սոցիալիստական
հեղափոխությունը։ Երևանյան (դաշնակցական) հանրապետությունը և Սովե-
տական Ռուսաստանը և այլն։
Թվարկված թեմատիկայի բազմազանությունը, նրա գաղափարական
նպատակասլացությունը վկայում են դասախոսությունների ծրագիրը կազմող
ընկերների մարքսիստական պատրաստականության, նրանց մարտնչող ռևոլ-
յուցիոն ոգու, արևմտահայ աշխատավորությանը հուզող բոլոր հարցերն ընդ-
գրկելու, դրանց լուծում տալու ազնիվ մտադրությունների մասին։
Ռևոլյուցիոն սուր քննադատությամբ գաղափարական պայքարում մեր-
կացնելով ազգայնական պարտիաներին, բուլղարահայ կոմունիստներն իրենց
գլխավոր հարվածն այստեղ հասցնում էին Հայաստանի դաշնակցական կա-
ռավարությանը և նրա արտասահմանյան արբանյակներին։ Բնորոշելով այդ
կառավարությունը «իբրև իմպերիալիստական գաղութային քաղաքականու-
թյան ներկայացուցիչը» հայ իրականության մեջ, միանգամայն ճիշտ կերպով
շեշտվում էր, որ այդ կառավարությունը «շուտով իր գլուխը պիտի ջախջա-
խե»[1]։ Կոմունիստներն անխնա մերկացնում էին դաշնակցական կառավարու-
թյան պատվիրակության «գործունեությունը» արտասահմանում՝ Ահարոնյանի
գլխավորությամբ, ինչպես նաև Պոլսի Ազգային ժողովի (ռամկավարների)
պատվիրակությանը Պողոս-Նուբար փաշայի գլխավորությամբ։
Դիմակազերծ անելով հայ ազգայնականներին, որոնք պճնվում էին ազ-
գասիրության, ժողովրդասիրության, երբեմն նույնիսկ «սոցիալիստական»
փետուրներով, հայ կոմունիստները արևմտահայ աշխատավորությանը կոչ
էին անում ակտիվ կերպով պաշտպանել Սովետական Ռուսաստանը, որով-
հետև «փոքր ազգերու ազատագրումը, անոնց միացումն ու ազատ ինքնորո-
շումը պիտի գա բանվոր դասակարգի ազատագրումովը, կոմունիզմի հաղթա-
նակովը»[2]։
«Բուլղարահայ բանվորներ և աշխատավորներ,— ասված էր կոմունիստա-
կան թռուցիկներից մեկում,— խատիսյանները հակահեղափոխական համա-
ձայնության հետադիմական գործիքներ են, որոնք կջանան հայ աշխատավոր

[1] ՀՍՍՌ ՊԿԱ, ֆ. 4/114, ց. 1, գ. 63. թ. 5։
[2] Նույն տեղը, թ. 7։

ժողովուրդը հավիտենապես սարկացնել, անարյուն իմպերիալիստական Ֆրանսիայի կամ ննենգավոր Ամերիկայի հովանավորության տակ»[1]:

Արտասահմանյան հայ աշխատավորությանը դաստիարակելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով և համախմբելով նրանց կոմունիստական պարտիաների դրոշի տակ, արևմտահայ կոմունիստներն իրենց հնարավոր աջակցությունն էին ցուցաբերում դաշնակցական տեռորիստական ռեժիմի տապալման և Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մղվող հերոսական պայքարի գործին:

Հայրենի երկրում սովետական կարգերի հաստատման լուրը կայծակի արագությամբ տարածվեց ամբողջ արևմտահայ աշխատավորության մեջ: Այդ լուրը շփոթություն ու խուճապ առաջացրեց հայ ազգայնական պարտիաների շարքերում և մեծ խանդավառություն ու ոևոլյուցիոն վերելք՝ աշխատավորական զանգվածների մեջ: 1920 թվականի դեկտեմբերի սկզբներին բալկանահայ աշխատավորության մեջ տարածվեցին հազարավոր թռուցիկներ, որոնք վերջանում էին հետևյալ մարտական լոզունգներով.

«Հայ բանվորներ ու աշխատավորներ, ամենքս միաձայն կոչենք — անկցի՛ն հայ ժողովրդի թշնամիները, կեցցե՛ Խորհրդային Հայաստանը, կեցցե՛ Կովկասի Դաշնակցային Խորհրդային Հանրապետությունը, կեցցե՛ Խորհրդային Ռուսաստանը, կեցցե՛ միջազգային հեղափոխությունը»[2]:

Արևմտահայ կոմունիստների քաղաքական ազդեցությունը հաստատորեն սկսեց աճել արտասահմանյան հայ գաղութների հասարակական կյանքում: Հայ ազգայնական պարտիաների շարքերում ծայր առան պառակտումն ու քայքայումը: Բանվորական տարրերը ո՛չ միայն սկսեցին հեռանալ նրանցից, այլև կազմակերպել «ձախ թևեր»՝ հակադրվելով ազգայնական պարտիաներին, իսկ ավելի ուշ աստիճանաբար համախմբվելով Սովետական Հայաստանի համակիրների մասսայական կազմակերպություններում և շատ դեպքերում անցնելով կոմունիստական պարտիաների շարքերը:

Բալկանահայ աշխատավորները հպարտորեն քայլում էին բանվորական ցույցերի մարտական շարքերում, իմանալով, որ հայ ժողովուրդն ընդմիշտ ազատագրված է կապիտալիստական շահագործումից ու իմպերիալիստական լծից, որ նա սովետական մյուս ժողովուրդների հետ միասին աշխարհի բոլոր ճնշվածներին ցույց է տալիս ազատության ճանապարհը:

1920 թվականի դեկտեմբերի 19-ին Բուլղարական Կոմպարտիայի «Նարոդեն դոմ» սրահի մեջ կայանում է Հայաստանում սովետական կարգերի հաստատմանը նվիրված Վառնա քաղաքի հայ աշխատավորության հրապարակային ժողովը: Այստեղ ելույթներ են ունենում Բուլղարական Կոմպարտիայի ղեկավար ընկերներ և հայ կոմունիստներ: Ժողովն անցնում է մեծ խանդավառության պայմաններում: Այդ կապակցությամբ, 1920 թվականի դեկտեմբերի 13-ին Վառնա քաղաքի հայկական կոմունիստական խմբի հրապարակած հատուկ թռուցիկում պարզաբանվում էր Հայաստանում սովետական կարգերի և պրոլետարական դիկտատուրայի հաստատման պատմական անհրաժեշտությունը, կոչ էր արվում ամբողջ արևմտահայ աշխատավորությանը՝ պաշտպանելու Սովետական Հայաստանը. «Արտասահմանյան հայ բանվորներ ու ընչազուրկներ,— ասվում էր այդ թռուցիկում,— կբավե որքան շահագործման

[1] ՀՍՍՌ ՊԿԱ., ֆ. 4/114, ց. 1, գ. 63, թ. 35:
[2] Նույն տեղը, թ. 36:



ենթակա եղաք, կբավե որքան գործիք եղաք հայկական անարգ բուրժուազիային: Հայ բանվորներ և աղքատ ծնողներ, եկեք, որպեսզի բարելավեք ու պաշտպանեք ձեր զավակներուն արդար իրավունքը... Անկցի շահագործողներու պառավացած ոհմակը, կեցցե՛ բանվորի ու ընչազուրկի միակ պաշտպան կոմունիզմը, կեցցե՛ Խորհրդային Հայաստանը»[1]:

1920 թվականի դեկտեմբերի 26-ին Պլովդիվ քաղաքի հայ ազգային վարժարանի սրահում նույնպես կոմունիստական խմբի կողմից կազմակերպվում է հայ բանվորների և արհեստավորների մասսայական միտինգ, ուր բոցավառ ելույթով հանդես է գալիս Ստեփան Շահբազյանը:

Աշխատավորական այդպիսի միտինգներ տեղի ունեցան նաև սփյուռքահայ գաղութների մի շարք ուրիշ քաղաքներում: Հետագա տարիներին Հայաստանում սովետական կարգերի հաստատման տարեդարձին նվիրված միտինգներն ու մասսայական ժողովները, պրոլետարիատի մայիսմեկյան տոնակատարությունների նման, դարձան սփյուռքահայ աշխատավորության ռևոլյուցիոն տրադիցիան: Բուլղարիայում, Հունաստանում, Ռումինիայում և այլուր այդ տոնակատարությունները վեր էին ածվում Սովետական Միության բարեկամների ուժերի ստուգատեսի, հայ աշխատավորներին սոցիալիստական հայրենիքի շուրջը համախմբելու հուժկու ցույցերի:

1921 թվականը արևմտահայ կոմունիստական կազմակերպությունների առավել բեղմնավոր տարին էր: Նրանք անողոք կերպով մերկացնում էին դաշնակցականների հակասովետական վայնասունը (առանձնապես փետրվարյան ավանտյուրայի օրերին) և աշխատավորական մասսաներին համախմբում կոմունիստական պարտիաների շուրջը: Կոմունիստական հայկական խմբերի ու միությունների կազմակերպական աճի ու նրանց քաղաքական ազդեցության ծավալման ու ամրապնդման առնչությամբ այդ կազմակերպությունների առաջ կանգնեցին նորանոր խնդիրներ, որոնց ճիշտ լուծումը կախված էր սփյուռքահայ ռևոլյուցիոն կադրերի մարքս-լենինյան պատրաստականությունից ու կոփումից, տեղական կոմպարտիաների քաղաքական գծի ճշտությունից: Այս տեսակետից ուշագրավ երևույթ էր 1921 թվականի փետրվարի 13-ից 14-ը Բուլղարիայի Կոմպարտիայի Կենտկոմի նախաձեռնությամբ Պլովդիվ քաղաքում գումարված բուլղարահայ կոմունիստների առաջին խորհրդաժողովը: Խորհրդաժողովը բացեց Ստեփան Շահբազյանը, որը ողջունեց պատգամավորներին ու մատնանշեց խորհրդաժողովի նպատակը և նրա առջև կանգնած այն խնդիրները, որոնք պետք է իրենց լուծումը գտնեին այդ անդրանիկ խորհրդաժողովում: Ընդարձակ ճառերով հանդես եկան Բուլղարիայի Կոմպարտիայի Կենտկոմի ներկայացուցիչ Յորդան Յորդանովը[2] և Պլովդիվի պարտիական քաղաքային կոմիտեի ներկայացուցիչ Վլադիմիր Դեմչևը: «Այս րոպեիս,— ասաց Վ. Դեմչևը,— ես մեծ հուզմունքով կատարում եմ ինձ հանձնարարված պարտականությունը ո՛չ միայն նրա համար, որ հանձին ձեզ ողջունում եմ հայ կոմունիստական առաջին խորհրդաժողովը, այլ որ ես տեսնում եմ հայ հերոսական ժողովրդի ներկայացուցիչներին, որոնք վերջապես իրագործեցին իրենց իդեալը և հաստատեցին իրենց երկրում խորհրդային սոցիալիստական հանրապետություն: ...Այս առաջին խորհրդաժողովում ձեր ամենագլխավոր խնդիրը պետք է լինի՝ բացատրել բուլղարահայ բանվորներին ու մանր սեփա-

[1] ՀՍՍՌ ՊԿԱ., ֆ. 4/114, ց. 1, գ. 63, թ. 33:
[2] Տե՛ս «Կարմիր լուրեր», Պլովդիվ, 1921, № 4:

կանատերերին, թե նրանց տեղը բուլղար կոմունիստական պարտիայի շարքերում է, որովհետև պայքարելով կոմունիզմի հաղթանակի համար Բուլղարիայում, նրանք միաժամանակ արդյունավետ կերպով պայքարում են իրենց սեփական հայրենիքի՝ ներկա խորհրդային Հայաստանի ազատությունն ամրապնդելու և ապահովելու համար»[1]:

Խորհրդաժողովում լսվեցին Ստեփան Շահբազյանի զեկուցումը՝ Պլովդիվի հայ կոմունիստների աշխատանքների կազմակերպական ձևերի, ագիտացիայի ու պրոպագանդայի հարցերի մասին, Արտաշես Ասլանյանի (Ռուսչուկ) զեկուցումը՝ հայ կոմունիստների վերաբերմունքը բուլղարահայ գաղութի ընտրական հիմնարկների հանդեպ և Մամուլի կոմիտեի քարտուղար Գրիգոր Շիշմանյանի զեկուցումը՝ կոմիտեի աշխատանքների մասին: Օրակարգի հարցերի շուրջ մտքերի ակտիվ փոխանակություն տեղի ունեցավ: Խորհրդաժողովը միահամուռ կերպով դատապարտեց առանձին կազմակերպություններում տեղ գտած սպեցիֆիկյան տրամադրությունները, որոնք դրսևորվում էին Բուլղարիայի Կոմպարտիայի հետ հայ կոմունիստական խմբերի կազմակերպչական կապերը թուլացնելու, նրանց գործունեությունը հայ գաղութի շրջանակներով սահմանափակելու ազգային ինքնապարփակվածության տենդենցների մեջ:

Սովետական Ռուսաստանի և առանձնապես Հայաստանի սովյալներին օգնելու համար բալկանյան երկրներում կազմակերպվում էին հանգանակություններ ու նվիրատվություններ, որոնք ինտերնացիոնալ համերաշխության փայլուն օրինակ էին քաղաքացիական կռիվների ու ինտերվենցիայի դժվարին տարիներին: 1921 թվականի ամռանը, Բուլղարական Կոմպարտիայի Կենտկոմի որոշմամբ ու հատուկ հանձնարարությամբ, Կենտկոմի անդամ Նիկոլա Բենևի հետ միասին Ռուսաստան է ուղևորվում նաև Ստեփան Շահբազյանը: Բաթումում սովետական իշխանության օրգաններին հանձնելով Մերձվոլգյան շրջանների ու Հայաստանի սովյալների համար բուլղար ժողովրդի նվերները (հացահատիկ, լոբի և այլն), Շահբազյանը մեկնում է Երևան, ուր մասնակցում է Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին տարեդարձի տոնակատարություններին, տեսակցություններ է ունենում Ալեքսանդր Մյասնիկյանի, Ասքանազ Մռավյանի և մի շարք ուրիշ սովետական ու պարտիական ղեկավար ընկերների հետ, ծանոթանում է Հայաստանի աշխատավորության հուզող հարցերին և 1922 թվականի սկզբներին վերադառնում Բուլղարիա, իր բոլոր ուժերն ու եռանդը նվիրաբերելու բանվոր դասակարգի ազատագրության մեծ գործին: Բուլղարիա վերադառնալու ճանապարհին նա կարճ ժամանակով կանգ է առնում Պոլսում, ուր հանդիպումներ է ունենում նաև կոմունիստ ընկերների հետ և օգնում նրանց իր խորհուրդներով: Շահբազյանի Պոլսում գտնված օրերին հայ ռևոլյուցիոն շարժման ոխերիմ թշնամի դաշնակ տեռորիստները մահափորձ են կազմակերպում նրա դեմ, որը, սակայն, չի հաջողվում՝ Պոլսո հայ ռևոլյուցիոն բանվորների աչալրջության շնորհիվ[2]:

Վերադառնալով Բուլղարիա, նա նոր ոգևորությամբ շարունակեց իր ռևոլյուցիոն գործունեությունը: 1922 թվականի մարտի 4-ին, Պլովդիվ քաղաքի «Նարոդեն դոմ» սրահում հրապարակային զեկուցումով հանդես գալով բազմաթիվ բանվորների, աշխատավորների ժողովում, Ստեփան Շահբազյանը

[1] Տե՛ս «Կարմիր լուրեր», Պլովդիվ, 1921, № 5:

[2] Տե՛ս Ռուժե Շահբազյան, «Հուշեր», բյուլետեն «Պլովդիվ», 1955 թ., № 4:



պատմեց Սովետական Հայաստանում ստացած իր տպավորությունների մասին և անողոք կերպով մերկացրեց դաշնակների ազգադավ քաղաքականությունը: Շահբազյանի նախաձեռնությամբ, Պլովդիվ քաղաքում, 1922 թվականի մարտի 15-ից սկսեց հրատարակվել Բուլղարական Կոմպարտիայի օրգան «Նոր աշխարհ» թերթը: Առաջին իսկ խմբագրական հոդվածում մերկացնելով դաշնակցականներին՝ Շահբազյանը գրում էր. «Ամենաբուռն կերպով հակազդել դեպի խորհրդային Հայաստանը կույր ատելությամբ տոգորված այս մութ ուժերու և անխիղճ պրովոկատորներու հակաժողովրդական արշավանքին՝ սրբազան պարտականությունն է ամեն մի արտասահմանյան գիտակից աշխատավորին»[1]:

Բալկաններում ծավալվող կոմունիստական շարժումը միավորելու և կոորդինացնելու, բալկանյան կոմունիստական կազմակերպությունների միասնական տակտիկական գիծ մշակելու գործում պատմական խոշոր դեր խաղաց Բալկանյան կոմունիստական ֆեդերացիան՝ Բալկանյան կոմպարտիաների ֆեդերատիվ ղեկավար օրգանը: Նրա դիրեկտիվների ու ցուցումների հիման վրա Բալկանյան երկրների յուրահատուկ պայմաններում իրականացվում էր Կոմինտերնի գլխավոր գիծը:

1922 թվականի հուլիսի 4-ից 7-ը Սոֆիա քաղաքում կայացած Բուլղարիայի Կոմպարտիայի հերթական IV համագումարում հայկական կոմունիստական խմբերի կողմից ողջույնի ճառով հանդես եկած Մովսես Պետրոսյանը դելեգատների բուռն ծափահարությունների տակ հայտարարեց. «Բուլղարահայ կոմունիստները, որոնք պայքարում են Բուլղարական Կոմունիստական պարտիայի շարքերում, հայտարարում են, թե նրանք պիտի կռվեն ուս-ուսի՝ իրենց բուլղար եղբայրների հետ, բուլղար ժողովրդական մասսաների վերջնական ազատագրության համար և կցանկանան, որ նրանք շուտով բարձրացնեն ընկերային հեղափոխության դրոշակը: Կեցցե՛ հալածվածների պաշտպան խորհրդային Ռուսաստանը, կեցցե՛ խորհրդային Հայաստանը, կեցցե՛ Անդրկովկասյան ֆեդերացիան, կեցցե՛ Բալկանյան խորհրդային ֆեդերացիան»[2]:

Համագումարի աշխատանքներին զուգահեռ Սոֆիա քաղաքում գումարվեց Բուլղարական Կոմպարտիային առընթեր ազգային բոլոր փոքրամասնությունների, այդ թվում նաև հայկական կոմունիստական խմբերի երկրորդ կոնֆերենցիան, որը տևեց երկու օր՝ հունիսի 4-ից մինչև 5-ը: Կոնֆերենցիան բացեց ընկ. Գրիգոր Շիշմանյանը: Նախագահ ընտրվեց Մովսես Պետրոսյանը, քարտուղար՝ Թագվոր Թագվորյանը: Ընդարձակ ճառով կոնֆերենցիայում հանդես եկավ Բուլղարական Կոմպարտիայի կենտկոմի ներկայացուցիչ Ս. Ստեֆանովը: Կոնֆերենցիան հատուկ քննարկման ենթարկեց Սովետական Հայաստանի երիտասարդ ռեսպուբլիկայի ամրապնդման գործում բալկանահայ աշխատավորության ակտիվ աջակցություն կազմակերպելու հարցը: Քննարկվեց նաև սփյուռքահայ գաղութներում ծնունդ առած կոմունիստական խմբերի ու կազմակերպությունների հետ կապերն ու հարաբերություններն ամրապնդելու, ինչպես նաև երկրի պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարին կոմունիստների ավելի ակտիվ մասնակցության հարցը:

Մտքերի ակտիվ փոխանակությունից հետո քննարկված բոլոր հարցերի շուրջ ընդունվեցին համապատասխան որոշումներ:

[1] Տե՛ս «Նոր աշխարհ», 1922 թ., № 1:

[2] Նույն տեղը, № 7:

Կոնֆերենցիան եղբայրական ողջույններ ուղարկեց Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմին։ Կոնֆերենցիան դրսևորեց արևմտահայ կոմունիստների քաղաքական հասունության բարձր մակարդակը և կարևոր էտապ հանդիսացավ գալիք դասակարգային մարտերում հայ աշխատավորության ակտիվ մասնակցությունն ապահովելու գործում։

Բուլղարահայ աշխատավորությունը մեծ ակտիվությամբ մասնակցեց 1922 թվականի մայիսմեկյան ցույցերին, գործադուլային մարտերին և բանվորական այլ ելույթների։

1922 թվականի մայիսմեկյան կոչում հայ կոմունիստները հետևյալ պահանջներն էին առաջ քաշում. «Ութժամյա աշխատանքի պահպանում, աշխատավորության կենսական պայմաններու բարելավում, իմպերիալիզմեն ճնշված ազգերու ազատագրում, աշխարհի մեջ իսկական խաղաղության ստեղծում, խորհրդային հանրապետություններու ճանաչում»: Կոչը վերջանում էր հետևյալ լոզունգներով. «Կեցցե՜ն Խորհրդային Ռուսաստանը և Խորհրդային Հայաստանը, կեցցե՜ Մայիսի մեկը, կեցցե՜ համաշխարհային հեղափոխությունը» [1]։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և հետպատերազմյան տարիների բանվորական շարժման վերելքի ազդեցության տակ Բալկանների հայ աշխատավորությունը սկսեց մասսայականորեն մտնել ռևոլյուցիոն արհմիությունների շարքերն ու կազմակերպել կուլտուրական, սպորտային, թատերական, երաժշտական և մի շարք այլ հասարակական կազմակերպություններ Բուլղարիայի, Հունաստանի, Ռումինիայի հայաշատ կենտրոններում։ Այդ կազմակերպությունները կանգնած էին Սովետական Միության բարեկամների դիրքերում և մեծ աշխատանք էին կատարում գաղութահայ երիտասարդության դասակարգային ինքնագիտակցությունը բարձրացնելու գործում։ Ելնելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարտական դիրքերից, կոմունիստական խմբերը վերակառուցում էին իրենց ամբողջ գործունեությունն ու առավելագույն կերպով օգտագործում լեգալ աշխատանքի հնարավորությունները, որ դեռևս գոյություն ունեին այդ տարիներին։ 1922 թվականի վերջերին, Վառնա քաղաքում կազմակերպվեց հայկական կոմունիստական խմբին աջակցող գործող Շահումյանի անվան կուլտուր-լուսավորական կազմակերպությունը, որ ուներ իր թատերական խումբը և կազմակերպում էր երեկույթներ, դասախոսություններ, իրականացնում կուլտուր-լուսավորական այլ միջոցառումներ։

1923 թվականի հունվարի 8-ին տեղի ունեցավ Պլովդիվ քաղաքի հայկական կոմունիստական խմբին աջակցող կազմակերպված Ստեփան Շահումյանի անվան լսարան-ընթերցարանի բացումը։ Ընթերցարանն սկզբում ուներ մոտ հիսուն հիմնադիր անդամներ, իսկ նրա կազմակերպած դասախոսություններին մասնակցում էին հարյուրավոր հայ բանվորներ ու արհեստավորներ։ Ընթերցարանն աշխատում էր ամեն օր, ուներ հարուստ գրադարան, հայերեն, բուլղարերեն և թուրքերեն գրքերից ու թերթերից բաղկացած։ Կոմունիստները, կազմակերպելով աշխատավորության կուլտուրական սպասարկումը, միաժամանակ պայքարում էին նրանց ազգայնական պարտիաների ազդեցությունից դուրս բերելու և կոմունիզմի դրոշի տակ համախմբելու համար։

Բալկանահայ կոմունիստներն ագիտացիոն խոշոր աշխատանք էին տանում հայ աշխատավորների այն խավերի մեջ, որոնք ունեին քաղաքացիական

[1] Տե՛ս «Նոր աշխարհ», 1922 թ., № 4—5։



իրավունքներ և կարող էին մասնակցել երկրի մունիցիպալ և պառլամենտական ընտրություններին։ Նրանք պայքարում էին, որպեսզի հայ աշխատավորության քվեները լիովին տրվեին կոմունիստական պարտիայի թեկնածուներին։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո արևմտահայ աշխատավորությունն ավելի ակտիվ մասնակցություն էր ցուցաբերում կապիտալիզմի դեմ մղվող մարտերին, իսկ նրա առաջավոր տարրերը, ինչպես ամենուրեք, այնպես էլ Բալկաններում, համախմբվում էին Լենինի հանճարով ու դասակարգային տիտանական մարտերից ծնունդ առած Կոմունիստական Ինտերնացիոնալի մարտական դրոշի տակ։

Կապիտալիզմի և սոցիալիզմի, հնի ու նորի, հետադիմության ու պրոգրեսի ուժերի մեջ մղվող պատմական այդ առաջին ահեղ մենամարտը վերջացավ սովետական ժողովուրդների փառապանծ հաղթանակով և ռևոլյուցիոն ուժերի ամրապնդումով կապիտալիստական բոլոր երկրներում։ Սակայն, օգտվելով բանվոր դասակարգի ուժերի մասնատվածությունից, երիտասարդ կոմունիստական պարտիաների կազմակերպման հետ կապված առաջին տարիների դժվարություններից, ինչպես նաև սոցիալ-դեմոկրատական լիդերների դավաճանությունից, միջազգային բուրժուազիային մի շարք երկրներում հաջողվեց ժամանակավորապես պահել իր խարխլվող տիրապետությունը՝ տեռորիստական-ֆաշիստական դիկտատուրա հաստատելու միջոցով։

Հետևելով հունգարական և իտալական ռեակցիայի օրինակին, բուլղարական խոշոր բուրժուազիան 1923 թվականի հունիսի 9-ին ռազմական հեղաշրջում կատարեց երկրում և սկսեց սպիտակ տեռորի ենթարկել ռևոլյուցիոն կազմակերպությունները։

Հունիսի 9-ի ֆաշիստական սպիտակգվարդիական հեղաշրջման կապակցությամբ Կոմինտերնի Գործկոմի ընդլայնված պլենումը հատուկ կոչով դիմեց բուլղարական բանվորներին, գյուղացիներին և միջազգային պրոլետարիատին... «Կռվի ելեք այն կառավարության դեմ,— ասված էր կոչում,— որը Բուլղարիայում սպիտակգվարդիական հեղաշրջում կատարեց, կռվի ելեք հօգուտ բանվորա-գյուղացիական կառավարության» [1]։

Եվրոպական և Բալկանյան երկրների ռևոլյուցիոն բանվոր դասակարգը արձագանքելով այդ կոչին, ոտքի կանգնեց ընդդեմ ֆաշիստական հալածանքների և սպիտակ տեռորի, հանուն բուլղար աշխատավորների շահերի պաշտպանության։ 1923 թվականի սեպտեմբերին բուլղար բանվորներն ու գյուղացիները իրենց հերոսական հակաֆաշիստական ապստամբությամբ փայլուն էջ գրեցին ֆաշիզմի դեմ ժողովուրդների մղած լեգենդար պայքարի պատմության մեջ։ Հայ աշխատավորությունը ակտիվ մասնակցություն ունեցավ այդ մարտերին։ Սակայն սեպտեմբերյան ապստամբությունը, որ խոշոր նշանակություն ունեցավ ռևոլյուցիոն շարժման հետագա զարգացման համար, մի շարք սխալների, ինչպես նաև բանվոր դասակարգի ու գյուղացիության ռևոլյուցիոն դաշինքի թուլության պատճառով պարտություն կրեց։

Ամբողջ երկրում սկսվեցին ռևոլյուցիոն բանվորների ու գյուղացիների համատարած ձերբակալությունները։ Գազազած ֆաշիստները, առանց դատի ու դատաստանի, տեղնուտեղը գնդակահարում, սպանում էին կոմունիստներին, ռևոլյուցիոն բանվորներին ու գյուղացիներին։

[1] Տե՛ս «Խորհրդային Հայաստան», 3 հուլիսի, 1923 թ.։

1923 թվականի սեպտեմբերի 12-ին ֆաշիստական օխրանկայի օրգանները ձերբակալեցին նաև Բուլղարական Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի անդամ, Պլովդիվի բազմազգ աշխատավորության մարտական ղեկավար Ստեփան Շահբազյանին։ Սեպտեմբերի 27-ին, տասներկու ղեկավար կոմունիստ ընկերների հետ միասին, Պլովդիվ քաղաքի մոտակա դաշտերից մեկում Ստեփան Շահբազյանը գազանաբար սպանվեց ֆաշիստ բանդիտների ձեռքով։ Դա խոշորագույն կորուստ էր ո՛չ միայն Բուլղարական Կոմպարտիայի, այլև ամբողջ արևմտահայ աշխատավորության և հայ ժողովրդի համար։

Ստեփան Շահբազյանի տասնյակ մարտական ընկերները ստիպված եղան դիմել քաղաքական վտարանդիության, անցնելով հայկական մյուս գաղութները Բալկաններում և այլուր։

Շահբազյանի ընկերների մյուս մասը շարունակեց իր հերոսական պայքարը ֆաշիստական ռեժիմի դեմ ընդհատակի պայմաններում։ Զոհված անվեհեր մարտիկների ձեռքից վերցնելով կոմունիզմի դրոշը, բալկանահայ նորանոր ռևոլյուցիոներներ հավերժացրին իրենց անունները ֆաշիզմի դեմ մղվող մարտերում։ Այդ պայքարը վերջնական հաղթանակով պսակվեց 1944 թվականի Սեպտեմբերյան նոր ապստամբությամբ, որն ապահովեց սոցիալիզմի հաղթանակը Բուլղարիայում։

1920 թվականի հունվարին առաջին ապակետիպ ձեռագիր-շրջաբերականում իր մեծ սրտի ամբողջ կորովով Ստեփան Շահբազյանը դիմում էր Բալկանյան երկրների և ամբողջ արևմտահայ կոմունիստներին.

«Ընկերներ, կրկին անգամ կուղղենք ձեզ կոչ՝ կոմունիզմի գործին սրտանց փարելու. մեծագույն էներգիա, անմարելի ոգևորություն, վեհ իդեալիզմ (գաղափարայնություն.— Խմբ.), ինքնազոհություն ցույց տվեք՝ կոմունիզմի նավը աշխարհի ալեկոծ ծովուն վրայեն փրկարար եզերքը տանելու համար, ուրկե մենք ալ, հայ կոմունիստներս, միջազգային պրոլետարիատի հաղթանակը ողջունենք»[1]։

Այսպես էին մարտնչում արևմտահայ ռևոլյուցիոներների առաջին ջոկատները։

Արևմտահայ աշխատավորությունը մեծ զոհեր է տվել ֆաշիզմի դեմ մղվող պայքարում։ Այդ պայքարի հերոսական պատմությունը անհրաժեշտ է ուսումնասիրել և մտցնել հայ ժողովրդի ընդհանուր պատմության ոսկե գանձարանը։

---

[1] ՀՍՍՌ ՊԿԱ., ֆ. 4/114, ց. 1, գ. 63, թ. 8։

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՊԱԳՈՒՆԵՐԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՏԱԳՆԱՊԸ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

Մոտ մեկ տարի առաջ Սովետական Միության Կոմունիստական պարտիան ձեռնամուխ եղավ արդյունաբերության և շինարարության ղեկավարման ձևերի և մեթոդների արմատական վերակառուցմանը։ Այդ ուղղությամբ պարտիայի մշակած միջոցառումների կենսագործումը նոր էտապ հանդիսացավ տնտեսական շինարարության բնագավառում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի իրականացման գործում։

ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած տնտեսական վիթխարի խնդիրների և, մասնավորապես, ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի իրագործումը, որը կարող է կատարվել միայն գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, արտադրության մասնագիտացման, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման հիման վրա, հրամայաբար թելադրում էր հրաժարվել ժողովրդական տնտեսության ղեկավարման արդեն հնացած և իրենց սպառած ձևերից։ ՍՄԿՊ ԿԿ-ի 1957 թվականի Փետրվարյան պլենումը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի չորրորդ գումարման 7-րդ սեսիան որոշեցին անցնել տնտեսության ղեկավարման նոր ձևերի, որն առաջ բերեց սովետական մարդկանց ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության վիթխարի վերելք։ Զնջվեցին գերատեսչական միջնորմները, բարձրացան սովետական ռեսպուբլիկաների, բոլոր տեղական օրգանների պատասխանատվությունն ու դերը տնտեսական շինարարության գործում, զգալիորեն արագացավ արտադրողական ուժերի զարգացումը բոլոր տնտեսական շրջաններում։ Համաժողովրդական սոցիալիստական մրցությունն ստացավ աննախընթաց թափ։

Այս տեսակետից այդ ամենը չէր կարող իր վրա չբևեռել աշխարհի ինչպես դեմոկրատական հասարակայնության, այնպես էլ ռեակցիոն բուրժուական շրջանների ուշադրությունը։

Ամենից առաջ պետք է նշել, որ այդ որոշումները լայն արձագանք գտան Չինաստանում և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրներում, որտեղ մամուլը լայնորեն լուսաբանեց դրանք, հատկապես նշելով հարցի քննարկման համաժողովրդական բնույթը, որպես սովետական իսկական դեմոկրատիայի արտահայտություն։ Հունգարական «Նեպսաբադսագ» թերթը այդ քննարկումն անվանեց «միլիոնավորների դիսկուսիա»։ Լեհական «Տրիբունա Լյուդու» թերթը նշում էր այդ առթիվ արված առաջարկությունների խոշոր նշանակությունը ո՛չ միայն ՍՍՌՄ-ի հետագա զարգացման, այլև միջազգային մասշտաբով սոցիալիզմի ամրապնդման համար։ Բուլղարական մամուլը գրում էր, որ արդյունաբերության և շինարարության ղեկավարման ասպարե-

զում Սովետական Միության կուտակած փորձը հսկայական արժեք է ներկայացնում Բուլղարիայի համար։ Ռումինական «Ռումինա Լիբերա» թերթի կարծիքով այդ որոշումների իրագործումը լայն հնարավորություններ է ստեղծում արտադրողական ուժերի զարգացման համար։ Նույն ոգով հանդես եկան նաև «Նեյսե Դեյչլանդ» թերթը ԳԴՌ-ում և շատ ու շատ այլ թերթեր սոցիալիզմի լագերի այլ երկրներում։

Այդ որոշումները շատ բարձր գնահատվեցին Հնդկաստանի, Եգիպտոսի և մյուս խաղաղասեր երկրների մամուլի էջերում։

Ինչ վերաբերում է կապիտալիստական երկրների դեմոկրատական շրջաններին, ապա նրանք այդ որոշումներն ընկալեցին որպես մի ակտ, որը վկայում է սոցիալիզմի անվիճելի առավելությունների մասին կապիտալիզմի նկատմամբ։ Արևմտյան Եվրոպայի և Ամերիկայի կոմունիստական մամուլը լայնորեն լուսաբանեց այդ որոշումները։ «Յումանիտե» թերթը մի հոդվածում նշում էր, որ միայն խաղաղության քաղաքականություն վարող երկիրը կարող է նման խոշոր վերակառուցում կատարել տնտեսության մեջ։ Թերթի կարծիքով այն մի նոր խոշոր քայլ է կոմունիզմի կառուցման ճանապարհին։

«Ֆրանսիա—ՍՍՌՄ» ամսագիրը 1957 թվականի ապրիլի համարում արդյունաբերության և շինարարության վերակառուցմանը և ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնմանը տալով բարձր գնահատական, գտնում էր, որ դրանք կարևոր պրակտիկ արդյունքներ կունենան պլանավորման գործի բարելավման, աշխատանքի ավելի լավ կազմակերպման, մեքենայացման և ավտոմատացման զարգացման համար։ Իտալական Կոմպարտիայի Կենտկոմի «Ռինաշիտա» ամսագրում (№ 5, 1957 թ.) «Դեմոկրատական մեծ քննարկում և սովետական արդյունաբերության խոր վերակառուցում» հոդվածում Ջուզեպպե Բոֆֆան գրում էր. «Սոցիալիստական պետության քաղաքական հիմքը կազմող սոցիալիստական մասսաները, որոնք աճել և գոտեպնդվել են նոր հասարակության ստեղծման համար մղված դժվարին պայքարում, ավելի անմիջական դեր են ստանձնում հասարակական հարցերի վճռման գործում»։ Հոդվածագիրը գտնում է, որ այդ որոշումները նոր խթան կհանդիսանան սովետական դեմոկրատիայի էվոլյուցիայի գործում և դրանք համարում է ՍՄԿՊ XX համագումարի կարևորագույն արդյունքը։

Գալով բուրժուական մամուլին, պետք է ասել, որ մի շարք թերթեր և ամսագրեր հանդես եկան ողջախոհ և հիմնավորված դատողություններով ու մեկնաբանություններով։ Անգլիական լուրջ տեսաբանների մեծամասնության կարծիքով արդյունաբերության և շինարարության հետագա վերակառուցումը է՛լ ավելի կամրապնդի Սովետական Միության հզորությունը։ «Թայմս» թերթը (8. 5. 1957 թ.) այն համարեց «ամենառևոլյուցիոն պլանը 20-ական թվականների սկզբի նոր տնտեսական քաղաքականությունից հետո»։ «Գլազգո Հերալդ» թերթի հատուկ թղթակիցը Ն. Ս. Խրուշչովի ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսիայում կարդացած զեկուցման մասին գրում էր, թե հնարավոր է, որ այն դառնա ՍՍՌՄ-ում մի նոր տնտեսական ռևոլյուցիայի նախակարապետը։ Ֆրանսիական «Ֆրան-Թիրյոր» թերթը արդյունաբերության և շինարարության ղեկավարության վերակառուցումը համարում էր ամենակարևոր տնտեսական ռեֆորմը գյուղատնտեսության կոլեկտիվացումից հետո։ Մեկնաբանելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսիայի որոշումները, շատ տեսաբաններ դրանք



գնահատեցին որպես ռևոլյուցիոն վերափոխում։ «Էքսպրես» շաբաթաթերթը
այն համարեց «արդյունաբերական ռևոլյուցիա»։
Սակայն նման օբյեկտիվ դատողությունների կողքին բազմաթիվ էին նաև
սխալ մեկնաբանությունները, անհիմն ու տենդենցիոզ պնդումները։ Արևմտա-
եվրոպական և ամերիկյան մի շարք թերթեր, խեղաթյուրելով այդ որոշման
էությունը, փորձեցին արդյունաբերության և շինարարության ղեկավարության
հետագա կատարելագործման հետ կապված միջոցառումները ներկայացնել
որպես հրաժարում տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարությու-
նից։ Որոշ տեսաբաններ ավելի հեռու գնացին։ Մոնոպոլիստական բուր-
ժուազիայի վարձու գրչակները սկսեցին քաղաքական սպեկուլյացիա անել.
բարձրագոչ հայտարարելով, որ արդյունաբերության և շինարարության ղեկա-
վարության վերակառուցումը ՍՍՌՄ-ում իբր թե վկայում է այն մասին, որ
կոմունիստական պարտիայի տնտեսական քաղաքականությունն ընկել է փա-
կուղու մեջ, որ իբր թե այն փակուղուց ելք գտնելու ապարդյուն ճիգ է, որ
Սովետական Միությունը կանգնած է տնտեսական ճգնաժամի և քաղաքական
փլուզման առաջ։
Իտալական «Պոպոլո» թերթը գրում էր, որ Սովետական Միությունում
նախատեսվող միջոցառումները «վկայում են ճգնաժամի մասին, որը վերջերս
ապրում է տնտեսական պլանավորման սովետական սիստեմը»։ Այդ նույն
միտքը տարբեր ձևերով արտահայտել են բուրժուական և, հատկապես, ամե-
րիկյան բազմաթիվ թերթեր ու ամսագրեր։
Սովետական Միությունում «մոտ ապագայում սպասվող անխուսափելի
ճգնաժամի» մասին առանձնապես շատախոսում են ամերիկյան բուրժուական
տնտեսագետները, թեև սովետական էկոնոմիկայի 40 տարիների պատմու-
թյունից հետո այդ կարգի պնդումները չափից դուրս արտառոց են հնչում։
Սակայն իրականում ո՞ւմ է հետապնդում ճգնաժամի ուրվականը, և ո՞վ
պետք է մտահոգվի ճգնաժամի համար։
Ամերիկյան բուրժուական տնտեսագետները հավանաբար գլխապտույտի
չափ ոգևորված են այն բանով, որ երկրորդ համաշխարհային պատերազմից
հետո Միացյալ Նահանգներին ամեն անգամ հաջողվել է գերբնական ճիգերով
խուսափել ճգնաժամից, երբ վերջինս բախել է նրանց դուռը։ Բուրժուական տըն-
տեսագետները ագահորեն որսում են ամեն մի առիթ այդ ներկայացնելու
որպես բուրժուական տնտեսական օրգանիզմի առողջացման փաստ և «ժըխ-
տում են» տնտեսական մրցակցության մեջ ԱՄՆ-ին հասնելու և անցնելու
ՍՍՌՄ-ի հնարավորությունը։ Այսպես, օրինակ՝ «Տնտեսական զարգացման
տենդենցները» գրքի հեղինակները կանխատեսում են, որ մինչև 1970 թվակա-
նը ՍՍՌՄ-ի արդյունաբերական արտադրանքը 1953 թվականի համեմատու-
թյամբ կաճի իբր թե ոչ ավելի, քան 2,8 անգամ, և ԱՄՆ-ի ու ՍՍՌՄ-ի տնտե-
սական հզորության միջև տարբերությունը (բացարձակ չափով) ո՛չ միայն
չի կրճատվի, այլև կավելանա։
Հանրահայտ է այն ճշմարտությունը, որ պատմությունը օգտակար է ո՛չ
միայն այն բանի համար, որ նրանում կարելի է կարդալ անցյալը, այլև այն
բանի համար, որ նրանում կարելի է տեսնել նաև ապագան։ Այս տեսակե-
տից բավական է անել մի շարք հետևություններ ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի էկոնոմի-
կայի վերջին 40 տարիների պատմությունից, որպեսզի միանգամայն պարզ
լինի նման կանխագուշակությունների սնանկությունը։

Եթե համեմատելու լինենք ԱՄՆ-ի և ՍՍՌՄ-ի արդյունաբերության զարգացման տեմպերը երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակամիջոցում, ապա կտեսնենք, որ ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքի ծավալը անփոփոխ գներով աճել է ընդամենը 100 տոկոսով, որը տալիս է 3 տոկոս տարեկան աճ, մինչդեռ ՍՍՌՄ-ում 1913—1939 թթ. այն ավելացել է ավելի քան 7 անգամ՝ 663 տոկոսով, այսինքն՝ տարեկան աճը կազմել է 8 տոկոս։ Իսկ եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ ԱՄՆ-ի բնակչությունը այդ ժամանակամիջոցում 99 միլիոնից հասել է 131 միլիոնի, ապա մեկ շնչին հասնող քանակի տեսակետից աճը 25 տարվա ընթացքում կկազմի մոտ 32 տոկոս, այսինքն՝ միջին հաշվով տարեկան ոչ ավելի, քան 1—1,5 տոկոս։

Երկրորդ համաշխարհային պատերազմը և սպառազինության մրցավազքը ԱՄՆ-ի համար հնարավորություն ստեղծեցին բեռնավորելու արտադրական ձեռնարկությունները և արագացնելու արդյունաբերության աճի տեմպերը։ ԱՄՆ-ը պատերազմից դուրս եկավ տնտեսական և ռազմական տեսակետից զգալի չափով ուժեղացած։ Աննախընթաց չափով ավելացավ ԱՄՆ-ի ազգային եկամուտը, որը 1939 թվականի 70 միլիարդ դոլարից 1944 թվականին հասավ 160 միլիարդ դոլարի, խիստ կերպով ընդլայնվեց ԱՄՆ-ի արտաքին առևտուրը։ Եթե 1938—1943 թթ. ընթացքում Անգլիայի արտաքին առևտրի արժեքը նվազեց 70 տոկոսով, ապա ԱՄՆ-ի արտաքին առևտուրը նույն ժամանակամիջոցում աճեց 3 անգամ[1]։ Պատերազմի և ռազմական կոնյունկտուրայի շնորհիվ ԱՄՆ-ում ավելացավ բնակչության զբաղվածությունը, թեև գործազրկությունը լիակատար կերպով չվերացավ։ Ռազմական նպատակներով մոբիլիզացվածների թիվը հասնում էր 12 միլիոն մարդու։

Աննախընթաց չափով հզորացան ամերիկյան մոնոպոլիաները, որոնք պատերազմի շնորհիվ սկսեցին առասպելական շահույթներ ստանալ։ Պատերազմի տարիներին ամերիկյան մոնոպոլիաները (հարկերը վճարելուց հետո), պաշտոնական, ակներևորեն նվազեցված տվյալներով, ստացան 52,3 մլրդ դոլար շահույթ, կամ գրեթե 3,5 անգամ ավելի, քան նախապատերազմյան 5 տարիների (1934—1938) ընթացքում։ Ուժեղացավ կապիտալի համակենտրոնացումը։ 1948 թվականին մեկ մլրդ դոլարից ավելի կապիտալ ունեցող ձեռնարկությունների թիվը հասնում էր 43-ի, որոնց ընդհանուր կապիտալը կազմում էր 102 միլիարդ դոլար[2]։

Չնայած տնտեսական հզորացմանը և կապիտալիստական աշխարհում ունեցած մենաշնորհային դիրքին, ԱՄՆ-ը անկարող էին խուսափել հետպատերազմյան տնտեսական ցնցումներից, որոնց սիմպտոմները որոշակիորեն զգացվում էին արդեն պատերազմի վերջին տարիներին։ ԱՄՆ-ում արդյունաբերական արտադրանքի մաքսիմալ մակարդակը 1943 թվականի հոկտեմբերի մակարդակն էր՝ 212 (1937—100)։ Դրանից հետո այն երբեք այդ մակարդակին չհասավ, իսկ 1945 թվականին արդյունաբերական արտադրանքը նվազեց $^1/_3$-ով և գրեթե իջավ մինչև 1941 թվականի ծավալը։ Արդյունաբերական արտադրանքի կրճատման հետ միաժամանակ սկսեց արագորեն աճել գործազր-

[1] Jean Chardonnet — Les Conséquences économiques de la guerre 1939—1946. Paris 1947, p. 3.

[2] Henri Ardent — Les Crises économiques, Paris, 1948, p. 75.



կությունը։ Ամերիկյան մամուլի հաղորդումներով 1945 թվականի օգոստոս և սեպտեմբեր ամիսներին ԱՄՆ-ում ամեն շաբաթ աշխատանքից ազատվում էր 200—300 հազար բանվոր։ Գործազրկությունն այնքան արագ էր աճում, որ նույն տարվա վերջին գործազուրկների թիվը հասավ 3,5 միլիոնի։

Ամերիկյան իմպերիալիզմն սկսեց տենդորեն ուղիներ որոնել վերահաս ճգնաժամից խուսափելու համար։ Ամերիկյան միլիարդատերերը սկսեցին մեծ չափով կապիտալ արտահանել ինչպես ուղղակի ներդրումների միջոցով, այնպես էլ արտաքին վարկերի ձևով, որոնք կապիտալիստական մյուս պետություններին տրվում էին ստրկացուցիչ պայմաններով։ Ամերիկյան էքսպանսիան, որը հետապնդում էր ո՛չ միայն տնտեսական, այլև հեռու գնացող քաղաքական նպատակներ, հետպատերազմյան տարիներին հասավ աննախընթաց չափի։ Այդ էքսպանսիան իր ընդհանրացումն ու իրավական ձևակերպումն ստացավ «Տրումենի դոկտրինայի», «Մարշալի պլանի», իսկ հետագայում «Հյուսիս Ատլանտյան պակտի շրջանակներում կատարվող օգնության» մեջ։ Վարկեր և սուբսիդիաներ տրամադրելու ճանապարհով ԱՄՆ-ի մոնոպոլիաները սկսեցին լայնորեն մուտք գործել Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և այլ երկրների տնտեսության մեջ և զավթել նրանց հումքի աղբյուրներն ու վաճառահանման շուկաները։ Դրա շնորհիվ Միացյալ Նահանգներին հաջողվեց Թևանցել տնտեսական ճգնաժամը և հասնել արդյունաբերական արտադրանքի ծավալի որոշ ավելացման։ Սակայն այդ վերելքը երկար չտևեց։ 1948 թվականի հոկտեմբերից ԱՄՆ-ում սկսվեց արդյունաբերական արտադրանքի նոր «անկում» և նորից ի հայտ եկան տնտեսական ճգնաժամի սիմպտոմները։ Եթե 1948 թվականին գործազուրկների թիվը կազմում էր 2 մլն մարդ, ապա 1949 թվականի հուլիս ամսին՝ մինչև 4 մլն մարդ։ Բուրժուական տնտեսագետներն արդեն չէին թաքցնում, որ ԱՄՆ-ը գտնվում են նոր տնտեսական ճգնաժամի նախօրյակին։

Բայց այս անգամ ևս Միացյալ Նահանգները խուսափեցին ճգնաժամից։ Ագրեսիվ պատերազմը Կորեայում, տնտեսության արագ միլիտարիզացիան և սպառազինությունների կատաղի մրցավազքը ԱՄՆ-ին թույլ տվեցին ժամանակավորապես ետ մղել սկսվող ճգնաժամի առաջին հարվածները։ Սակայն սկսված նոր աճը չէր կարող հարատև լինել։ Կորեայում զինադադարը կնքելուց և ռազմական գործողությունները դադարեցնելուց հետո նորից երևան եկան անկման տենդենցներ և միայն մեկ տարում արտադրանքի ծավալը կրճատվեց 9,6 տոկոսով։

Այժմ ԱՄՆ-ի արդյունաբերության մակարդակը ապահովվում է տնտեսության միլիտարիզացիայի շնորհիվ, որն իր ցայտուն արտահայտությունն է գտնում երկրի բյուջեի մեջ։ Եթե երկրորդ համաշխարհային պատերազմի 5 տարիների ընթացքում ԱՄՆ-ի ռազմական ծախսերի գումարը կազմում էր 297 մլրդ դոլար, ապա հետպատերազմյան ֆինանսական 10 տարիների ընթացքում (1946/1947թթ.—1955/56 թթ.) ոչ լրիվ տվյալներով դրանք կազմել են 351,256 մլն դոլար, այսինքն՝ 54 մլրդ 256 մլն դոլարով գերազանցել են պատերազմի տարիներին կատարված ծախսերը[1]։

Այս տարվա հուլիսի 1-ից սկսվող ֆինանսական տարում ԱՄՆ-ի բյուջեի 74,4 մլրդ դոլար ընդհանուր գումարից 45,8 մլրդ դոլարը, կամ 64 տոկոսը

[1] Statistical Abstract of the United States, 1956. p. 234.

նախատեսվում է հատկացնել ռազմական նպատակների համար։ Միայն 5,3 մլրդ դոլարը ծախսվելու է բալիստիկ հրթիռներ ստեղծելու վրա։

ԱՄՆ-ի հետպատերազմյան էկոնոմիկայի զարգացման տվյալները հանրագումարի բերելիս ակնհայտ է դառնում, որ եթե չլինի էկոնոմիկայի միլիտարիզացիայի փաստը, ապա այն ո՛չ միայն զգալի նվաճումներ չունի, այլև նրա աճը ետ է մնացել բնակչության թվի աճից և, հետևապես, մեկ շնչին ընկնող քանակի տեսակետից ազգային եկամուտը նվազել է։

Այսպես, օրինակ, չնայած սպառազինության մրցավազքին, կորեական պատերազմին և «սառը պատերազմին», 1947—1955 թթ. 8 տարիների արդյունաբերության աճը կազմել է ընդամենը 39 տոկոս, իսկ քաղաքացիական արտադրության աճը՝ միայն 13 տոկոս։ Նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ի բնակչությունն աճել է 14,6 տոկոսով, այլ կերպ ասած՝ բնակչության աճը գերազանցել է քաղաքացիական արտադրության աճը և, հետևապես, մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակի տեսակետից տեղի է ունեցել արտադրանքի նվազում։

Իսկ եթե վերցնենք ամերիկյան արդյունաբերության դինամիկան 1939—1955 թթ. 16 տարիների համար, ապա կտեսնենք, որ աճը կազմում է ընդամենը 62,5 տոկոս, այսինքն՝ տարեկան միջինը 4 տոկոսից էլ պակաս։ Բնակչության աճը հաշվի առնելու դեպքում մեկ շնչին ընկնող օգտակար արտադրանքի աճը նույն ժամանակամիջոցում կազմել է ընդամենը 29 տոկոս, այսինքն՝ տարեկան միջինը 1,5 տոկոս։

Հետևապես, եթե մի կողմ նետենք ռազմական արտադրանքը, որն ըստ էության անարտադրողական սպառում է և ոչնչով չի փոխհատուցվում, ԱՄՆ-ում, սկսած 1914 թվականից, տեղի է ունեցել լճացում, որովհետև, ինչպես 1914—1939 թթ., այնպես էլ 1939—1955 թթ. ընթացքում տարեկան միջին աճը կազմել է 1,5 տոկոս։

Այսպիսին են փաստերը ԱՄՆ-ի էկոնոմիկայի զարգացման մասին։ Այդ տվյալների վերլուծությունն արդեն ցույց է տալիս, թե ինչ է թաքնված այն առերևույթ «ծաղկման» հետևում, որն անխոնջ կերպով ջատագովում են, այսպես կոչված «ժողովրդական կապիտալիզմի» պրոպագանդիստները։ Անընդհատ աճող ռազմական արտադրությունն արդեն ինքնըստինքյան վկայում է այն մասին, որ ամերիկյան էկոնոմիկան նեխում է և փտում։

1957 թվականին ԱՄՆ-ում նորից սկսեցին ի հայտ գալ ճգնաժամային երևույթներ, թեև երկրի համախառն արտադրանքն ընթացիկ գներով ցույց էր տալիս որոշ աճ։ Սակայն արդյունաբերական ապրանքների մեծածախ գները միջին հաշվով տարեկան բարձրացել էին 8 տոկոսով, իսկ մի շարք ապրանքներինը՝ է՛լ ավելի։ Մշակող արդյունաբերության մեջ արտադրանքի ծավալը անփոփոխ գներով աճել էր գրեթե 3 տոկոսով, գլխավորապես ռազմական և նրա հետ կապված ճյուղերի հաշվին, մինչդեռ այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են՝ տեքստիլ արդյունաբերությունը, բնակարանային շինարարությունը և մարդատար ավտոմեքենաների արտադրությունը, արտադրանքի ծավալի կրճատումն ընդունել էր լուրջ չափեր։

Ճգնաժամային երևույթներից զերծ չմնաց նաև գյուղատնտեսությունը՝ աճեցին ապրանքային «ավելցուկները», իսկ ցանքատարածությունները կրճատվեցին 4,5 մլն հեկտարով։ Նկատվում է արդյունաբերական ապրանքների սպառման պրոբլեմի հետագա սրում։



Խոսելով ԱՄՆ-ի էկոնոմիկայի առաջիկա հեռանկարների մասին, Ե. Վարգան գրում է. «...անխուսափելի է մոտակա տարիներին արդյունաբերական արտադրանքի հետագա անկումը 1949 և 1954 թթ. համեմատաբար ոչ խոր անկման փոխարեն։ Դա կարելի է կանխատեսել ոչ միայն վերջին 130 տարիների պատմական փորձի հիման վրա, ոչ միայն այն բանի հիման վրա, որ հետպատերազմյան տարիների առանձնապես ձեռնտու պայմաններն արդեն սպառել են իրենց, այլև այն պատճառով, որ նույնիսկ ընթացիկ տասնամյակում ոչ բոլոր արտադրված ապրանքներն են սպառվել։ Ապրանքային պաշարները ԱՄՆ-ի արդյունաբերության և առևտրի մեջ աճել են 31 մլրդ դոլարից՝ 1945 թ. վերջին, մինչև 87 մլրդ դոլարի 1956 թվականի վերջին։ Այդ նույն ժամանակ ավելացել է սպառողական վարկի գումարը՝ 6 մլրդ դոլարից հասնելով ավելի քան 40 մլրդ դոլարի։ Այսպիսով, մոտ 100 մլն դոլարի ապրանք մնացել է չվաճառված, կամ էլ վաճառվել է սպառողներին վարկով, ապագա եկամուտների հաշվին» («Коммунист», № 10, М., 1957, стр. 109)։

Հենց այս տարվա սկզբից ամերիկյան էկոնոմիկան արդեն լուրջ դժվարությունների առաջ է կանգնած։ Արդյունաբերական արտադրանքի զգալի անկումը այս տարվա հունվարից ո՛չ միայն ալեկոծել է բուրժուական մամուլը, այլև լուրջ անհանգստություն է առաջացրել կառավարական շրջաններում։ Այդ մասին են վկայում «Նյու-Յորք Թայմս» և «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» և այլ ազդեցիկ թերթերի բարձրացրած տագնապը, ինչպես նաև պրեզիդենտ Էյզենհաուերի ելույթը հեռուստատեսով՝ փետրվարի 13-ին։ «Նյուս-Ուիկ» ամսագրի տվյալներով ազգային համախառն արտադրանքը 1957 թվականի վերջին եռամսյակի ընթացքում պակասել է շուրջ 4 մլրդ դոլարով, որը մի եռամսյակից մյուսը տեղի ունեցած ամենալուրջ անկումն է 1953 թվականից ի վեր։ Մշակող արդյունաբերության մեջ արտադրական հզորությունների օգտագործումը իջավ մինչև 82 տոկոսի։ Նավթարդյունաբերողներն արտադրանքը կրճատեցին 5 տոկոսով, սկսեց կրճատվել տնային գործածության իրերի, կենցաղային սպասարկման մեքենաների թողարկումը, ինչպես նաև բնակարանային շինարարությունը։ Կրճատվեց նաև քարածխի հանույթը, գունավոր մետաղների արտադրությունը և երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը («Ունիտա», 7. II. 1958 թ)։

Այս տարվա հունվարին արդյունաբերական արտադրանքի ինդեքսը կազմում էր 133 (1947—1949—100)՝ տասհինգ ամիս առաջ եղած 147-ի փոխարեն։ Նույն ամսին պողպատաձուլական ձեռնարկություններն աշխատում էին իրենց արտադրական հզորության 55 տոկոսի չափով և արտադրեցին 6 մլն տոննա պողպատ, 1957 թվականի հունվարին արտադրված 11 մլն՝ տոննայի փոխարեն։ Ավտոմեքենաների արտադրությունը 1/4-ով իջել է 1957 թվականի հունվարի մակարդակից։ Անկումն ընդգրկել է արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերը։ Արդյունաբերությանը տրվող պատվերները պակասել են 900 մլն դոլարով։

Իր բազմաթիվ էական մոմենտներով ներկայիս անկումը հասել կամ անցել է 1948—1949 թթ. անկումից։ Արդյունաբերական արտադրանքի կրճատումը կազմում է շուրջ 10 տոկոս (1948—49 թթ. 10,5 տոկոս), ապրանքների պաշարների նվազումը ավելի դանդաղ է տեղի ունենում և արտադրության անկման սկզբի (1957 թ. դեկտեմբեր) և ապրանքների պաշարների ծավալի նվազման միջև (1957 թ. սեպտեմբեր) ընկած ժամանակաշրջանը պարզապես

ավելի երկարատև է, քան երկրորդ համաշխարհային պատերազմից հետո եղած նախորդ երկու անկումների ժամանակ։

Ֆրանսիական կոմունիստ տնտեսագետ Ժան Դեսսոն գրում է, որ հակառակ ամերիկյան տնտեսագետների սպասումներին, որոնք արտադրության չափավոր, «հսկողության ենթարկված» կրճատում էին սպասում, ինչպիսին տեղի ունեցավ 1953—54 թթ., տնտեսական դժվարությունները երևան եկան ավելի շուտ, անկումը տեղի ունեցավ ավելի ուժեղ, ավելի սուր։ «Հսկողության ենթարկված» կրճատման փոխարեն, շարունակում է Դեսսոն, հանդես եկան ցիկլային ընդհանուր ճգնաժամի երևույթներ, որոնք ԱՄՆ-ում և արևմտյան աշխարհում շատ ավելի խոր անհանգստություն են ստեղծում ամերիկյան տնտեսության մոտակա ապագայի նկատմամբ, քան 1948—49 և 1953—54 թթ. տատանումները։ Արևմուտքում այժմ սկսել են շատ ավելի հաճախ և բացեիբաց խոսել գերարտադրության մասին ԱՄՆ-ում [1]։

Արտադրության կրճատման այս տեմպերի պայմաններում սկսեց կատաստրոֆիկ կերպով աճել գործազրկությունը։ «Ունիտա» թերթը հենվելով ամերիկյան պաշտոնական տվյալների վրա հաղորդում էր, որ արդեն 1957 թվականի դեկտեմբերի վերջին գործազուրկների թիվը երկրում հասնում էր 3,7 մլն մարդու։ Հունվարին ԱՄՆ-ում արդեն կար 4 մլն 484 հազար գործազուրկ։ Միայն մեկ ամսվա ընթացքում՝ 1957 թվականի դեկտեմբերի կեսից մինչև 1958 թվականի հունվարի կեսերը, գործազուրկների թիվն աճեց 1 մլն 120 հազար մարդով։ Գործազրկության այսպիսի արագ աճ ԱՄՆ-ում չի եղել վերջին 2 տասնամյակների ընթացքում։ Ապրիլի սկզբին ԱՄՆ-ում արդեն 6 միլիոնից ավելի գործազուրկ կար։ Սակայն չպետք է մոռանալ, որ այս թվերը չեն արտահայտում իրերի իսկական դրությունը, որովհետև ԱՄՆ-ի պաշտոնական վիճակագրությունը հաշվառման է ենթարկում միայն այն գործազուրկներին, որոնք նպաստ են ստանում։ Այդ թիվը չի ընդգրկում նաև այն բանվորներին, որոնք ոչ լրիվ շաբաթ են աշխատում։ Բացի այդ, ակնհայտորեն նվազեցված տվյալներով, ԱՄՆ-ում կա 2 մլն մասնակի գործազուրկ, որը ողջ հետպատերազմյան ժամանակաշրջանի համար ռեկորդային թիվ է։

Այս բոլորին պետք է ավելացնել նաև միջազգային քաղաքական կարգի դժվարությունները, հրթիռային տեխնիկայի գործում ՍՍՌՄ-ից ետ մնալը, կրթական սիստեմի անբավարար վիճակը, որոնք հարվածում են ԱՄՆ-ի միջազգային հեղինակությանը և հանդիսանում են հասարակական մտքի ալեկոծման պատճառ։ Այս տեսակետից հետաքրքիր են ամերիկյան մի շարք թերթերի բնորոշումները։ Ժուռնալիստ Ստյուարտ Օլսոպը ստիպված է խոսել «ամենավատ դժվարությունների մասին, որոնք երբևիցե իմացել են Միացյալ Նահանգները», «Քրիստիան Սայնս մոնիտոր» թերթը պահանջում է «խղճի քննություն», «Սենտ Լուիս փոստ Դիսպատչը» գրում է «ղեկավարության ճգնաժամի մասին», իսկ սենատոր Ֆուլբրայթը հայտարարում է. «Մեր վերջին տարիների արտաքին քաղաքականությունը եղել է դեֆեկտավոր և անմիտ»։ «Յունայտեդ Ստեյտս Նյուս էնդ Ուորլդ Ռիպորտ» թերթը 1957 թվականը համարում է հարվածների տարի ԱՄՆ-ի համար։ «Արտադրության կրճատումը հարված էր։ Ռուսական Սպուտնիկը հարված էր։ Պատերազմի երկյուղները

[1] „Democratic Nouvelle", № 3, Mars, 1958, p. 156.



հարված էին։ Ամերիկյան հրթիռների խորտակումը հարված էր»։ Անգլիական «Էկոնոմիստ» շաբաթաթերթը գրում էր. «շատ քիչ ազգեր են տեսել, որ իրենց ֆունդամենտալ համոզմունքները փշրվեին այնպիսի արագությամբ, ինչպես ամերիկացիները տեսան այդ՝ անցած շաբաթների ընթացքում»։

Այսպիսին են փաստերը Միացյալ Նահանգների մասին։
Այսպիսին են փաստերը Միացյալ Նահանգների մասին։
Ինչ վերաբերում է սովետական էկոնոմիկային, ապա նրա գոյության
40 տարիների ընթացքում արդյունաբերական արտադրանքն աճել է 46 անգամ։
Այդ ժամանակամիջոցում արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին
աճը կազմել է 10 տոկոս, իսկ խոշոր արդյունաբերության մեջ՝ 11,4
տոկոս [1]։ Եվ դա այն դեպքում, երբ Սովետական Միությունն իր գոյության
40 տարիներից 18 տարին կորցրել է քաղաքացիական և Հայրենական պատե-
րազմների և տնտեսության հետպատերազմյան վերականգնման վրա, մինչդեռ
ԱՄՆ-ը ունեցել են ո՛չ միայն հարուստ բնական ռեսուրսներ ու կլիմայական
պայմաններ, այլև համաշխարհային երկու պատերազմների ժամանակ չեն
ենթարկվել մինչև իսկ օդային հարձակումների և իրենց նպաստավոր դիրքի
շնորհիվ այդ պատերազմներն օգտագործել են հարստանալու համար։

Զնայած իմպերիալիստական տերությունների ոտնձգություններին ու
դավերին, սոցիալիստական արտադրաեղանակը պատմական կարճ ժամանա-
կամիջոցում լիովին ապացուցեց իր առավելությունները կապիտալիստական
արտադրաեղանակի նկատմամբ և ցույց տվեց, որ կարող է շատ ավելի արագ
զարգացնել հասարակական արտադրողական ուժերը, քան նախորդ բոլոր
հասարակարգերը։

Անցել է 40 տարի, և այժմ Սովետական Միությունը ո՛չ միայն ամբողջ
արդյունաբերական արտադրանքի ծավալով, այլև գրեթե բոլոր կարևորագույն
արտադրանքների գծով գրավում է երկրորդ տեղը աշխարհում (ԱՄՆ-ից հետո)
և առաջին տեղը՝ Եվրոպայում։ Մինչդեռ 30 տարի առաջ՝ 1928 թվականին,
երբ նոր էր սկսվում առաջին հնգամյա պլանի իրագործումը, ՍՍՌՄ-ը գրա-
վում էր հինգերորդ տեղը աշխարհում և չորրորդ տեղը՝ Եվրոպայում։

Սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ-ում ստեղծվել է զարգա-
ցած, խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն, որն իր ցանքատարածու-
թյուններով աշխարհում գրավում է առաջին տեղը։ Միայն երեք տարվա
(1954—1956 թթ.) ընթացքում յուրացված խամ և խոպան հողերը կազմում են
35,5 մլն հեկտար, որն ավելի շատ է, քան վերջին տարիներին Անգլիայի,
Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի ցանքատարածությունները միասին
վերցրած և ավելի է, քան աշխարհի ցորեն արտադրող խոշորագույն երկրնե-
րի՝ ԱՄՆ-ի, Կանադայի և Արգենտինայի ցորենի ցանքատարածությունները։
ՍՍՌՄ-ը ցորենի արտադրությամբ աշխարհում գրավում է առաջին տեղը։

Պարտիայի և կառավարության մի շարք կարևորագույն որոշումների կեն-
սագործման շնորհիվ զգալի հաջողությունների է հասել անասնապահությունը։
Անասունների գլխաքանակի աճի հետ մեկտեղ ավելացել է մթերատվությունը։
Ներկայումս կաթի արտադրությունը մեր երկրում հասել է ԱՄՆ-ում կաթի
արտադրության մոտավորապես 95 տոկոսին։ Գործարանային յուղի արտա-
դրության ծավալը գրեթե նույնքան է, որքան ԱՄՆ-ում, իսկ յուղի ընդհանուր

[1] Достижение Советской власти за сорок лет в цифрах. Стат. сборник. Госстатиздат, М., 1957, стр. 18.

արտադրությամբ, այսինքն՝ ներառյալ տնային արտադրությունը, ՍՍՌՄ-ը անցյալ տարի արդեն որոշ չափով գերազանցեց ԱՄՆ-ին։

Այսպիսով, Սովետական ժողովուրդն ընդհուպ մոտենում է Կոմունիստական պարտիայի առաջադրած խնդրի կատարմանը՝ մոտակա տարիներին մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու մասին։

Սովետական ժողովուրդը հաջողությամբ իրագործում է նաև առաջիկա 15 տարում ԱՄՆ-ի արդյունաբերության արդի մակարդակը ձեռք բերելու առաջադրանքը, որը կարևոր և վճռական էտապ կհանդիսանա ՍՍՌՄ տնտեսական հիմնական խնդրի իրագործման ուղղությամբ։

Չնայած բուրժուական և, հատկապես, ամերիկյան տնտեսագետների պեսիմիստական բազմաթիվ կանխատեսություններին, պատմական փորձը և վերջին ժամանակներս գիտության ու տեխնիկայի նորագույն բնագավառներում Սովետական Միության ձեռք բերած նվաճումները անհերքելիորեն ապացուցում են, որ սովետական ժողովրդի համար մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով կապիտալիստական բարձր զարգացած երկրներին հասնելն ու անցնելը անլուծելի խնդիր չէ։ Դրա առաջին գրավականը սոցիալիստական պլանային տնտեսության և, հատկապես, արտադրության միջոցների արտադրության զարգացման արագ տեմպերն են ինչպես ՍՍՌՄ-ում, այնպես էլ ողջ սոցիալիստական լագերում։

Հետևյալ թվերը պարզ կերպով ցույց են տալիս, որ գնալով մեծանում է տարբերությունը սոցիալիստական երկրների և կապիտալիստական երկրների արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերի միջև։

Արդյունաբերական արտադրանքի աճի դինամիկան սոցիալիզմի և կապիտալիզմի երկրներում.

(Տոկոսներով 1950 թ. նկատմամբ)[1]

| | 1950 թ. | 1951 թ. | 1952 թ. | 1953 թ. | 1954 թ. | 1955 թ. |
|---|---|---|---|---|---|---|
| Սոցիալիզմի երկրներ | 100 | 120 | 138 | 158 | 177 | 195 |
| Կապիտալիզմի երկրներ | 100 | 109 | 111 | 119 | 119 | 131 |

Ազգային եկամուտը, ինչպես ամբողջությամբ վերցրած, այնպես էլ մեկ շնչի հաշվով Սովետական Միությունում աճել է անհամեմատ ավելի արագ, քան կապիտալիստական երկրներում և այդ թվում ԱՄՆ-ում։ Այսպես, եթե 1956 թվականին ՍՍՌՄ-ում ազգային եկամուտը եղել է մոտավորապես 17 անգամ ավելի, քան 1913 թվականին ՍՍՌՄ-ի այժմյան սահմաններում ընդգրկվող տերիտորիայի վրա, ապա ԱՄՆ-ում այն աճել է 3,24 անգամ, Անգլիայում այն կազմել է 1913 թվականի մակարդակի միայն 188 տոկոսը, Ֆրանսիայում՝ 176 տոկոսը։ Ինչ վերաբերում է մեկ շնչին ընկնող ազգային եկամտին, ապա նույն ժամանակամիջոցում այն Սովետական Միությունում աճել է ավելի քան 13 անգամ, մինչդեռ ԱՄՆ-ում՝ 2 անգամից էլ պակաս, Անգլիայում և Ֆրանսիայում՝ 1,6 անգամից մի փոքր ավելի։

Սոցիալիստական արդյունաբերության բուռն զարգացման շնորհիվ գնալով կրճատվում է այն տարբերությունը, որը կա մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակի միջև ՍՍՌՄ-ում և ԱՄՆ-ում (չպետք է մոռանալ, որ կապիտալիստական երկրներում մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով դեռևս չի բնորոշվում մեկ շնչի կողմից սպառման մակարդակը և, հետևապես, կենսամակարդակը, որովհետև հասարակության բոլոր անդամները արտադրանքից հավասարապես չեն օգտվում ու բացի այդ, արտադրանքի մի զգալի մասը արտահանվում է)։

[1] „Страны социализма и капитализма в цифрах", стр. 6. табл. 7.



Հետևյալ թվերը որոշակի պատկերացում են տալիս այդ մասին։ («Коммунист», № 3, февраль, 1958, г., стр. 98):

| Արտադրանքի անվանումը | Չափի միավոր | Մեկ շնչին ընկնող արտադրանքը 1913 թ. | | Մեկ շնչին ընկնող արտադրանքը 1956 թ. | | Քանի անգամով մեկ շնչին ընկնող արտադրանքը ՍՍՌՄ-ում պակաս է (—) կամ ավելի (+), քան ԱՄՆ-ում | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | | Ռուսաստանում | ԱՄՆ-ում | ՍՍՌՄ-ում | ԱՄՆ-ում | 1913 թ. | 1956 թ. |
| Չուգուն | կգ. | 28,0 | 324,0 | 178,0 | 410,0 | —12,0 | —2,3 |
| Պողպատ | » | 29,0 | 327,0 | 242,0 | 622,0 | —11,0 | —2,6 |
| Գլոկատ | » | 25,0 | 259,0 | 161,0 | 482,0 | —11,0 | —3,0 |
| Նավթ (առանց գազի) | » | 56,0 | 350,0 | 417,0 | 2104,0 | —6,3 | —5,0 |
| Ածուխ (քարածխի վերածած) | » | 214,0 | 5316,0 | 1830,0 | 2847,0 | —25,0 | —1,6 |
| Էլեկտրաէներգիա | կվտժ | 13,6 | 260,0 | 894,0 | 4067,0 | —19,0 | —4,5 |
| Ցեմենտ | կգ. | 12,2 | 163,0 | 124,0 | 321,0 | —13,0 | —2,6 |
| Աղյուս | հատ | 23,0 | 72,0 | 106,5 | 43,6 | —3,1 | +2,4 |
| Թուղթ (առանց ստվարաթղթի) | կգ. | 2,9 | 34,0 | 9,9 | 83,2 | —12,0 | —8,4 |
| Բամբակյա կտորեղեն (խամ) | մ2 | 13,7 | 57,5 | 21,3 | 56,1 | —4,2 | —2,6 |
| Շաքարավազ | կգ. | 9,0 | 9,5 | 21,7 | 12,8 | —1,1 | +1,7 |

Խոշոր հաջողությունների հասավ Սովետական ժողովուրդը 1957 թվականին, արդյունաբերության և շինարարության կառավարման նոր պայմաններում։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, աճեց 10 տոկոսով, այդ թվում «Ա» խմբինը, նախնական տվյալներով, 11 տոկոսով, «Բ» խմբինը՝ ավելի քան 8 տոկոսով։ Ժողտնտխորհների արդյունաբերական ձեռնարկությունները համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարեցին 104 տոկոսով։ 1957 թվականին շարք մտան 800 նոր, խոշոր պետական արդյունաբերական ձեռնարկություններ։

1957 թվականին շարունակվում էր ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական մակարդակի հետագա բարելավումը, էլեկտրիֆիկացիան, կոմպլեքսային մեքենայացումը և ավտոմատացումը, առաջավոր տեխնոլոգիայի ներդրումը և ձեռնարկությունների սարքավորումների մոդեռնիզացիան։ Մեքենաշինական գործարանները, գիտա-հետազոտական ինստիտուտները և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունները մշակել և պատրաստել են մեքենաների, մեխանիզմների, ապարատների և այլ սարքավորումների ավելի քան 1.500 նոր կարևորագույն տեսակներ։ Արդյունաբերական ձեռնարկությունները յուրացրել են ավելի քան 350 անուն նոր մեքենաներ, սարքավորումներ, գործիքներ և նյութեր։ Ավելի քան մեկ միլիոն գյուտարարներ և ռացիոնալիզատորներ մեկ տարում մտցրին 2 միլիոնից ավելի առաջարկություններ։ Ժողովրդական տնտեսության մեջ ներդրվեց ավելի

քան մեկ և կես միլիոն գյուտ, տեխնիկական կատարելագործության ռացիոնալիզատորական առաջարկություն։ Այդ առաջարկությունների ներդրումից ստացված տնտեսումը կազմել է 7 մլրդ. ռուբլի։

Սովետական Միության ազգային եկամտի աճի հետ միասին բարձրանում է նաև աշխատավորների կենսամակարդակը, ավելանում են նրանց կուլտուրական պահանջները բավարարելու նպատակով կատարվող հատկացումները։

Սովետական գիտության, տեխնիկայի, արդյունաբերության ինժեներատեխնիկական կադրերի խոշորագույն հաղթանակը հանդիսացավ երկրի առաջին արբանյակների, միջմայրցամաքային առաջին բալիստիկ հրթիռի ստեղծումը, աշխարհում ամենահզոր սինխրոֆազոտրոնի՝ ատոմային մասնիկների արագացուցիչի կառուցումը։

Այժմ մեր թշնամիներն անգամ չեն կարող աչք փակել այս հաջողությունների առջև։ Եթե Հայրենական Մեծ պատերազմում Սովետական ժողովրդի հաղթանակը առաջին լուրջ հարվածը հասցրեց մեր երկրի, նրա էկոնոմիկայի կենսունակության և հզորության աստիճանի մասին բուրժուական «տեսակետներին» և շրջադարձային փոփոխություններ առաջացրեց ՍՍՌՄ-ի նկատմամբ արտասահմանում եղած տրադիցիոն վերաբերմունքի մեջ, ապա հրթիռային տեխնիկայի ասպարեզում Սովետական Միության 1957 թվականի հաջողությունները եկան վերջնականապես ջախջախելու բուրժուական սկեպտիկների և ատելությունից կուրացած ու ողջախոհությունը կորցրած իմպերիալիստական շառլատանների նիհիլիստական տեսակետները։ Այդ հաջողություններն ստիպեցին սթափվել և զգաստանալ նրանց, ովքեր իրենց սնում էին «մեկ հարվածով» միջազգային սոցիալիզմը և նրա միջնաբերդը՝ Սովետական Միությունը հողմացրիվ անելու ավանտյուրիստական հույսերով։

Սովետական Միության այդ հաջողությունները կապիտալիստական շատ պետական գործիչների և քաղաքագետների ստիպեցին լուրջ կերպով խորհել ժամանակակից միջազգային իրադրության կարևորագույն խնդիրների մասին։ Այսպես, ամերիկյան ոչ անհայտ տեսաբան, կոմունիզմի թշնամիներից մեկը՝ Ուոլտեր Լիպմանը, «Նյու-Յորք Հերալդ-տրիբյուն» թերթում ստիպված էր խոստովանել, որ ԱՄՆ-ի «ռազմական գերազանցության օրերը կարճ եղան և նրանք վերջացել են»։

Այսպիսին են փաստերը երկու սիստեմների տնտեսական մրցության վերաբերյալ։ Այդ փաստերը ցույց են տալիս, որ ժամանակն ամբողջապես աշխատում է սոցիալիստական սիստեմի օգտին, որ այդ մրցակցության մեջ սոցիալիզմի հաղթանակը և կապիտալիզմի պարտությունը հավասարապես անխուսափելի են։

---

# ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ԱՄԵՆԱՄՍՅԱ ԱՎԱՆՍԱՎՈՐՄԱՆ ԱՌԹԻՎ

Հ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Վերջին տարիների ընթացքում Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մի շարք կարևոր միջոցառումներ իրականացրին սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման և կոլտնտեսականների ստեղծագործական նախաձեռնության ու նրանց նյութական շահագրգռվածության բարձրացման ուղղությամբ։ Այդ միջոցառումների սիստեմում կարևորագույն տեղ է գրավում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թ. մարտի 6-ի որոշումը, ուր խոսվում է նաև կոլտնտեսականների ավանսավորման և նրանց աշխատանքի լրացուցիչ վարձատրության մասին։ Այդ փաստաթղթի մեջ բացահայտված է կոլտնտեսականների աշխատանքի վարձատրման ձևերի կատարելագործման նշանակությունը՝ կոլտնտեսային արտադրության բոլոր ճյուղերի վերելքի ապահովման գործում։

Ինչպես հայտնի է, կոլտնտեսություններում աշխատանքային ծախսումների ժամանակը չի համընկնում նրա վարձատրման ժամանակի հետ։ Կոլտնտեսականներն աշխատում են ամբողջ տարվա ընթացքում, սակայն, շատ հաճախ, նրանց աշխատանքը վարձատրվում է միայն տարեվերջում։ Դա մեծ մասամբ կախված է գյուղատնտեսական արտադրության բնույթից։ Կոլտնտեսությունն իր կոլտնտեսականներին այս կամ այն կարգով կարող է վարձատրել, երբ ստանում է բնամթերային կամ դրամական եկամուտներ։ Կոլտնտեսություններում աշխօրերի դիմաց արդյունքների բաշխումը սովորաբար կատարվում էր տարին եզրափակելու ժամանակ։ Արդյունքների բաշխման այդ ձևը, որը դեռևս պահպանվում է շատ կոլտնտեսություններում, բավարար չափով չի նպաստում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման պահանջներին։

Կոլտնտեսային արտադրության զարգացման շահերին համապատասխանորեն ծնվեց ավանսավորման կարգով եկամուտների բաշխման յուրահատուկ ձև, ըստ որի կոլտնտեսության եկամուտները բաշխվում են ոչ միայն տարվա վերջում, այլև տարվա ընթացքում։

Կոլտնտեսություններում ավանսավորումը նոր երևույթ չէ, սակայն այն անընդհատ փոփոխման ու կատարելագործման է ենթարկվել կոլտնտեսային արտադրության զարգացմանը զուգընթաց։ Նախկինում ավանսավորումը միասնական սիստեմով չէր կատարվում։ Միևնույն կոլտնտեսության տարբեր ճյուղերում ու տարբեր կուլտուրաների մշակությունից կոլտնտեսականների վաստակած աշխօրերին նկատելի տարբերությամբ էին ավանսներ տրվում։

Ըստ որում անասնաբուծության բնագավառում աշխատող կոլտնտեսականների ավանսավորումը շատ ցածր էր։ ՍՄԿԴ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թվականի մարտի 6-ի որոշմամբ հիմք դրվեց կոլտնտեսականների ավանսավորման միասնական սիստեմին։ Կոլտնտեսություններին խորհուրդ է տրված կոլտնտեսականներին ավանսներ տալ հանրային տնտեսության բոլոր ճյուղերում ամսվա ընթացքում վաստակած ամբողջ աշխօրերի դիմաց։ Պարտիայի և կառավարության որոշման մեջ ասված է, որ կոլտնտեսությունները դրամական ավանսավորումն իրագործելու համար կարող են առանձնացնել հանրային տնտեսության բոլոր ճյուղերից ստացած դրամական եկամուտների առնվազն 25 տոկոսը, իսկ կոնտրակտացիոն կարգով և գյուղատնտեսական մթերքների պետական գնումների ու պարտադիր մթերումների դիմաց ստացած դրամական ավանսների մոտավորապես 50 տոկոսը։ Կոլտնտեսություններում ավանսավորման գործը կարգավորելու նպատակով պարտիան և կառավարությունը մթերող կազմակերպություններին պարտավորեցրին սկսած 1956 թվականից պարտադիր կարգով մթերվող հացահատիկի, արևածաղկի, կարտոֆիլի, բանջարեղենի, մսի և ձիթատու մի շարք կուլտուրաների արժեքի 50 տոկոսը հատկացնել կոլտնտեսականներին ավանսավորելու համար։

ՍՍՌՄ Պետական բանկին հանձնարարված է կոլտնտեսությունների հաշվին մուտքագրվող բոլոր եկամուտների 25 տոկոսը և կոնտրակտացիայի, կազմակերպված գնումների ու պարտադիր մթերումների դիմաց ստացվող դրամական միջոցների 50 տոկոսը կոլտնտեսությունների պահանջով փոխանցել հատուկ ընթացիկ հաշիվ, որտեղից դրամը կոլտնտեսության վարչությունը կարող է ծախսել միայն կոլտնտեսականների աշխօրերին ավանսներ տալու նպատակով։ Բացի այդ, Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման մեջ ասված է, որ կոլտնտեսությունները կապիտալ ներդրումների գծով երկարատև վարկերը առաջին հերթին մարում են ընդհանուր դրամական եկամուտներից՝ վճարումները կատարելով անբաժանելի ֆոնդերի հաշվին։ Կոլտնտեսություններին խորհուրդ է տրված, ընդհանուր ժողովի որոշմամբ, անասնաբուծական ու այլ շենքերի շինարարության վրա ծախսված աշխօրերի վարձատրությունը կատարել անբաժանելի դրամական ֆոնդերի հաշվին՝ հատկացված եկամուտների ու ծախսերի նախահաշվին համապատասխան։

Պետության ու կոլտնտեսությունների միջև արտադրական-տնտեսական փոխհարաբերությունների կատարելագործումը նպաստում է դրամական միջոցների գոյացմանը, որի նպատակահարմար օգտագործման շնորհիվ կոլտնտեսականների աշխօրերի ամենամսյա ավանսավորման հնարավորություն է ստեղծվում։ Վերջին տարիների ընթացքում կառավարության կողմից գյուղատնտեսական հարկի նորմաների կրճատման, պարտադիր մթերումների ու կազմակերպված գնումների գների բարձրացման, գյուղատնտեսական հարկի մնացած պարտքերի զիջման շնորհիվ հսկայական չափերով աճել է կոլտնտեսականներին ավանսավորելու հնարավորությունը։

Առաջավոր կոլտնտեսությունները, հենվելով իրենց ռեալ հնարավորությունների և ավանսավորման առաջավոր փորձի վրա, մշակել են ամենամսյա ավանսավորման կայուն սիստեմ։ Նրանք այնպես են վարում իրենց դրամական տնտեսությունը, որ դրամական միջոցները ճիշտ ժամանակին և պլանաչափորեն կենտրոնանում են դրամարկղում, որով հնարավոր է դառնում կոլտնտեսականների ավանսավորումը։ Այս տեսակետից ուշադրության է արժանի



այն կոլտնտեսությունների փորձը, որոնք յուրաքանչյուր ամսվա համար կազ-
մում են եկամուտների և ծախսերի նախահաշիվ, որտեղ ցույց է տրվում, թե
տնտեսության ո՛ր ճյուղից որքան եկամուտ է ստացվելու և այն ինչ նպա-
տակների համար է ծախսվելու։ Այդպիսի կոլտնտեսություններում ամենամ-
սյա ավանսավորումը դիտվում է որպես տնտեսության պլանային վարման ան-
միջական բաղադրամասը։ Նրանք նախապես որոշում են ինչպես համախառն
արտադրանքի, այնպես էլ աշխօրերի հասանելիք եկամուտների չափը ոչ
միայն տարվա համար, այլև յուրաքանչյուր ամսվա համար։

Կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման լավագույն օրինակ է
հանդիսանում Ամուրի մարզի Տամբովի շրջանի «Կրասնի Օրդեն» կոլտնտե-
սության փորձը։ Արտելի վարչությունը խորապես վերլուծելով 1952—1954
թվականների ընթացքում իր տնտեսության եկամուտներն ու նրանց բաշխու-
մը, պարզեց, որ դրամով և բնամթերքով յուրաքանչյուր աշխօրին տրվել է
միջին հաշվով 10 ռուբլի 60 կոպեկ։ Չնայած աշխատանքի այդպիսի բարձր
վարձատրմանը, կոլտնտեսությունն աշխատանքի կարգապահության և կոլ-
տնտեսականների աշխատանքային ակտիվության բարձրացման գործում ան-
հրաժեշտ արդյունքի չէր հասնում։ Կոլտնտեսության ղեկավարությունը հաշվի
առնելով օրական աշխատավարձի չափը հարևան սովետական տնտեսություն-
նում, որը կազմում է 9 ռուբլի 50 կոպեկ, նախատեսեց կոլտնտեսականների
աշխօրերի վարձատրությունը սահմանել դրան հավասար։ Կոլտնտեսության
վարչությունն ու կոլտնտեսականների ընդհանուր ժողովն անհրաժեշտ գտան
այդ մակարդակը առայժմ չգերազանցել։ 1956 թվականին կոլտնտեսու-
թյունն աշխօրերին սիստեմատիկաբար՝ ամենամսյա ավանսավորման ձևով,
տվեց 6 ռ. 15 կոպ. դրամ և 3 ռ. 35 կոպ. մթերքներ (պետական գնման գնե-
րով)։ Կոլտնտեսությունը կարող էր և աշխօրերին ավելի բարձր վարձատրու-
թյուն տալ, սակայն անհրաժեշտ էր ամենամսյա սիստեմի կայուն հիմք դնել
և հաջորդ տարիների համար։ Չնայած այն բանին, որ աշխատանքի վարձա-
տրման նոր սիստեմին անցնելու պատճառով, մեկ աշխօրի հաշվով, ժամա-
նակավորապես կրճատվեց կոլտնտեսականների հասանելիքը, բայց և այնպես
աշխատանքի վարձատրության նոր սիստեմը տվեց իր դրական արդյունքները։
Կոլտնտեսականներն սկսեցին ակտիվորեն մասնակցել բոլոր աշխատանքնե-
րին, ձգտելով մշտական աշխատանքի ընդգրկվել։ Դրա հետ միասին աճեցին
կոլտնտեսության համախառն արտադրանքը, դրամական և բնամթերային
եկամուտները, որոնք հնարավորություն տվին աշխօրերի դիմաց ավելի շատ
եկամուտներ բաշխելու։ Կոլտնտեսության մեջ աշխատող կոլտնտեսականների
թիվը 1953 թվականի 408 մարդուց 1956 թվականին հասավ 624 մարդու։ Եթե
1953 թվականին յուրաքանչյուր կոլտնտեսական միջին հաշվով վաստակել էր
379 աշխօր, ապա 1956 թվականին այն հասավ 438-ի։ Եթե 1953 թվականին
յուրաքանչյուր կոլտնտեսական իր վաստակած աշխօրերի դիմաց միջին հաշ-
վով ստացել էր 3790 ռուբլու եկամուտ, ապա 1956 թվականին ստացավ 4151
ռուբլի։ Կոլտնտեսականների աշխօրերին հասանելիք դրամական եկամուտնե-
րի հաշվին շատ հաճախ վաճառվում են՝ ձու, միս, կաթ, սեր և այլ մթերք-
ներ։ «Կրասնի Օրդեն» կոլտնտեսությունն առանց խախտելու ամենամսյա
աշխատանքի վարձատրությունը, տարեվերջում բավականին լրացուցիչ եկա-
մուտներ ունենալով, աշխօրերին տալիս է նաև լրացուցիչ վարձատրություն
և զգալի միջոցներ է ներդնում արտադրության ընդլայնման համար։

Կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման օրինակներ կարելի է բերել նաև այլ կոլտնտեսություններից, որոնց փորձն ուսանելի է։

Վերջին երկու տարվա ընթացքում կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման ուղղությամբ լուրջ աշխատանք է կատարվել նաև մեր ռեսպուբլիկայի մի շարք առաջավոր կոլտնտեսություններում։ Նոյեմբերյանի շրջանի Ղալաչա, Մեղրու շրջանի Մեղրի, Շահումյանի շրջանի Ներքին Չարբախ գյուղերի, Էջմիածնի Լենինի անվան և շատ այլ կոլտնտեսություններում գնալով ավելի բարձր հիմքերի վրա է դրվում կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման գործը։

Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունում ամենամսյա ավանսավորման պրակտիկան լավագույն օրինակ է հանդիսանում կոլտնտեսականների աշխատանքների վարձատրության նոր սիստեմի կիրառման գործում։ Կոլտնտեսությունը բազմակողմանիորեն զարգացնելով հանրային տնտեսության բոլոր ճյուղերը, անընդհատ բարձրացնելով նրանց եկամտաբերությունը, տարեցտարի ամրապնդում է կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա վարձատրության սիստեմը։ Կոլտնտեսությունը 1956 թվականի 5,806,460 ռուբլի և անցյալ տարվա 7,170,045 ռուբլի դրամական եկամտի մոտ 4/5 մասը հատկացրել է կոլտնտեսականների աշխօրերի վարձատրմանը։ Աշխօրերի վարձատրությունն ավելի է բարձրացել 1957 թվականին։ Այսպես, 1957 թվականին կոլտնտեսությունն իր դրամական եկամուտներից աշխօրերին բաշխել է 5,094,915 ռուբլի։ Այդ գումարից մոտ 4 միլիոն ռուբլին բաշխվել է ամենամսյա ավանսավորման կարգով։ Մինչև հուլիս ամիսը ավանսավորման կարգով յուրաքանչյուր աշխօրին տրվել է 10 ռուբլի, իսկ հուլիս ամսից սկսած ավանսավորման չափերն աճել են։ Հուլիս և օգոստոս ամսվա յուրաքանչյուր աշխօրին տրվել է 20-ական ռուբլի, իսկ նախորդ ամիսների աշխօրերին՝ լրացուցիչ կարգով տրվել է ևս 10-ական ռուբլի։ Սեպտեմբերին ընթացիկ ավանսավորումը կատարվել է 30 ռուբլու չափով, իսկ նախորդ ամիսների աշխօրերին՝ 10-ական ռուբլով։ Հոկտեմբեր ամսում ընթացիկ ավանսավորման չափը հասել է 40 ռուբլու, իսկ նախորդ ամիսներինը՝ դարձյալ 10 ռուբլու։ Նոյեմբեր ամսում ավանսավորման չափը մնացել է նույնը, իսկ դեկտեմբերին այն կազմել է 45 ռուբլի, ընդ որում 5-ական ռուբլով էլ հատուցվել է նախորդ ամիսների բոլոր աշխօրերին։ Տարին ամփոփելու ժամանակ բոլոր աշխօրերին լրացուցիչ կարգով տրվել է ևս 15 ռ. 24 կոպեկ։ Այսպիսով, կոլտնտեսությունը 1957 թվականին յուրաքանչյուր աշխօրին տվել է 60 ռուբլի 24 կոպեկ դրամ։ Տարվա ընթացքում, մի քանի անգամ տրվել է նաև բնամթերային ավանս, որի ընդհանուր արժեքը կազմում է 10 ռուբլի 89 կոպեկ։ Այլ կերպ ասած, Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը դրամական արտահայտությամբ յուրաքանչյուր աշխօրին բաշխել է 71 ռ. 13 կոպեկի եկամուտ։ Դրա շնորհիվ մեծ չափով բարձրացել է կոլտնտեսականների բարեկեցության մակարդակը։ Ահա թե ինչու կոլտնտեսականները ձգտում են ավելի ակտիվորեն մասնակցել հանրային աշխատանքներին։

Կոլտնտեսականներին ամեն ամիս ավանսավորելու հնարավորություն ունեն նաև ռեսպուբլիկայի մյուս կոլտնտեսությունները, որոնց դրամական եկամուտները վերջին տարիներում զգալի չափով աճել են։ Այսպես, 1956 թվականին, 1954 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտը ավելացել է 155 միլիոն ռուբլով, և նրա



ընդհանուր գումարը կազմել է 748 միլիոն ռուբլի։ Չնայած դրամական եկամուտների այսպիսի աճին, շատ կոլտնտեսություններում, և նույնիսկ առաջավոր համարվող կոլտնտեսություններում, ինչպես հարկն է չի կիրառվում կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման պրակտիկան։ 1956 թվականի 748 միլիոն ռուբլու դրամական եկամտի միայն մի չնչին մասն է ավանսավորման կարգով տրվել կոլտնտեսականներին, իսկ 1957 թվականի առաջին եռամսյակում այդ նպատակով միայն 5,5 միլիոն ռուբլի է առանձնացվել։ Պետք է նշել նաև այն, որ շատ կոլտնտեսություններում 1956 թվականի եկամուտների բաշխման ժամանակ դրամական և բնամթերային ֆոնդեր չեն առանձնացվել հաջորդ տարվա առաջին ամիսների համար։

Այդպիսի փաստեր նկատվում են նույնիսկ դրամական հսկայական եկամուտներ ստացող կոլտնտեսություններում։ Այսպես, օրինակ, 1956 թվականին, 1957 թվականի առաջին ամիսներին ավանսավորում կատարելու նպատակով Արտաշատի շրջանի 43 կոլտնտեսություններից փոխանցիկ ֆոնդեր ստեղծեցին միայն չորսը, իսկ Շահումյանի շրջանի 18 կոլտնտեսությունից՝ միայն վեցը։ Գործն ավելի վատ վիճակում գտնվեց Հոկտեմբերյանի շրջանում։ Այնտեղ 1956 և 1957 թվականներին ավանսավորման չափերի որոշման ժամանակ ճիշտ հաշվի չառնվեցին կոլտնտեսությունների ռեալ հնարավորությունները, որի հետևանքով էլ սահմանվեց ավանսավորման ավելի բարձր մակարդակ։ Դրա հետևանքով 1957 թվականի հունվարի մեկի դրությամբ գերավանսավորման գումարները կազմեցին 2.198.000 ռուբլի։ 1957 թվականի մինչև երրորդ եռամսյակը գյուղատնտեսական արդյունքների իրացումից և պետական պարտավորությունների դիմաց ավանսավորումից Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսություններն ստացել են ավելի քան 25 միլիոն ռուբլու դրամական եկամուտ։ Դա մի շարք կոլտնտեսությունների լիակատար հնարավորություն էր տալիս կոլտնտեսականների վաստակած աշխօրերի դիմաց ամենամսյա ավանսավորում կատարելու։ Բայց, չնայած դրան, շատ կոլտնտեսություններ կոլտնտեսականներին՝ ավանսավորել են 3—4 ամիսը մեկ անգամ։ Այդպես է եղել դրությունը նաև Արտաշատի շրջանում։

Շատ հաճախ որոշ կոլտնտեսությունների վարչությունների ղեկավար աշխատողներ անհոգ վերաբերմունք են ցույց տալիս կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման նկատմամբ։ Պատահում են դեպքեր, երբ կոլտնտեսականները դիմում են վարչության նախագահին ավանսներ ստանալու, սակայն նրանց դիմումը մերժվում է։ Առանձին դեպքերում էլ կամայականություններն այնտեղ են հասնում, որ վարչության նախագահը կարգադրում է այս կամ այն կոլտնտեսականին ավանսավորել, իսկ հաշվապահն այդ կարգադրությունը չի կատարում։ Այսպես, օրինակ, 1956 թվականին Արտաշատի շրջանի Վ. Արտաշատ գյուղի Սվերդլովի անվան կոլտնտեսության նախագահը եղած որոշման համաձայն հաշվապահ Մամիկոն Հովսեփյանին մի քանի անգամ կարգադրում է կոլտնտեսականներին ավանսավորելու ցուցակներ պատրաստել, սակայն նա այդ չի կատարում և ավանսավորման գործը ձգձգում է մինչև տարվա վերջը։ Կոլտնտեսականների ավանսավորման խախտման փաստեր կան նաև ռեսպուբլիկայի մյուս շրջանների կոլտնտեսություններում։ Ստեփանավանի շրջանի Գյուլագարակ գյուղի կոլտնտեսությունն անցյալ տարի կոլտնտեսականներին միայն մեկ անգամ է դրամական ավանսներ տվել և այն էլ կոպտորեն խախտելով ավանսավորման կարգը։ Բրիգադավար-

ներ և Ս. և Գ. Բարսեղյաններին իրենց հասանելիքից ավելի ավանս է տրվել 7.000 ռուբլի, իսկ նրանց բրիգադայի անդամներից ոչ ոքի ավանս չի տրվել։

Կոլտնտեսությունների կողմից պետական պարտավորությունների կատարման, հանրային արտադրության ընդլայնման, ինչպես նաև աշխօրերին տրվող թե՛ հիմնական, թե՛ լրացուցիչ վարձատրության, և թե՛ ամենամսյա ավանսավորման միակ աղբյուրը՝ հանրային տնտեսության տարբեր ճյուղերից ստացվող համախառն եկամուտն է։ Ուստի, նախապես պարզելու համար, թե կոլտնտեսականներին յուրաքանչյուր ամիս որքան ավանս է տրվելու, անհրաժեշտ է իմանալ, թե կոլտնտեսության համախառն արտադրանքի որ մասն է առանձնացվելու պետական պարտավորությունների կատարման, սպառված արտադրության միջոցների արժեքի վերականգնման, հանրային արտադրության ընդլայնման ու կոլտնտեսության ապահովագրման մի շարք ֆոնդերի կազմավորման համար։ Մյուս կողմից, առանց նախապես որոշելու կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության չափը, անհնար է կոլտնտեսության արտադրական-ֆինանսական պլանի մեջ հաշվարկել աշխատանքային ծախսումները, չի կարելի պլանավորել կոլտնտեսության ռեալ ծախսումները արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա և որոշել նրա ինքնարժեքը։

Ինչպես հայտնի է, կոլտնտեսություններում ֆինանսական պլանավորումն իրագործվում է եկամուտների ու ծախսերի նախահաշվով։ Սակայն նրա միջոցով չի կարելի իմանալ ո՛չ արդյունքի ինքնարժեքը, և ո՛չ էլ կոլտնտեսության առանձին ճյուղերի եկամտաբերության աստիճանը։ Այդ իսկ պատճառով էլ կոլտնտեսության մեջ աշխօրերին վարձատրելու համար առանձնացվող ֆոնդի մեծությունը որոշվում է միայն այն բանից հետո, երբ փոխհատուցվում է սպառված արտադրության միջոցների արժեքը, կատարվում են պետական պարտավորությունները և կազմակերպվում են կոլտնտեսության հանրային ֆոնդերը։ Այստեղ խոսքն ամենևին էլ չի վերաբերում նրան, որ նախքան պետական պարտավորությունների և հանրային ֆոնդերի հատկացման բաժնի որոշելը, որոշվեն կոլտնտեսականների աշխօրերին տրվելիք եկամուտների չափերը։ Խոսքն այն մասին է, որ այդ ամենը պարզորեն արտահայտվի կոլտնտեսության արտադրական-ֆինանսական պլանի մեջ։

Դեռևս շատ կոլտնտեսություններում նախապես չի որոշվում ո՛չ միայն ամենամսյա, այլև եռամսյակային ավանսավորման չափը։

Այսպիսի կոլտնտեսությունների ղեկավարները մոռանում են, որ կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա վարձատրության սիստեմը հնարավորություն է տալիս աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, որը պայմաններ է ստեղծում կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության աստիճանական ավելացման ու կոլտնտեսության կողմից նրա մինիմում չափերի երաշխավորման համար։

Ամենամսյա վարձատրության կայուն սիստեմի կիրառման համար ամեն մի կոլտնտեսություն անպայմանորեն պետք է հաշվի առնի իր տնտեսության մեջ եղած ռեալ հնարավորությունները։ Եթե կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա ավանսավորման չափը նախատեսվում է արտելի հնարավորություններից ավելի, քան այն կարող է իրագործվել, ապա նա կորցնում է արտադրության զարգացումը խթանելու իր նշանակությունը։ Կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա ավանսավորումը իր դերը կորցնում է նաև



հնարավորություններ-
այն դեպքերում, երբ այն սահմանվում է տնտեսության
րից ցածր մակարդակով։ Երկու դեպքում էլ չեն օգտագործվում այդ սիստեմի
առավելությունները։ Եթե կոլտնտեսությունը ճիշտ է հաշվի առնում իր ռեալ
հնարավորությունները՝ համապատասխան սպասվելիք եկամուտների, ապա
կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա ավանսավորման կարգը միանգամայն իրագործելի է։

Կոլտնտեսություններում ամենամսյա ավանսավորման անխափան կիրառման համար անհրաժեշտ է շրջանառու միջոցների՝ բնամթերային և դրամական ֆոնդերի ստեղծում։ Դրա անհրաժեշտությունը պայմանավորված է ո՛չ
միայն տնտեսության մեջ եկամուտների մուտքագրման անհավասարաչափությամբ, այլև բնակլիմայական մի շարք հանգամանքներով։ Տարվա մեջ կոլտնտեսությունների կողմից կատարվող աշխատանքային ծախսումներն ըստ
առանձին ամիսների ու առանձին սեզոնների շատ հաճախ արդյունքներ են տալիս հաջորդ ամիսներում, նույնիսկ հաջորդ տարում։ Դրա համար էլ կոլտնտեսություններում ամենամսյա ավանսավորման հատուկ ֆոնդերի չափերը որոշելու ժամանակ անպայմանորեն պետք է հաշվի առնվեն յուրաքանչյուր կոլտնտեսության բնակլիմայական պայմանների առանձնահատկությունները,
արտադրության զարգացման բնույթն ու աստիճանը։

Տնտեսական միևնույն ուղղությամբ զարգացող, սակայն ապրանքայնության տարբեր աստիճաններում գտնվող կոլտնտեսություններում ամենամսյա ավանսավորման հնարավորությունները տարբեր են լինում։ Այդպիսի կոլտնտեսություններում ամենամսյա ավանսավորման համար հատկացվող թե՛ բնամթերային, և թե՛ դրամական ֆոնդերի միօրինակություն չի կարելի սահմանել։ Դա ըստ էության վկայում է այն մասին, որ փոխանցվող, ինչպես և յուրաքանչյուր ամսվա համար կազմավորվող ֆոնդերի չափը տարբեր է լինելու։ Ընդհանուրն այն է, որ պետք է ամեն կերպ իրագործել կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորումը, որովհետև այն ձեռնտու է բոլոր կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների համար։ Սակայն պետք է ասել, որ յուրաքանչյուր կոլտնտեսության մեջ ամենամսյա ավանսավորման տարբերությունները դեռևս հիմնականում բխում են ո՛չ թե տնտեսական զարգացման ուղղության և դրամական եկամուտների անհավասարաչափությունից, այլև իրենց ռեալ հնարավորությունների ոչ ճիշտ հաշվառումից։

Բնամթերային ավանսավորումը բավականին դժվարությունների հետ է կապված, քան դրամական ավանսավորումը։ Եթե դրամական ամենամսյա ավանսավորումը հնարավոր է դառնում շնորհիվ այն բանի, որ մթերող կազմակերպությունները գյուղատնտեսական մթերքների դիմաց ավանսներ են բաց թողնում կոլտնտեսություններին և նրանք էլ իրենց հերթին ավանսավորում են կոլտնտեսականներին, ապա բնամթերային ավանսավորման համար անհրաժեշտ է պատրաստի մթերքների ստացումը տարվա տվյալ ժամանակաշրջանում կամ անցյալ ամիսներից և նույնիսկ անցյալ տարվանից նրա փոխանցումը։ Անասնաբուծական ուղղություն ունեցող կոլտնտեսություններում կաթը, միսը, ձուն և անասնապահական մի շարք մթերքներ տարվա ընթացքում համարյա հավասարաչափորեն են ստացվում, իսկ բուսաբուծության արդյունքները՝ հացահատիկը, կարտոֆիլը, մրգերը և այլն ստացվում են տարվա կեսերից հետո, այն էլ մոտավորապես միանգամից։ Ուստի բնամթերային ավանսավորումը կարող է կատարվել ստացվող պատրաստի արդյունք-

ների կամ էլ անցյալ տարվանից փոխանցվող որոշակի տեսակի արտադրանք-
ների հաշվին։

Բնամթերային ավանսավորումը կարևորագույն դեր է խաղում, եթե այն
խելացիորեն է կիրառվում։ Եթե կոլտնտեսությանն ստացվող մթերքների մի
մասն ապրանքային ձևով իրացման է ենթարկում, ապա մնացածից կարող է
բնամթերային ավանս տալ։ Սակայն շատ կոլտնտեսություններում ավան-
սավորման գործը փոխանակ այդպես կազմակերպելու, ոչ ապրանքային
մթերքները երկար ժամանակով պահեստավորում են։ Տվյալ դեպքում այդ
մթերքների պահպանման համար լրացուցիչ ծախսեր են կատարվում, որով
բարձրանում է նրանց ինքնարժեքը։ Բացի այդ, որոշ մթերքներ չի կարելի
պահել առանց փչանալու, եթե չխոսենք հնարավոր կորստի և նույնիսկ չրաշ-
լումների մասին։ Օրինակ, 1956 թվականին Ալավերդու շրջանի Ուզունլար
գյուղի կոլտնտեսությունում 100 ցենտներ կարտոֆիլ փչացավ, այնինչ այն
կարելի էր կամ վաճառքի հանել, կամ էլ աշխօրերի դիմաց բաժանել կոլտըն-
տեսականներին։ Նույնիսկ այնպիսի դեպքեր են պատահում, երբ մթերքները
կիսով չափ փչանալուց հետո միայն կոլտնտեսությունների վարչությունները
մտածում են նրանց իրացման մասին։

Կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա կայուն վարձատրությունը
պահանջում է արտադրության զարգացման այնպիսի մակարդակ, որը թույլ է
տալիս նրա կանոնավոր իրագործումը։ Ապրանքայնության բարձր մակարդա-
կի վրա գտնվող կոլտնտեսություններում անկասկած մեծ հնարավորություն-
ներ կան աշխատանքի վարձատրման նոր սիստեմի անխափան կենսագործման
համար։ Սակայն տնտեսապես դեռևս թույլ զարգացած կոլտնտեսություննե-
րում նրա կիրառումը կապված է որոշ դժվարությունների հետ։ Բայց այդ
դժվարությունները, մանավանդ դրամային ավանսավորման դժվարություննե-
րը, կարելի է հաղթահարել, որովհետև բոլոր կոլտնտեսություններն էլ մթեր-
ման կազմակերպություններից բարձրացրած գներով իրենց հանձնած մթերք-
ների դիմաց ժամանակին ավանսներ են ստանում, որով կոլտնտեսականների
դրամական ավանսավորման գործը բավականաչափ հեշտանում է։ Պետության
կողմից տրամադրվող դրամական ավանսները պայմանավորված են տվյալ
կոլտնտեսությունում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելաց-
ման և նրանց ապրանքայնության բարձրացման աստիճանով։ Ուստի բոլոր
կոլտնտեսությունների խնդիրն է՝ անընդհատ ավելացնել գյուղատնտեսական
մթերքների արտադրությունը, իջեցնել նրանց ինքնարժեքը և դրանով իսկ
բարձրացնել հանրային տնտեսության բոլոր ճյուղերի եկամտաբերությունը։
Հենց այդ բազայի հիման վրա էլ կմեծանա կոլտնտեսականների աշխօրերին
տրվող դրամական եկամուտների չափը՝ ամենամսյա կանոնավոր ավանսա-
վորման ձևով։

Կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորումը նրանց նյութական
շահագրգռվածության բարձրացման կարևոր միջոցներից մեկն է, որի հետե-
վողական կենսագործումը մեծ չափով կնպաստի սոցիալիստական գյուղա-
տնտեսության հետագա զարգացման ուղղությամբ պարտիայի ու կառավարու-
թյան առաջադրած հոյակապ ծրագրի կենսագործմանը։

---

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ. Խ. ԵՐԻՑՅԱՆ

Շահումյանի շրջանը ընդամենը երկու տասնամյակի պատմություն ունի։
Չնայած այդ ժամանակաշրջանը շատ կարճ է, բայց շնորհիվ սովետական
մարդու ստեղծագործ աշխատանքի, անցյալում ամայի, ծարավից պապակված
տարածությունների վրա փարթամորեն աճել և առատ բերք են տալիս խաղո-
ղի պլանտացիաներն ու պտղատու այգիները, մեկը մյուսի կողքին կառուցվել
և գնալով ընդարձակվում են նոր տիպի, սոցիալիստական տիպի ավաններն
ու գյուղերը՝ իրենց դպրոցներով, հիվանդանոցներով և ժամանակակից խոշոր
արդյունաբերական ձեռնարկություններով։

Եթե մի հետադարձ հայացք գցենք Շահումյանի շրջանի անցած ուղու
վրա, ապա շատ պարզորոշ կերպով կպատկերացվեն նրա այսօրվա հաջողու-
թյունները տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառ-
ներում։ Իր կազմակերպման առաջին տարիներին շրջանը կանգնած էր տըն-
տեսական ցածր մակարդակի վրա, շատ սակավաթիվ էին պարտիական կազ-
մակերպությունները։ Բավական է նշել, որ շրջանում 1941 թվականին մթերվել
է ընդամենը 730 ցենտներ կաթ, 1092 ցենտներ միս, 16 ցենտներ բուրդ, 9070
ցենտներ բանջարեղեն և այլն։ Շրջանում չեն եղել խոշոր արդյունաբերական
ձեռնարկություններ։

## ՎԵՐԵԼՔԻ ՈՒՂԻՈՎ

Շրջանի պարտիական կազմակերպությունը, որն այժմ իր շարքերն է հա-
մախմբում շուրջ 1800 կոմունիստի, ստեղծագործական եռանդով լի մի միաս-
նական կոլեկտիվ է։ Պարտիայի շրջանային կոմիտեն, սկզբնական կազմա-
կերպությունները ամբողջ պարտիական քաղաքական և կազմակերպական աշ-
խատանքն ի սպաս են դնում տնտեսական խնդիրների հաջող լուծմանը։ Հենց
դրանով էլ պետք է բացատրել այն աչքի ընկնող հաջողությունները, որ ձեռք
են բերել շրջանի կոլտնտեսություններն ու արդյունաբերական ձեռնարկու-
թյունները վերջին 3—4 տարիներին։

Շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունների ամենօրյա
ուշադրության կենտրոնում են գտնվում ցանքատարածությունների ու խաղողի
այգիների ընդարձակման, անասունների գլխաքանակի աճման, ինչպես նաև
գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման ու անաս-
նաբուծական մթերքների ավելացման խնդիրները։ Միայն հիմնականում խա-
ղողագործությամբ զբաղվող կոլտնտեսությունները եթե 1956 թվականին ստա-
ցել են 46.856 ցենտներ խաղողի բերք, ապա 1957 թվականին այն արդեն
բարձրացել է և հասել 55.335 ցենտների, կամ յուրաքանչյուր հեկտարից մի-
ջինը ստացվել է 69,2 ցենտներ խաղողի բերք և զգալի չափով գերակատար-

վել է պլանային առաջադրանքը։ Այժմ շրջանում յուրաքանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց պահվում է 16,8 գլուխ կով։

Յուրաքանչյուր հարյուր հեկտար հողային տարածության դիմաց 1957 թ. ստացվել է 77,9 ցենտներ միս, 440 ցենտներ կաթ, 418 կգ բուրդ։ Կոլտնտեսականների եռանդուն և ջանասեր աշխատանքի շնորհիվ հետզհետե ավելանում են գյուղատնտեսական՝ մթերքների արտադրանքը և պետությանը հանձնվող մթերքների քանակը։ Բավական է նշել, որ միայն անցյալ տարի պետական պարտավորությունների կատարման և պետգնումների ու բնավարձի միջոցով Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները երկրին տվել են 17,5 հազար ցենտներ կաթ, 3 հազար ցենտներ միս, 546 ցենտներ բուրդ, 75,3 հազար ձու։ Շրջանը պատվով է կատարել բամբակի և խաղողի մթերման պետական առաջադրանքները, գրավելով ռեսպուբլիկայում առաջավոր տեղերից մեկը։

Տնտեսական ամրապնդման շնորհիվ գնալով աճում են Շահումյանի շրջանի կոլտնտեսությունների եկամուտները, բարելավվում է կոլտնտեսականների նյութական և կուլտուրական վիճակը։ Միայն 1957 թվականին կոլտնտեսությունների ընդհանուր եկամուտը կազմեց 56 միլիոն ռուբլի, 1956 թվականի 44 միլիոնի փոխարեն։

Շրջանի պարտիական կազմակերպությունները պատշաճ ուշադրություն են դարձնում նաև արդյունաբերության ղեկավարման, արտադրական ձեռնարկություններում պարտիական քաղաքական աշխատանքի բարելավման, բանվորների քաղաքական դաստիարակության և այլ հարցերին։ Դրա շնորհիվ է, որ անցյալ տարի շրջանի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները կատարել և գերակատարել են արտադրական պլանները, տալով երկրին ավելի քան 200 միլիոն ռուբլու համախառն արտադրանք։

Պարտիայի շրջանային կոմիտեն և աշխատավորների դեպուտատների շրջանային գործադիր կոմիտեն այժմ լուրջ աշխատանք են տանում պարտիայի և կառավարության՝ կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏ կայանները վերակազմելու մասին որոշումն իրականացնելու ուղղությամբ։ Կրկին անգամ խորապես ուսումնասիրելով շրջանի կոլտնտեսությունների հնարավորություններն ու միջոցները, չցուցաբերելով հապճեպություն, նրանք նպատակահարմար գտան երկու ՄՏ կայանից մեկը վերակազմել, դարձնելով մեքենաների նորոգման տեխնիկական կայան, իսկ մյուսը թողնել, որպեսզի այն սպասարկի տնտեսապես թույլ կոլտնտեսություններին, որոնք ներկայումս հնարավորություն չունեն մեքենաներ գնելու և օգտագործելու։

## ՄԻՇՏ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԵՏ

Տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում ձեռք բերված հաջողություններն առաջին հերթին արդյունք են նրա, որ ՀԿՊ շրջանային կոմիտեն իր աշխատանքը վերակառուցել է ՍՄԿՊ XX համագումարի որոշումներին համապատասխան և կոմունիստների ու կոմերիտականների ստեղծագործական ակտիվությունը, ամբողջ աշխատավորության ջանքերն ուղղել է պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրները անշեղորեն կենսագործելու նպատակին։ Աստիճանաբար հաղթահարելով ղեկավարման գրասենյակային մեթոդը, ժամանակ չվատնելով ամեն տեսակի ոչ կարևոր նիստերի և խորհրդակցությունների վրա, շրջկոմն իր աշխատանքի ծանրության կենտ-



րոնը տեղափոխել է անմիջականորեն տեղերը և մեծ ուշադրություն է դարձնում մարդկանց հետ, մասսաների հետ տարվող աշխատանքին։ Ներկայումս ՀԿՊ շրջկոմի բյուրոյի նիստերը գումարվում են ամսական 2 անգամ։ Ըստ որում, այդ նիստերում քննարկվում են գլխավորապես պարտիական կյանքի, տնտեսական և կուլտուրական շինարարությանը վերաբերող կարևորագույն ընթացիկ և հեռանկարային հարցեր։ Շրջանային կոմիտեի աշխատանքի հիմքում դրված է կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը։ Տնտեսական և կուլտուրական շինարարության կարևորագույն հարցերը լուծվում են ոչ միայն շրջկոմի քարտուղարների, բյուրոյի անդամների, այլև պարտիական և սովետական ակտիվի լայն մասնակցությամբ։ ՀԿՊ շրջկոմի պլենումի, բյուրոյի նիստերում քննարկվող հարցերի նախապատրաստմանը լայնորեն մասնակցում է շրջանի պարտիական և սովետական ակտիվը։ Ինչպես պլենումի, այնպես էլ բյուրոյի նիստերում ստեղծվում է այնպիսի առողջ մթնոլորտ, որ յուրաքանչյուր ընկեր կարող է իր մտքերն ազատ արտահայտել և ակտիվորեն մասնակցել քննարկվող հարցի լուծմանը։

Պարտշրջկոմի աշխատանքի բնորոշ գծերից է նաև այն, որ նա իր վրա չի վերցնում սովետական և տնտեսական օրգանների ֆունկցիաները։ Հենց դրանով էլ պետք է բացատրել, որ աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործադիր կոմիտեն իր աշխատանքում ցուցաբերում է նախաձեռնություն և ինքնուրույնություն շրջանի աշխատավորության բուժսպասարկման և կուլտ-կենցաղային, գյուղերի և ավանների բարեկարգման, ճանապարհաշինարարության, հողերի ոռոգման, գյուղատնտեսական կուլտուրաների մշակման և այլ հարցեր լուծելիս։

Շրջանի պարտիական և սովետական ղեկավար աշխատողները ժամանակին արձագանքում են ներքևից եկող քննադատական դիտողություններին և ահազանգումներին, հետևողական աշխատանք են տանում թերությունների վերացման համար, ի հայտ բերելով մեծ ճկունություն և գործնական միջամտություն։

Անցյալ տարի այգիների և բամբակենու մշակման գործը Գետափի կոլտնտեսությունում ետ էր մնում։ Կոլտնտեսականների մի մասը վատ էր մասնակցում հանրային դաշտի մշակմանը։ Անհրաժեշտ էր ձեռնարկել լուրջ միջոցառումներ կոլտնտեսությունում կարգապահությունն ամրապնդելու, գարնան գյուղատնտեսական աշխատանքները ժամանակին ու բարձրորակ կատարելու համար։ Գյուղ են մեկնում պարտշրջկոմի առաջին քարտուղար Դ. Հովհաննիսյանը և աշխատավորների դեպուտատների շրջսովետի գործկոմի նախագահ Թ. Կիրակոսյանը, որոնք հետաքրքրվում են պարտիական քաղաքական աշխատանքի դրվածքով, կոլտնտեսությունում աշխատանքի կազմակերպման, այգիների ու ցանքատարածությունների մշակման ու անասունների խնամքի հարցերով։ Զրույցի ընթացքում երևում է, որ կոլտնտեսականները հաճույքով չեն մասնակցում այգեփորին։

— Ինչո՞ւ, ի՞նչն է պատճառը,— հարցնում է շրջկոմի քարտուղարը, դիմելով մի շարք կոլտնտեսականների։

— Այգեփորի մեջ օգուտ չկա, ընկեր քարտուղար,— պատասխանում են կոլտնտեսականները,— աշխօր քիչ ենք վաստակում։

Պարզվում է, որ Գետափի կոլտնտեսությունում այգեփորի համար սահմանված են այնպիսի նորմաներ, ինչպես հարևան կոլտնտեսություններում։

Մինչդեռ Գետափի կոլտնտեսության այգիները քարքարոտ հողերի վրա են, իսկ հարևան կոլտնտեսություններինը՝ փափուկ հողերի վրա։

Շրջանի ղեկավարների և կոլտնտեսականների միջև առաջացած բարեկամական զրույցը շարունակվում է երկար ժամանակ, որի ընթացքում կոլտնտեսականները բաց անելով իրենց սիրտը, խոսում են կոլտնտեսությունում եղած մի շարք ցավոտ հարցերի մասին։ Այդ զրույցից հետո միտք է հղանում շրջկոմի քարտուղարի և շրջգործկոմի նախագահի մոտ՝ դիմել մասսաների վրա ներգործելու քաղաքական դաստիարակչական աշխատանքի այնպիսի մի ձևի, ինչպիսին է թռուցիկ միտինգը։ Այդ միտինգում հանդես եկան շրջկոմի քարտուղարը, առաջավոր կոլտնտեսականները, որոնք իրենց հակիրճ խոսքով դիմեցին կոլտնտեսականներին՝ կոչ անելով՝ բարձր պահել իրենց կոլտնտեսության պատիվը և ետ չմնալ առաջավորներից։ Բացի դրանից, նրանց խորհրդով կոլտնտեսության վարչությունը վերանայեց այգիների մշակման գոյություն ունեցող վարձատրման չափը, սահմանելով այգեփորի համար աշխօրերի բարձր նորմաներ։

Պարտիայի շրջկոմը հետագայում էլ իր ուշադրության կենտրոնում է պահում Գետափի կոլտնտեսության պարտիական կազմակերպության գործունեությունը և օգնում նրան՝ ուժեղացնելու քաղաքական-մասսայական աշխատանքը կոլտնտեսականների շրջանում, կիրառելու խրախուսանքի միջոցներ ազնիվ աշխատողների նկատմամբ։ Այս ամենի շնորհիվ կոլտնտեսությունում օրըստօրե բարձրանում է աշխատանքային կարգապահությունը, բարելավվում գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը։ Եվ Գետափի կոլտնտեսությունը, որ տարիներ շարունակ բամբակագործության, խաղողագործության ու գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվության, անասնաբուծական մթերքների արտադրության բնագավառում ետ էր մնում, 1957 թվականին շրջանում առաջինը կատարեց բամբակի բերքահավաքի և հումքի հանձնման պետական առաջադրանքը, զգալի չափով բարձրացրեց անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Այժմ Գետափի կոլտնտեսությունը վերելքի հաստատուն ուղի բռնած գնում է դեպի առաջ։

Շրջանի բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների դիմումներին արագ ընթացք տալու նպատակով պարտիայի շրջանային կոմիտեի առաջին քարտուղար Դ. Հովհաննիսյանը երբեմն ընդունելության օրեր է նշանակում տեղերում՝ լսելու աշխատավորներին նրանց հուզող հարցերի մասին։ Լենինի անվան մետաքսի կոմբինատում բանվոր-ծառայողների ընդունելության օրը նրան դիմում են բազմաթիվ ընկերներ՝ իրենց անձնական և արտադրությանը վերաբերող հարցերի մասին։ Շրջկոմի քարտուղարը չի բավարարվում միայն դիմողների խոսքերն ունկնդրելով, այլ շատերի դիմումներին, հնարավորության սահմաններում, ընթացք է տալիս գործարանի դիրեկտորի և աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործադիր կոմիտեի միջոցով։

Այս տարվա գարնան գյուղատնտեսական աշխատանքների սկզբին պարտիայի շրջանային կոմիտեն ահազանգ ստացավ այն մասին, որ Ազատաշենի կոլտնտեսությունում առանձին կոմունիստներ չեն ապահովում իրենց ավանգարդային դերն արտադրության մեջ։ Շրջանային կոմիտեն անտարբեր չմնաց այդ փաստի նկատմամբ։ Կոլտնտեսություն մեկնեց շրջկոմի քարտուղար Մ. Զուրաբյանը, որը դաշտում և ֆերմայում զրույց ունեցավ կոմունիստների, կոմերիտականների և անկուսակցական կոլտնտեսականների հետ, ման-



րամասնորեն ծանոթացավ գարնան գյուղատնտեսական աշխատանքների վիճակին։ Ապա նրա խորհրդով այդ հարցը քննության դրվեց պարտիական կազմակերպության ընդհանուր ժողովում, որը մեծ դեր խաղաց աշխատանքների բարելավման գործում։ Այսպիսով, կոլտնտեսության վարչությունը (նախագահ Ի. Հարությունյան) պարտիական կազմակերպության ամենօրյա օգնությամբ, հանդես բերելով ստեղծագործական նախաձեռնություն, օրինակելիորեն կազմակերպեց դաշտային աշխատանքներն ու անասունների խնամքը։ Եթե մի քանի տարի անընդհատ Ազատաշենում հանրային այգիների զգալի մասը մնացել էր անմշակ և նվազել էր բերքատվությունը, ապա այս տարի այգիների ամբողջ տարածությունը մշակվեց ագրոկանոններին համապատասխան։

Պարտիայի շրջանային կոմիտեի քարտուղարների աշխատանքի ոճը ընդօրինակում են ստորին պարտիական աշխատողները, հատկապես շրջկոմի մյուս պատասխանատու աշխատակիցները։ Շրջկոմի ապարատի վերակառուցումից հետո ավելի է բարձրացել կազմակերպիչների (հրահանգիչների) դերը։ Կազմակերպիչների աշխատանքում ուսանելին այն է, որ նրանք ավելի մոտիկից, ավելի խորն են ուսումնասիրում իրենց ամրացված կազմակերպությունները և օգնում նրանց՝ ժամանակին բարձրացնելու և լուծելու տվյալ կոլտնտեսությանը կամ արդյունաբերական ձեռնարկությանը վերաբերող հարցերը։

Կազմակերպիչներին օգնելու և նրանց ուղղություն տալու նպատակով շրջանային կոմիտեն ամսական մեկ կամ երկու անգամ հրավիրում է խորհրդակցություն։ Յուրաքանչյուր կազմակերպիչ այդ խորհրդակցությունում հաղորդելով սկզբնական պարտիական կազմակերպություններում իր կատարած աշխատանքի մասին, միաժամանակ առաջ է քաշում այն հարցերը, որոնք կարիք են զգում շրջկոմի քարտուղարների անմիջական միջամտության կամ ենթակա են շրջկոմի բյուրոյի քննարկմանը։ Աշխատանքի այսպիսի դրվածքը կազմակերպիչներին հնարավորություն է տալիս հանդես բերելու նախաձեռնություն և ինքնուրույնություն՝ հարցերի զգալի մասը լուծելու հենց տեղում։

Նորագավիթի միջնակարգ դպրոցում գոյություն ունեին մի շարք թերություններ։ Դպրոցի պարտիական կազմակերպության քարտուղար Ն. Մատակյանը գտնում էր, որ այդ թերությունները կարելի է վերացնել միայն այն դեպքում, երբ դպրոցի աշխատանքների վիճակը քննության առնվի պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոյում և դիրեկտորի նկատմամբ կիրառվեն կազմակերպական միջոցառումներ։

Սակայն, երբ պարտշրջկոմի կազմակերպիչ Ս. Հակոբյանը լինում է դպրոցում, ուսումնասիրում պարտիական կազմակերպության աշխատանքն ու դպրոցի վիճակը և խորհրդակցում շրջկոմի քարտուղար Ս. Անտոնյանի հետ, նպատակահարմար են գտնում հարցը քննել ոչ թե շրջկոմի բյուրոյի նիստում, այլ ուսուցչական կոլեկտիվի ընդհանուր ժողովում։ Եվ իրոք, այդ ժողովը տալիս է իր արդյունքը. կոլեկտիվի անդամները իրենց առաջարկություններով օգնում են ամրապնդելու կարգապահությունը և բարձրացնելու ուսման առաջադիմությունը դպրոցում։

Հարցերի լուծման այսպիսի նախաձեռնություն և կոնկրետություն են հանդես բերում նաև կազմակերպիչներ՝ Մ. Գյոզալյանը, Վ. Մայիլյանը, Վ. Կարապետյանը, Մ. Մախմուլը, Դ. Աբրահամյանը և ուրիշներ, որոնք իրենց

աշխատանքային օրերի մեծ մասը անց են կացնում տեղերում, օգնում սկզբնական պարտիական կազմակերպություններին բարելավելու քաղաքական դաստիարակչական աշխատանքները մասսաների շրջանում:

Պարտիայի շրջանային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում պարտիական ներքին օղակների աշխատանքի մակարդակը բարձրացնելու և նրանց ավելի մարտունակ դարձնելու գործին: Այդ նպատակով զգալի աշխատանք է կատարված պարտիական կազմակերպությունների քարտուղարների և պարտխմբերի կազմակերպիչների ընտրության և դաստիարակության ուղղությամբ: Հատկապես կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներ առաջադրելիս շրջանային կոմիտեն հիմնականում ելնում է այն սկզբունքից, որ նրանք լինեն անմիջականորեն արտադրության մեջ աշխատող կոմունիստներից: Փորձը ցույց է տալիս, որ այդպիսի ընտրության դեպքում գործն ավելի է շահում, որովհետև արտադրության մեջ աշխատող ղեկավարի խոսքը ավելի հեղինակավոր է և ներգործող:

Տարիներ շարունակ Գետափի կոլտնտեսության պարտկազմակերպության աշխատանքները անբավարար էին: Այդ հետևանք էր այն բանի, որ պարտկազմակերպության քարտուղարն էր ակումբի վարիչը, որը կտրված էր արտադրությունից և տեղյակ չէր, թե ինչ է կատարվում բրիգադաներում, օղակներում, ֆերմաներում: Իսկ երբ այդ կազմակերպության քարտուղար ընտրվեց անմիջականորեն արտադրության մեջ աշխատող ֆերմայի վարիչ Հ. Մարտիրոսյանը, դրությունը փոխվեց: Նա, մոտ կանգնած լինելով արտադրությանը, գիտենալով յուրաքանչյուր կոմունիստի, կարողացավ արտադրության մեջ ճիշտ դասավորել պարտիական ուժերը և բարձրացնել կոմունիստների ավանգարդային դերը, դրանով խթանել հանրային տնտեսության վերելքը:

Սիստեմատիկ և հետաքրքրական են անցնում սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների և պարտիական խմբերի կազմակերպիչների սեմինար պարապմունքները: Այդ սեմինարներում ուսումնասիրության առարկա են դառնում ոչ միայն պարտիական աշխատանքի ձևերն ու մեթոդները, այլև արդյունաբերության և գյուղատնտեսության ղեկավարման պրակտիկ հարցերը, որոնց մասին զեկուցումներով ու զրույցներով հանդես են գալիս գիտնականներն ու մասնագետները: Օրինակ, սեմինարներից մեկում գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Ա. Նրիցյանը հանդես է եկել անասնաբուծական ֆերմաներում աշխատանքի կազմակերպման և անասունների խնամքի նորագույն մեթոդների ու նրանց կոնկրետ ներդրման, իսկ ՄՏ կայանի գյուղատնտես Ա. Հովհաննիսյանը՝ ջերմոցային տնտեսությունների դերն ու նշանակությունը բանջարաբուծության բերքատվությունը բարձրացնելու գործում թեմաների մասին զեկուցումներով:

## ԿԱԴՐԵՐՆ ԵՆ ՎՃՌՈՒՄ ԳՈՐԾԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆԸ

ՀԿՊ Շահումյանի շրջանային կոմիտեի աշխատանքի հիմքում դրված են կադրերի ընտրության և դաստիարակության, կատարման ստուգման լենինյան սկզբունքները: Շրջանային կոմիտեի քարտուղարները, ապարատի աշխատակիցները ուշի ուշով հետևում են կադրերի ընտրության և դաստիարակության գործին: Այդ մասին է վկայում այն աշխատանքը, որ կատարել է շրջկոմը ետ



մնացող կոլտնտեսությունները լավագույն կադրերով ապահովելու ուղղությամբ:

Չնայած բարենպաստ հողակլիմայական պայմաններին, շրջանի Ջանգիլար, Հաղթանակ, Շոլու, Արգավանդ գյուղերի կոլտնտեսությունները ետ էին մնում: Այդ կոլտնտեսությունների ղեկավարությունն ամրապնդելու համար շրջանային կոմիտեն որպես կոլտնտեսությունների վարչության նախագահներ համարձակ կերպով առաջ քաշեց տնտեսությունն իմացող, փորձառու, նոր աճած երիտասարդ կադրեր, եռանդուն մարդիկ, հետևելով նրանց աճին, օգնելով աշխատանքում:

Արգավանդ գյուղի կոլտնտեսությունը երկար տարիներ կանգնած էր միև-
նույն մակարդակի վրա: Մինչդեռ այստեղ հանրային տնտեսության զարգաց-
ման համար կային լայն հնարավորություններ և ռեզերվներ, որոնք, ցավոք
սրտի, չէին օգտագործվում կոլտնտեսության նախկին ղեկավարության կող-
մից: 1956 թվականի վերջերին շրջկոմի երաշխավորությամբ կոլտնտեսության
նախագահ է ընտրվում գյուղատնտես, Մարքսիզմ-լենինիզմի երեկոյան հա-
մալսարանն ավարտած Լ. Աղախանյանը: Կոլտնտեսության նոր ղեկավարու-
թյունը, շրջկոմի խորհրդով վճռականորեն հրաժարվեց նախկինում կիրառվող
այն արատավոր պրակտիկայից, երբ կոլտնտեսականները տեղին և անտեղի
տուգանվում էին «հանրային աշխատանքներին չմասնակցելու համար»:
Կոլտնտեսության նախագահ Լ. Աղախանյանը և պարտիական կազմա-
կերպության քարտուղար Տ. Գասպարյանը ամենօրյա քաղաքական դաստիա-
րակչական աշխատանքի շնորհիվ բարձրացրին կոլտնտեսությունում կարգա-
պահությունը և, առաջին հերթին, ապահովեցին կոմունիստների և կոմերիտա-
կանների ավանգարդային դերն արտադրության մեջ: Նրանք կարողացան շա-
հել գյուղի աշխատավորության վստահությունը և բոլոր կոլտնտեսականներին
պայքարի հանել հանրային տնտեսությունն առաջ մղելու, գյուղատնտեսական
մթերքների արտադրությունն ավելացնելու համար: Բավական է նշել, որ 1957
թվականին չկար ոչ մի աշխատունակ կոլտնտեսական, որ չկատարեր աշխօրե-
րի մինիմումը: Այդ էր պատճառը, որ կոլտնտեսությունում 1957 թվականի
գյուղատնտեսական աշխատանքները սկսվեցին կազմակերպված և ավարտվե-
ցին հաջողությամբ: Նույն տարում Արգավանդի կոլտնտեսությունը յուրաքան-
չյուր հեկտար խաղողի այգուց ստացավ 80 ցենտներ բերք՝ 1956 թվականի 60
ցենտների դիմաց, գերակատարեց բամբակի բերքատվության և մթերման
պլանը. յուրաքանչյուր հարյուր հեկտար հողային տարածության դիմաց ստա-
ցավ 87,6 ցենտներ միս, 1956 թվականի 56 ցենտների փոխարեն, 401 ցենտ-
ներ կաթ, 1956 թվականի 320 ցենտների փոխարեն: Տնտեսական այս հաջո-
ղությունների շնորհիվ 1956 թվականի 725.000 ռուբլու փոխարեն կոլտնտե-
սության եկամուտը 1957 թվականին կազմեց 1 միլիոն 330 հազար ռուբլի:
Կոլտնտեսության ղեկավար կադրերի ընտրության և տեղաբաշխման գոր-
ծում շրջանային կոմիտեն կիրառում է նաև այսպիսի միջոցառում. ետ մնա-
ցող կոլտնտեսություններում ղեկավար աշխատանքի է ուղարկում այնպիսի
ընկերների, որոնք իրենց արդարացրել են մեկ ուրիշ, նախկինում ետ մնա-
ցող կոլտնտեսությունում և ի հայտ բերել տնտեսությունը բանիմաց վարելու
ունակություններ:

Շոլու գյուղի կոլտնտեսությունը տարիներ շարունակ չէր կատարում
գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության առաջադրանքները: Այդ

*հետևանք էր այն բանի, որ ցածր էր աշխատավորության մեջ տարվող քաղաքական դաստիարակչական աշխատանքների մակարդակը, ընկած էր աշխատանքային կարգապահությունը։ Այստեղ անցյալում տնտեսության գլուխ էր կանգնած այնպիսի մի մարդ, որը ոչ միայն վատ էր հասկանում գյուղատնտեսության հարցերը, այլև անկարող էր նույնիսկ կազմակերպել հանրային տնտեսությունից ստացված մթերքների պահպանման ու իրացման գործը, որի հետևանքով կոլտնտեսությունը զգալի վնասներ էր կրում։ ՀԿՊ շրջանային կոմիտեն պարտիական կազմակերպության աշխատանքները, կոլտնտեսության վիճակը մանրամասն կերպով ուսումնասիրելուց հետո ճիշտ է վարվել, երբ որոշել է ամրապնդել այս կոլտնտեսության ղեկավարությունը։ Նա նպատակահարմար է գտել հարևան Ղուկասավան գյուղի կոլտնտեսության նախագահ, 30-հազարական Ռ. Գրիգորյանին, որն աշխատանքում արդարացրել էր իրեն, տեղափոխել Շուլու, իսկ Ղուկասավանի կոլտնտեսության նախագահ առաջադրել տեղական կադր ընկ. Վարդուհի Շահինյանին։ Եվ իրոք, շրջանային կոմիտեի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ անցյալ գյուղատնտեսական տարում երկու կոլտնտեսություններն էլ լավագույն ցուցանիշների հասան։*

*Շուլուի կոլտնտեսությունում ընկ. Ռ. Գրիգորյանի աշխատանքի հաջողությունների հիմնական պատճառը այն էր, որ նա առաջին իսկ օրերից նորընտիր պարտկազմակերպության քարտուղար Շ. Գրիգորյանի հետ միասին լուրջ կերպով զբաղվեց կոլտնտեսականների շրջանում տարվող քաղաքական դաստիարակչական աշխատանքը բարելավելու, կոմունիստների և կոմերիտականների ուժերն արտադրության մեջ ճիշտ տեղաբաշխելու հարցով։ Այժմ 19 կոմունիստից 17-ը անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ. կա ագիտկոլեկտիվ, որտեղ ընդգրկված են քաղաքականապես պատրաստված, արտադրության առաջավոր ընկերներ։*

*Այստեղ անցյալում կերի անհրաժեշտ բազա չունենալու, մասնագետ կադրերի բացակայության պատճառով վատ վիճակում է եղել անասնաբուծությունը։ Պարտիական կազմակերպությունը 1957 թվականի սկզբին, քննության առնելով անասնաբուծության վիճակը, ձեռնարկում է կոնկրետ միջոցառումներ՝ ֆերմայի աշխատանքները բարելավելու ուղղությամբ։ Կոլտնտեսության վարչության որոշմամբ կոլտնտեսությունում աշխատանքի է հրավիրվում զոոտեխնիկ, անասնաբուծության բնագավառ են ուղարկվում մի շարք կոմունիստներ և կոմերիտականներ։ Պարտկազմակերպությունը լրջորեն զբաղվում է նաև դաշտավարության հարցերով։ Կերաբույսերի մշակումը և բերքահավաքը օրինակելիորեն կազմակերպելու շնորհիվ կոլտնտեսությունը կարողացավ ստեղծել կոշտ և հյութալի կերերի առատ բազա, որը երկու տարի կբավարարի կոլտնտեսության անասուններին։ Անասնաբուծության և դաշտավարության բնագավառում պարտկազմակերպության և կոլտնտեսության վարչության ձեռնարկած միջոցառումները առաջին իսկ տարում տվեցին հիանալի արդյունքներ։ Մեկ տարվա ընթացքում կովերի գլխաքանակը 37-ից հասնում է 45-ի, իսկ այս տարվա վերջին և եկող տարվա սկզբին սեփական վերարտադրության հաշվին կովաբուծական ֆերմայի մայրական կազմը կավելանա ևս 25 գլխով։*

*Եթե 1956 թվականին կոլտնտեսությունը յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել էր միջին հաշվով 1130 կգ կաթ, իսկ յուրաքանչյուր հեկտարից 37 ցենտներ հացահատիկ, 20 ցենտներ խաղողի, 37 ցենտներ բանջարեղենի*



*և 17 ցենտներ բոստանային կուլտուրաների բերք, ապա 1957 թվականին մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը հասել է 2147 կիլոգրամի, իսկ յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվել է 38 ցենտներ հացահատիկ, 65 ցենտներ խաղողի, 154 ցենտներ բանջարեղենի և 173 ցենտներ բոստանային կուլտուրաների բերք։ Կոլտնտեսության եկամուտը 1956 թվականի 400 հազար ռուբլու փոխարեն 1957 թ. հասավ 1 միլիոն 200 հազար ռուբլու։ Այսպիսով, կոլտնտեսությունը ոչ միայն դուրս եկավ նեղ տեղից, այլև մեկ տարվա ընթացքում հասավ շրջանում միջին մակարդակի վրա գտնվող կոլտնտեսություններին։*

*Տնտեսապես ետ մնացող էր նաև Հաղթանակ գյուղի կոլտնտեսությունը։ Շրջանային կոմիտեն այստեղ ուղարկեց Դավիթաշենի կոլտնտեսության նախկին նախագահ Ա. Հարությունյանին, որը տնտեսությունը վարելու երկար տարիների փորձ ուներ։ Նրա եռանդուն աշխատանքի շնորհիվ Հաղթանակի գյուղատնտեսական արտելը կարճ ժամանակում խոշոր հաջողություններ ձեռք բերեց։ Եթե 1955 թվականին կոլտնտեսությունը ստացել էր 1 միլիոն ռուբլու եկամուտ, ապա 1957 թվականին՝ 3,3 միլիոն ռուբլու եկամուտ։*

*Կադրերի ճիշտ ընտրության և նրանց ըստ ունակությունների տեղաբաշխման արդյունքն է նաև այն, որ շրջանի բազմաթիվ կոլտնտեսություններ (Ն. Շենգավիթ, Ն. Զարքախ, Շահումյանի անվան, Նոր Կյանք և այլն) բռնել են վերելքի հաստատուն ուղի և տարեցտարի ավելացնում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Այս առումով բերենք թեկուզ Նոր Կյանք ավանի կոլտնտեսության օրինակը (նախագահ՝ Դ. Ղարիբյան, պարտկազմակերպության քարտուղար՝ Վ. Աբրահամյան)։ Կոլտնտեսության հիմնական կորիզը հայրենադարձներ են։ Սրանից 8—10 տարի առաջ կոլտնտեսականներից շատերը ձգտում էին դեպի քաղաք, որովհետև կոլտնտեսությունը տնտեսապես թույլ էր, անկարող էր նյութապես ապահովել աշխատողներին։ Սակայն տարիների ընթացքում լավ ղեկավարության շնորհիվ գյուղատնտեսական արտելը գնալով ամրապնդվեց և տնտեսապես առաջ անցավ։ Եթե 1953 թվականին կոլտնտեսության եկամուտը եղել է 650 հազար ռուբլի, ապա 1957 թվականին այն հասել է ավելի քան 2 միլիոն ռուբլու։ Այդ նույն ժամանակամիջոցում աշխօրերի արժեքը 3 ռուբլուց բարձրացել է 22 ռուբլու։ Սրանով պետք է բացատրել այն, որ այժմ քաղաքից, հարևան գործարանից շատերը բուռն ցանկություն են հայտնում աշխատելու այդ կոլտնտեսությունում։*

## ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ

*Շահումյանի շրջանում կան բազմաթիվ առաջավոր կոլտնտեսություններ, բրիգադաներ, անասնաբուծական ֆերմաներ և արդյունաբերական ձեռնարկություններ։ Դրանց հաջողությունները զգալի չափով պայմանավորվում են նաև նրանով, որ շրջանում լայն տեղ է տրվում առաջավորների փորձի պրոպագանդային և արմատավորմանը, սոցիալիստական մրցության ծավալմանը։ Այդ նպատակի համար կիրառվում են զանազան ձևեր ու մեթոդներ։*

*ՀԿՊ Շահումյանի շրջանային կոմիտեն ուսումնասիրել և ամփոփել է շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության պարտիական կազմակերպության աշխատանքի փորձը, որը լայն քննության է առնվել սկզբնական պարտիա-*

կան կազմակերպությունների քարտուղարների սեմինարում։ Այդ կոլտնտեսության նախագահ Ա. Մեժլումյանը հանդես է եկել կոլտնտեսությունների նախագահների, ֆերմայի վարիչների սեմինար պարապմունքում։ Նա մանրամասն պատմել է իրենց կոլտնտեսությունում արտադրական պլանների կատարման, աշխատանքի կազմակերպման, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և այլ հարցերի մասին։ Պարապմունքն ավելի արդյունավետ դարձնելու նպատակով սեմինարի եզրափակիչ մասը անց է կացվել հենց Ստալինի անվան կոլտնտեսությունում, որտեղ սեմինարի մասնակիցները հանգամանորեն ծանոթացել են արտադրության պրոցեսների հետ։

Առաջավոր փորձի փոխանակման նպատակով վերջերս անցկացվեց արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների սեմինար պարապմունք։ Այդ պարապմունքում «Արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների պայքարը օրվա առաջադրանքի կատարման համար (ըստ առաջավոր հանքափոր Ն. Մամայի մեթոդի)» զեկուցումով հանդես եկավ Լենինի անվան մետաքսի կոմբինատի պարտկազմակերպության քարտուղար Ա. Մարգարյանը, որը պատմեց, թե ինչպես է իրենց կոմբինատում կիրառվում Ն. Մամայի մեթոդը։

Շրջանային կոմիտեի ցուցումով կոլտնտեսությունների նորընտիր նախագահները, բրիգադավարները, ֆերմաների վարիչները հաճախակի այցելում են առաջավոր կոլտնտեսությունները և ուսումնասիրում այգիների մշակման, անասունների խնամքի, հանրային սեփականության ամրապնդման, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության ձևերը, կիրառելով ու արմատավորելով դրանք իրենց կոլտնտեսություններում։

Անցյալ տարի բամբակի մշակման ընթացքում շրջանային կոմիտեի նախաձեռնությամբ հրավիրվել են բամբակագործ օղակավարների ենթաշրջանային սեմինար-խորհրդակցություններ։ Այդ խորհրդակցություններում մասնագետ գյուղատնտեսների զեկուցումը լսելուց բացի հանդես են եկել առաջավոր, փորձված բամբակագործները, որոնք պատմել են թե իրենք ինչպես են մշակում բամբակենին և ապահովում բարձր բերք։ Առաջավոր փորձի փոխանակման նման մեթոդը մեծ չափով նպաստել է բամբակենին որակով ու ժամանակին մշակելու և բարձր բերքը ապահովելու գործին։

Սոցիալիստական մրցությունն իր արժանավոր տեղն է գրավում շրջանի շատ կոլտնտեսություններում և արդյունաբերական ձեռնարկություններում, որը խոշոր չափով նպաստում է աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացմանը, պետական առաջադրանքների կատարմանը։ Շրջանային կոմիտեն և շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ հաղթահարել են սոցիալիստական մրցության գործում եղած ձևականությունն ու շաբլոնը։ Այժմ պարտավորությունները վերցվում են կոնկրետ և ռեալ պայմաններից ելնելով, մրցողները պատասխանատվություն են զգում իրենց ստանձնած պարտավորությունների կատարման համար։

Առաջավոր փորձի պրոպագանդայի, սոցիալիստական մրցության ծավալման գործում սկզբնական պարտիական կազմակերպություններին մեծ օգնություն են ցույց տալիս շրջկոմի կազմակերպիչները։ Սովետաշենի տրիկոտաժ ֆաբրիկայի բանվոր-ծառայողների մեջ լայն արձագանք գտավ Ն. Մամայի աշխատանքի առաջավոր մեթոդը։ Շատ առաջավոր բանվորներ ցանկություն



հայտնեցին պայքարելու շաբաթվա արտադրական առաջադրանքի կատարման
և գերակատարման համար։ Պարտիական կազմակերպությունը, շրջկոմի կազ-
մակերպիչ Մ. Գյոզալյանի օգնությամբ, լայն բացատրական աշխատանք
ծավալեց Ն. Մամայի աշխատանքի առաջավոր փորձի պարզաբանման ուղղու-
թյամբ։ Սոցիալիստական մրցության ալիքը գնալով ընդարձակվեց, իր մեջ
ներգրավելով գրեթե բոլոր բանվորներին, որոնք հետագայում պայքարի դուրս
եկան արդեն օրվա առաջադրանքի կատարման և գերակատարման համար,
որը մեծ չափով նպաստեց աշխատանքի արտադրողականության բարձրաց-
մանը։ Այս հնարավորություն տվեց լուծել այնպիսի մի պետական կարևո-
րագույն նշանակություն ունեցող առաջադրանք, ինչպիսին է 7-ժամյա բան-
վորական օրվա անցնելը։ Այժմ ֆաբրիկան 7 ժամում թողարկում է այնքան
արտադրանք, որքան 8-ժամյա աշխատանքային օրում։

Շահումյանի շրջանի պարտիական կազմակերպությունները աշխատա-
վորների կոմունիստական դաստիարակության, արդյունաբերության գյուղա-
տնտեսության վերելքն ապահովելու գործում մեծ տեղ են տալիս բանավոր և
գրավոր ագիտացիային։ Այդ աշխատանքներն ավելի կենդանի և կոնկրետ
բնույթ են կրում ու ծավալվում հատկապես դաշտային աշխատանքների եռուն
շրջանում, երբ ագիտացիան տարվում է ոչ միայն կոլեկտիվի, այլև անհատ
մարդկանց հետ։ Այս պատվավոր գործով զբաղվում են ինչպես ագիտատոր-
ները, այնպես էլ շրջանի ղեկավար ընկերները։

Պարտիայի շրջանային կոմիտեի նախաձեռնությամբ և օգնությամբ լույս է
տեսել Ստալինի անվան կոլտնտեսության նախագահ Ա. Մեժլումյանի գրքույ-
կը, որտեղ հեղինակը համառոտ և համոզիչ կերպով խոսում է իրենց կոլ-
տնտեսությունում աշխատանքի կազմակերպման, վարձատրման և կոլտնտե-
սության վերելքի մասին։ Ստալինի անվան տրիկոտաժ ֆաբրիկայի նորարար
Համբարձում Սեփետչյանի փորձը մասսայականացնող գրքույկով հանդես է
եկել ֆաբրիկայի գործարանային կոմիտեի նախագահ Ս. Հարությունյանը։

Շրջանային «Նոր կյանք» թերթի էջերում հաճախակի հանդես են գալիս
արտադրության առաջավորները, որոնց հաջողությունները և առաջարկու-
թյունները մեծ չափով նպաստում են խտացնելու արդյունաբերության և
գյուղատնտեսության առաջավորների շարքերը։ Գովելի է, որ գարնան գյուղա-
տնտեսական աշխատանքների և բերքահավաքի ժամանակ շրջանային թերթի
խմբագրությունն իր ուժերով հրատարակում է առանձին թերթոններ և թեր-
թիկներ, նվիրված այս կամ այն բրիգադայի կամ կոլտնտեսականի գործու-
նեությանը։

Շատ կոլտնտեսություններում և արդյունաբերական ձեռնարկություննե-
րում մեծ տեղ է տրվում ցուցադրական ագիտացիային, որը կոլտնտեսական-
ներին և բանվորներին վառ պատկերացում է տալիս նրանց նվաճումների և
հեռանկարային խնդիրների մասին (Հաղթանակ գյուղի, պարտիայի XVIII
համագումարի անվան կոլտնտեսությունները և այլն)։

Ն. Զարբախի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ս. Մովսիսյան, պարտկազ-
մակերպության քարտուղար՝ Գ. Պետրոսյան) հիանալի նվաճումներ ունի հան-
րային դաշտերի բերքատվությունը բարձրացնելու, անասնաբուծական մթերք-
ների արտադրությունն ավելացնելու, կոլտնտեսականների նյութական կուլ-
տուրական վիճակը բարելավելու գործում։ Այդ կոլտնտեսության հաջողու-
թյունները, արտադրական պրոցեսները և աշխատանքի կազմակերպումը նկա-

*րահանված են և ցուցադրվում են ոչ միայն շրջանի, այլև ռեսպուբլիկայի կինոթատրոնների էկրանների վրա։*

⁂

*Սակայն այս բոլորը չի նշանակում, որ Շահումյանի շրջանում ամենուրեք աշխատանքները հաջող են և ամեն ինչ հարթ։ Նպատակ չունենալով մեր այս հոդվածում հանգամանորեն կանգ առնել հարցի այս կողմի վրա, այնուամենայնիվ անհրաժեշտ ենք համարում նշել, որ դեռևս կան շրջանի ընդհանուր առաջընթացից ետ մնացող առանձին կոլտնտեսություններ, արդյունաբերական ձեռնարկություններ։ Ինչով կարող են արդարանալ, օրինակ, Շոռբուլաղի, Ն. Նեչրլուի պարտիական կազմակերպությունների ղեկավարները, երբ նրանք՝ ունենալով հանրային տնտեսությունը զարգացնելու լայն հնարավորություններ, զգալի չափով ետ են մնում շրջանի նույնիսկ միջին մակարդակի վրա գտնվող կոլտնտեսություններից, կամ, թեկուզ այն, որ արդյունաբերական ձեռնարկություններից մի քանիսը չեն ապահովում արտադրանքի թողարկման ասորտիմենտը և ապրանքների բարձր որակը։ Դեռևս առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ թույլ են պայքարում այն մարդկանց դեմ, ովքեր իրենց կեղտոտ ձեռքն են մեկնում հարյուրավոր ազնիվ աշխատավորների քրտինքով ստեղծված պետական և կոլտնտեսային ունեցվածքին։ Շրջանի կոլտնտեսությունների մեծ մասը տարեկան ստանում է մեկից մինչև յոթ միլիոն ռուբլու եկամուտ, անընդհատ աճում են անբաժանելի ֆոնդը և աշխօրերի հասանելիքը։ Այսպիսի հսկայական միջոցներ ունենալով հանդերձ կոլտնտեսությունների վարչությունները և սկզբնական պարտիական կազմակերպությունները քիչ հոգատարություն են ցուցաբերում կոլտնտեսությունների միջոցներով ավաններն ու գյուղերը բարեկարգելու, կուլտուրական և առողջապահական հիմնարկների շենքեր կառուցելու նկատմամբ։ Մինչդեռ այդ նպատակի համար ծախսվող պետական միջոցների մի մասը տնտեսապես հզոր կոլտնտեսությունները հնարավորություն ունեն վերցնելու իրենց վրա։ Այս գործում անհրաժեշտ է պարտիայի շրջկոմի և սկզբնական պարտիական կազմակերպությունների ակտիվ նախաձեռնությունը։*

*Մենք փորձեցինք հակիրճ կերպով բնութագրել այն խոշոր աշխատանքի մի որոշ մասը, որ կատարել են Շահումյանի կոմունիստները, ողջ աշխատավորությունը։ Այդ հաջողությունները, անշուշտ, չեն հանգստացնում շահումյանցիներին։ Նրանք այսօր էլ մեծ եռանդով և աշխատանքային կորովով լի պայքարում են պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրները պատվով լուծելու, շրջանի արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողությունները ավելացնելու համար։*

---

# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԱՆԱՍՆԱԲՈՒԾԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐ

## *Լ. ԲԴՈՅԱՆ*

*Ղուկասյանի շրջանի պարտիական կազմակերպությունները, ուղեցույց*
*ունենալով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները՝ վերջին երկու տարում*
*հետևողական պայքար ծավալեցին և որոշակի հաջողությունների հասան գյու-*
*ղատնտեսության, հատկապես, անասնաբուծության զարգացման գործում։*
*1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին կաթի համախառն*
*արտադրությունը շրջանի կոլտնտեսություններում ավելացավ 11,162 ցենտնե-*
*րով կամ աճեց 35 տոկոսով։ Եթե 1956 թվականին յուրաքանչյուր 100 հեկ-*
*տար հողատարածության հաշվով շրջանի կոլտնտեսություններում արտադր-*
*վել էր 117,0 ցենտներ կաթ, ապա 1957 թվականին արտադրվեց 165,3 ցենտ-*
*ներ։ 1957 թվականին շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր ֆուրա-*
*ժային կովից ստացան 1790 կգ. կաթ. 1956 թվականի 1428 կիլոգրամի*
*դիմաց։*
*Առանձին կոլտնտեսություններ ավելի բարձր ցուցանիշների հասան։*
*Օրինակ, Սարագյուղի կոլտնտեսությունը անասնապահական մթերքների ար-*
*տադրության տեսակետից տևականորեն ետ մնացող կոլտնտեսությունն էր.*
*այդտեղ անասնապահական ֆերմաներում աշխատանքը լավ չէր կազմակերպ-*
*ված, լրիվ կոմպլեկտավորված չէին կադրերը, որի հետևանքով էլ 1955 թվա-*
*կանին յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվեց 1456 կգ. կաթ։ 1957 թվա-*
*կանին վերակառուցելով իր աշխատանքը՝ կոլտնտեսությունը հասավ բարձր*
*ցուցանիշների և անցավ առաջավորների շարքը։ Այդ առաջին հերթին պայմա-*
*նավորված էր նոր ղեկավար կադրերի ընտրությամբ։ Կոլտնտեսությունում ղե-*
*կավար աշխատանքի առաջ քաշվեցին քաղաքականապես պատրաստված, կոլ-*
*տնտեսության արտադրությունը լավ հասկացող և կազմակերպական ունակու-*
*թյունների տեր մարդիկ։ Կոլտնտեսության նախագահ ընտրվեց երեսունհազա-*
*րական Գ. Հովհաննիսյանը. նա լուրջ կերպով զբաղվեց կոլտնտեսության*
*արտադրության մեծ ու փոքր հարցերով և, առաջին հերթին, անասնաբուծու-*
*թյան զարգացման խնդիրներով։ Սկզբնական պարտիական կազմակերպության*
*և կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում սիստեմատիկ կերպով քննու-*
*թյան էին առնվում կոլտնտեսային արտադրության հարցերը, ընդունվում*
*գործնական միջոցառումներ՝ եղած բացերն ու թերությունները վերացնելու*
*համար։ Ձեռնարկած միջոցառումների շնորհիվ կոլտնտեսականները սկսե-*
*ցին ակտիվ աշխատանք կատարել՝ անասնաբուծության մթերքների արտա-*
*դրության ավելացման վերաբերյալ պարտիայի և կառավարության առաջա-*
*դրանքները պատվով կենսագործելու համար։ Արդեն 1957 թվականին կոլտն-*
*տեսությունը ամեն մի ֆուրաժային կովից ստացավ 2221 կգ. կաթ և կաթի*
*համախառն արտադրության պլանը կատարեց 127,4 տոկոսով։ Սարագյուղի*

կոլտնտեսությունում լուրջ ուշադրություն է դարձվում նաև անասունների գլխաքանակի ավելացման վրա։ Միայն 1957 թվականին, նախորդ տարվա հետ համեմատած, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացավ 41 գլխով, այդ թվում կովերինը՝ 19 գլխով։

Կաթի արտադրության ավելացման գործում լուրջ հաջողությունների հասան նաև Մեծ Սեպասարի, Բաշգյուղի, Ղուկասյանի, Մուսայելյանի և ուրիշ կոլտնտեսությունները։

1957 թվականին Բաշգյուղի կոլտնտեսությունում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց կաթի արտադրությունը հասավ 278,4 ցենտների, Հարթաշենի կոլտնտեսությունում՝ 268,3 ցենտների, Փոքր Սեպասարի կոլտնտեսությունում՝ 223,5 ցենտների, Ղուկասյանի կոլտնտեսությունում՝ 217,6 ցենտների և Ջրաղբյուրի կոլտնտեսությունում՝ 252,9 ցենտների։

Որոշ հաջողություններ ձեռք բերվեցին նաև մսի և բրդի համախառն արտադրանքի ավելացման ուղղությամբ։ Օրինակ, 1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին շրջանի կոլտնտեսությունները մսի արտադրությունը, աճի հետ միասին, ավելացրին 3100 ցենտներով, իսկ բրդինը՝ 130 ցենտներով։

1957 թվականի հունվար ամսին գյուղատնտեսության առաջավորների շրջանային հավաքում ստանձնած սոցիալիստական պարտավորություններին համապատասխան, շրջանի կոլտնտեսությունները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի նախօրյակին՝ նոյեմբերի 1-ին, գերակատարեցին պետությանը անասնաբուծական մթերքներ հանձնելու տարեկան առաջադրանքը և 1956 թվականի համեմատությամբ պետությանը ավելի հանձնեցին 4670 ցենտներ կաթ, 650 ցենտներ միս, 130 ցենտներ բուրդ։

1958 թվականի հունվարի 1-ի դրությամբ, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի հետ համեմատած, հանրային հոտում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 457 գլխով, այդ թվում կովերինը՝ 201. ոչխարների գլխաքանակն ավելացել է 5000, խոզերինը՝ 519 գլխով։

Անասնաբուծական մթերքների ավելացման վճռական պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Այս կապակցությամբ էլ առաջին պլանի վրա են մղվում ցանովի խոտաբույսերի տարածությունների ընդլայնումը և բարձր բերքատվության ապահովումը։ Հաշվի առնելով այդ, 1957 թվականին շրջանում մոտ 500 հեկտարով ընդարձակվեց կորնգանի ցանքատարածությունը։ Մինչև վերջին ժամանակներս այն թյուր կարծիքը կար, թե Ղուկասյանի շրջանում հնարավոր չէ կորնգանի բարձրորակ սերմացու ստանալ։ Բայց անցյալ տարի կոլտնտեսությունների մեծ մասը կորնգանի ցանքատարածություններից ստացավ լավորակ սերմացու և ցույց տվեց, որ լավագույն աշխատանքի դեպքում շրջանի մյուս կոլտնտեսությունները ևս կարող են աճեցնել կորնգանի բարձրորակ սերմացու և ապահովել իրենց պահանջները։

Անցյալ տարի շրջանի կոլտնտեսությունները կուտակեցին 14,5 հազար տոննա խոտ, մոտ 9 տոննա ծղոտ, 12,5 հազար տոննա սիլոս և այլ կերեր։ Դա հնարավորություն տվեց հանրային անասուններին ապահովել լիառատ կերով և 4000 տոննա կեր էլ բաշխել կոլտնտեսականներին՝ վաստակած աշխօրի դիմաց։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը մոտ 2 միլիոն ռուբլով ավելացրեց կոլտնտեսությունների դրամական եկամուտները։ Կոլտնտեսությունների ընդհանուր դրամական եկամուտների 80-85 տոկոսը



ստացվել է անասնաբուծական մթերքների վաճառքից։ Ստացված եկամտի զգալի տոկոսը հատկացվում է կոլտնտեսային անբաժանելի ֆոնդին։ Շրջանի կոլտնտեսություններում անցյալ տարի կառուցվեցին ու շահագործման հանձնըվեցին 5 տիպային կովանոց, 4 ոչխարանոց և 4 խոզանոց, ինչպես նաև ակումբներ, դրասենյակներ, պահեստներ և այլ շենքեր։

Ինչպես վերևում նշվեց, շրջանում անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում լուրջ դեր խաղաց նաև այն, որ պարտիական կազմակերպությունների որոշմամբ անասնապահության բնագավառը աշխատանքի մեկնեցին շատ կոմունիստներ ու կոմերիտականներ։ Թորոս գյուղի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունն անասնապահական ֆերմաները աշխատանքի ուղարկեց 6 կոմունիստի։ Նրանցից իրենց լավագույն ու բարեխիղճ աշխատանքով այժմ հայտնի են դարձել անասնապահներ Սամվել Բաղդասարյանը, Սամվել Հարությունյանը, Արտուշ Հակոբյանը և ուրիշներ, որոնք միաժամանակ ագիտացիոն աշխատանք են տանում անասնապահների մեջ։

Անասնաբուծության հետ միասին, որը հանդիսանում է շրջանի գյուղատնտեսության առաջատար և հանրային տնտեսության եկամտաբեր ճյուղը, շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունների ու կոլտնտեսությունների վարչությունների ուշադրության կենտրոնում է գտնվում նաև դաշտավարությունը։ Շրջանում անցյալ տարի հետևողական պայքար ծավալվեց հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման համար։ 1957 թվականին, չնայած որոշ չափով նվազեցին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները, և դրա հաշվին ընդարձակվեցին բազմամյա խոտաբույսերի ցանքսերը, բայց կոլտնտեսություններում և ՄՏ կայանում աշխատանքները լավ կազմակերպելու, ագրոմիջոցները կիրառելու, կորուստների դեմ պայքար տանելու և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու շնորհիվ հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը, 1956 թվականի համեմատությամբ, ավելացավ ավելի քան 3 ցենտներով։

Կոլտնտեսությունների եկամուտների ավելացման հետ միասին գնալով բարձրանում է կոլտնտեսականների աշխօրերին տրվող բնամթերքների և դրամի չափը։ Շատ կոլտնտեսականների անցյալ տարվա վաստակած աշխօրերի դիմաց ստացված հասույթը նրանց ընտանիքների պահանջմունքները կբավարարի 2 և ավելի տարի։

Շրջանի 27 գյուղերից էլեկտրիֆիկացված են 19-ը, շատ կոլտնտեսային ընտանիքներ ունեն ռադիոընդունիչներ։ Անցյալ տարի շրջանում կոլտնտեսականների ուժերով կառուցվել են 200-ից ավելի նոր, լուսավոր բնակարաններ։

Սակայն չի կարելի ասել, թե գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հարցերը շրջանի բոլոր կոլտնտեսություններում են պատշաճ ուշադրության արժանանում։

Անասունների մթերատվությունը ցածր է շրջանի Գետիկի, Բավրայի, Սալրապատի, Թաքնալիի, Իլլիի, Քեֆլիի կոլտնտեսություններում։ Գետիկի կոլտնտեսությունը (նախագահ Գ. Հակոբյան) ռացիոնալ կերպով չի օգտագործում իր ալպիական արոտավայրերը և խոտհարքները, կոլտնտեսությունում անբավարար է աշխատանքի կազմակերպման դրվածքը, որոնց հետևանքով տարիներ շարունակ յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացված կաթը չի

գերազանցում 1000 կիլոգրամից։ Այդ կոլտնտեսությունում 1957 թվականին յուրաքանչյուր կովից ստացվեց 910 կգ. կաթ, որը շրջանի միջինից 880 կիլոգրամով պակաս է։ Այդպիսին է վիճակը նաև ոչխարների բրդատվության և անասունների գլխաքանակի ավելացման բնագավառներում։

Բավրայի կոլտնտեսությունն ունի կերի անհրաժեշտ բազա, տիպային անասնագոմեր, բայց, որովհետև կոլտնտեսության վարչությունը (նախագահ Գ. Գաբրիելյան) և սկզբնական պարտիական կազմակերպությունը (քարտուղար Է. Ղարսլյան) հետևողական աշխատանք չեն տանում անասնապահների հետ, չեն հետևում նրանց աշխատանքին, ճիշտ չեն կիրառում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնող միջոցառումները, որի հետևանքով էլ կոլտնտեսությունը տարիներ շարունակ չի կատարում կովերի կաթնատվության առաջադրանքը։

Չնայած 1958 թվականի հունվարի 1-ի դրությամբ, 1957 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, շրջանում ավելացել է անասունների գլխաքանակը, սակայն Կարմրավանի, Մեծ Սեպասարի, Ջորաշենի կոլտնտեսություններում այն նվազել է, իսկ Բաշգյուղի, Գետիկի, Ցողամարգի և Սարիարի կոլտնտեսություններում նվազել է նաև կովերի գլխաքանակը։

Լուրջ թերություն է նաև այն, որ շրջանում դեռևս 100 հեկտար հողատարածության հաշվով քիչ անասուններ, հատկապես քիչ կովեր են պահվում։ Հարյուր հեկտար հողատարածության հաշվով, 1958 թվականի հունվարի 1-ի դրությամբ շրջանի կոլտնտեսություններն ունեն 26,5 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում 8,5 գլուխ կով։ Առանձին կոլտնտեսություններ (Սարագյուղի, Ծաղկաշենի, Ղազանչիի) ունեն ավելի քիչ անասուններ։ Բավրայի, Գետիկի, Իլլիի, Ծաղկաշենի, Ջորաշենի, Սարագյուղի կոլտնտեսությունները 100 հեկտար հողատարածության հաշվով ունեն 50—78 ոչխար, այն ժամանակ, երբ շրջանի միջինը կազմում է 85 ոչխար։

Շրջանում դեռևս անհրաժեշտ աշխատանք չի տարվում անասունների անկումները կանխելու, մայրական կազմի ստերջությունը վերացնելու, խոզաբուծությունը զարգացնելու ուղղությամբ։ Այս առնչությամբ լուրջ թերություններ կարելի է նշել Հարթաշենի, Կարմրավանի, Ղազանչիի և այլ կոլտնտեսություններում, որտեղ անասունների անկումն ու ոչխարների ստերջությունը զգալի տոկոս են կազմում։

Անասնաբուծության հետագա զարգացման համար խոշոր նշանակություն ունի անասնագոմերի կառուցումը։ Ճիշտ է, վերջին տարիներին որոշ աշխատանք կատարվել է կոլտնտեսություններում նոր անասնագոմերի կառուցման ուղղությամբ, բայց այն բավարար համարել չի կարելի. եղած գոմերը բավարարում են այժմյան պահանջի միայն 35—40 տոկոսը։ Այս գործում մեղք ունեն ոչ միայն շրջանային կազմակերպությունները, այլև շինանյութեր մատակարարող ռեսպուբլիկական կազմակերպությունները՝ Հայկոոպն ու ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը։ Բավական է նշել մի փաստ։ Մուսայելյանի կոլտնտեսությունը, որը մթերքների արտադրությամբ և անասունների գլխաքանակով առաջավորներից մեկն է, դեռ 1956 թվականին քարային աշխատանքներն ավարտած ոչխարանոցը շահագործման չի հանձնել՝ գերան, տախտակ, ազբոշիֆեր չունենալու պատճառով։

Բացի այդ, ռեսպուբլիկայի նախագծող կազմակերպությունները և ՀՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրությունը տարիներ շարունակ պլաններ են



մշակում, պետական միջոցներ են ծախսում՝ ավելի քան 10 հազար հեկտար տարածությամբ Ղարաղաշի արոտները (որոնք օգտագործում են ոչ միայն Ղուկասյանի, այլև Ախուրյանի, Աղինի, Սպիտակի և Ալավերդու շրջանների մոտ 20 կոլտնտեսություններ) ջրով ապահովելու համար։ Բայց այդ գործում մինչև այժմ ոչ մի տեղաշարժ չի կատարվել։

Գյուղատնտեսության հետագա զարգացման և առաջադրած խնդիրների կատարման համար մեծ անելիքներ ունեն ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հիմնարկներն ու գյուղատնտեսության մասնագետները, որոնք պետք է սերտ կապի մեջ լինեն կոլտնտեսականների հետ, նրանց համար կազմակերպեն բարձրորակ դասախոսություններ, ուսումնասիրեն և ընդհանրացնեն առաջավոր փորձը և այլն։ Սակայն վերջին երկու-երեք տարվա ընթացքում գիտա-հետազոտական ոչ մի հիմնարկ գիտական սեսիա կամ ցիկլային դասախոսություն չի կազմակերպել Ղուկասյանի շրջանում։

Գյուղատնտեսության, առանձնապես անասնաբուծության բնագավառում, անցյալ տնտեսական տարվա թերությունները վերացնելու և ձեռք բերած հաջողությունները ամրապնդելու նպատակով այժմվանից շրջանի պարտիական կազմակերպությունները լուրջ կազմակերպչական ու քաղաքական աշխատանք են ծավալել։ Արդեն վերանորոգված են տրակտորներն ու գարնանացանի համար անհրաժեշտ գործիքները, բոլոր կոլտնտեսություններն ապահովված են հացահատիկային և մյուս կուլտուրաների սերմացուներով, ավարտվել են 1958 թվականի արտադրական պլանները կազմելու աշխատանքները, ծավալված է սոցիալիստական մրցություն և այլն։

Շրջանի գյուղատնտեսության առաջավորների հավաքը քննարկելով ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ գյուղատնտեսության աշխատողներին ուղղված Դիմումը, 1958 թվականի համար ընդունեց նոր, ավելի բարձր պարտավորություններ։ Նա կոչ արեց շրջանի ողջ աշխատավորությանը՝ ջանք չխնայել ավելի շատ հացահատիկ, կաթ, միս, բուրդ և գյուղատնտեսական այլ մթերքներ արտադրելու համար։

Սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունների համաձայն շրջանի կոլտնտեսությունները, 1957 թվականի համեմատությամբ, այս տարի հացահատիկի համախառն բերքը պետք է ավելացնեն 15.000 ցենտնեrով, կաթի համախառն արտադրությունը՝ 10.500 ցենտներով, մսինը՝ մոտ 3000 ցենտներով, այդ թվում խոզի մսինը՝ 1200 ցենտներով, բրդինը՝ 110 ցենտներով, ձվինը՝ 4 անգամով և այլն։

Ըստ այդ պարտավորությունների 1958 թվականին շրջանում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրվելու է. կաթ 350 ցենտներ, միս՝ 53 ցենտներ, բուրդ՝ 300 կիլոգրամ։

Շատ կոլտնտեսություններ ու կոլտնտեսականներ վերցրել են ավելի բարձր պարտավորություններ։ Այսպես, օրինակ, Մուսայելյանի խոշորացված կոլտնտեսությունը պարտավորվել է 100 հեկտար հողատարածության հաշվով կաթի արտադրությունը, 1957 թվականի 214 ցենտների դիմաց, 1958 թվականին հասցնել 272 ցենտների, մսինը՝ 37,4 ցենտների դիմաց 50 ցենտների, այդ թվում խոզի մսինը՝ 8 ցենտների։

Թազագյուղի կոլտնտեսությունը պարտավորվել է հացահատիկային կուլտուրաների ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 13 ցենտներ միջին բերք, իսկ գարնանացանի ցորենի յուրաքանչյուր հեկտա-

րից՝ 15 ցենտներ, ամեն մի հեկտարից ստանալ 6 ցենտներ կտավատ, իսկ յուրաքանչյուր կովից՝ 2100 կգ. կաթ, ամեն մի ոչխարից՝ 3,8 կգ. բուրդ։

Ջույգաղբյուրի կոլտնտեսությունը, որը անասնաբուծական մթերքների արտադրության ուղղությամբ 1957 թվականին բարձր ցուցանիշներ ունենալու համար նվաճել է պարտիայի շրջկոմի և շրջսովետի փոխանցիկ կարմիր դրոշը, պարտավորվել է անասնաբուծական բոլոր տեսակի մթերքների արտադրությունը, անցյալ տարվա համեմատությամբ, ավելացնել 25 տոկոսով։

ՄՏ կայանի № 5 տրակտորային բրիգադան պարտավորվել է գարնան դաշտային աշխատանքները կատարել ագրոտեխնիկական սեղմ ժամկետում և իր սպասարկած երեք կոլտնտեսությունում յուրաքանչյուր հեկտարից ապահովել 13 ցենտներ միջին բերքի ստացումը։ Բրիգադան պարտավորվել է նաև տրակտորների և կոմբայնների արտադրողականությունը բարձրացնել 12 տոկոսով, վառելիքը տնտեսել 3 տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքը իջեցնել 1,5 տոկոսով։

Մեծ Սեպասարի կոլտնտեսության դաշտավարական բրիգադան (բրիգադավար Ս. Պետանյան) պարտավորվել է կերի ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 300 ցենտներ բերք։

Կթվոր-անասնապահներ Ա. Բարսեղյանը (Կարմրավանից), Ս. Խաչատրյանը, Մ. Կյուրեղյանը, Ն. Հարթենյանը (Հարթաշենից) և շատ ուրիշներ պարտավորվել են ընթացիկ տարում յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանալ ոչ պակաս 2600-ական կգ. կաթ, իսկ Ղուկասյանի կոլտնտեսության կթվորուհի Ժենյա Գալստյանը՝ 3100 կգ. կաթ։

Ստանձնած պարտավորությունները կենսագործելու համար պարտիական կազմակերպությունների և կոլտնտեսությունների վարչությունների կատարած կազմակերպչական և քաղաքական աշխատանքը տվել է իր առաջին պտուղները։ Այս տարի առանձնապես կազմակերպված անցկացվեց անասունների ձմեռումը, խնամքը և ծինը, զգալի չափով նվազեց մատղաշների կորուստը։ Ներկայումս կոլտնտեսություններում օրեկան 38—40 տոկոսով ավելի կաթ է ստացվում, քան անցյալ տարվա նույն ժամանակաշրջանում։ Միայն այս տարվա առաջին եռամսյակին շրջանի կոլտնտեսությունները ստացան 1725 ցենտներ ավելի կաթ, քան 1957 թվականի նույն եռամսյակին։

Ղուկասյանի շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսության մասնագետները, մեխանիզատորները և շրջանի բոլոր աշխատավորները լարել են իրենց ուժերը մինչև վերջ կենսագործելու անասնաբուծական մթերքների շեշտակի ավելացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրները և պատվով դուրս գալու սոցիալիստական մրցությունում։

---

# ԶԱՐԳԱՑՄԱՆ ԼԱՅՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Արդյունաբերության և շինարարության կառավարումը վերակառուցելու վերաբերյալ պարտիայի ու կառավարության իրականացրած միջոցառումները մեծ խթան հանդիսացան ինչպես ամբողջ ռեսպուբլիկայի, այնպես էլ Ալավերդու շրջանի արդյունաբերության զարգացման, նրա աշխատանքի հետագա բարելավման համար։

Անցյալ տարի մեկ ձեռնարկության՝ պղնձաքիմիական կոմբինատի մեջ միավորվեցին Ալավերդու պղնձաձուլական և քիմիական գործարանները, Շամլուղի և Ախթալայի հանքերի բազայի վրա կազմակերպվեց Ախթալայի հանքվարչությունը։ Շրջանի արդյունաբերական խոշոր ձեռնարկությունները, որոնք մինչև այդ գտնվում էին տարբեր մինիստրությունների ու գերատեսչությունների ենթակայության տակ, այժմ ղեկավարվում են տնտեսական մեկ կենտրոնից՝ Հայկական ՍՍՌ ժողտնտխորհից։ Ինչպես այս, այնպես էլ մի շարք այլ միջոցառումներ վերացրին շրջանի արդյունաբերության մեջ գոյություն ունեցող գերատեսչական պատնեշները, մոտեցվեց ու բարելավվեց ղեկավարությունը ձեռնարկությունների նկատմամբ, բարձրացվեց ռեսպուբլիկական և շրջանային օրգանների, տնտեսվարների դերն ու պատասխանատվությունը։ Այդ վերակառուցումը հնարավորություն ընձեռեց ավելի լրջորեն խորամուխ լինել ձեռնարկությունների էկոնոմիկայի մեջ, բացահայտել ու գործի դնել ներքին ռեզերվներն ու հնարավորությունները, կրճատել անարտադրողական ծախսերը, զարգացնել աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը։ Արդյունաբերական ձեռնարկություններում տեղադրվեցին նոր մեքենաներ ու սարքավորումներ, զգալի աշխատանք կատարվեց արտադրության ավտոմատացման, արտադրական պրոցեսների տեխնոլոգիայի կատարելագործման ու բարելավման ուղղությամբ։ Ծավալվեց նոր հանքավայրերի երկրաբանական-հետախուզական աշխատանքը։

Այս բոլորի շնորհիվ Ալավերդու գործարանները, հանքերը, երկաթուղային տրանսպորտի և շինարարության ձեռնարկությունները հաջողությամբ փակեցին 1957 թվականը։ Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման տարեկան առաջադրանքը կատարվեց 105,3 տոկոսով և երկրին տրվեց 21 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Զգալիորեն բարձրացավ բանվորների աշխատանքի արտադրողականությունը, իջավ թողարկվող արտադրանքի ինքնարժեքը, բարելավվեց արտադրանքի որակը։

Նոր տեխնիկայի ու արտադրության առաջավոր մեթոդների արմատավորման, գործարար սոցիալիստական մրցության շնորհիվ պղնձաքիմիական կոմբինատը ժամկետից շուտ կատարեց 1957 թվականի արտադրական պլանը և չորրորդ եռամսյակում արժանացավ ժողտնտխորհի ու ՀԱՄԽ-ի առա-

*չին կարգի մրցանակի։ Միայն մեկ տարում աշխատանքի արտադրողականությունը կոմբինատում աճեց 8,7 տոկոսով։ Ամբողջ ապրանքային պրոդուկցիայի ինքնարժեքի արտապլանային իջեցումից ստացված օգուտը կազմեց ավելի քան 1,6 միլիոն ռուբլի։*

*Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանը գերակատարեց իր արտադրական պլանը, ըստ որում զգալիորեն ավելացավ հրակայուն շինվածքների առաջին տեսակի արտադրանքի թողարկումը։ Լավ աշխատեցին նաև Սանահինի լոկոմոտիվային պարկը և Ախթալայի հանքվարչությունը։*

*Շրջանի ձեռնարկություններում լայն արձագանք գտավ Դոնբասի ածխահատ Ն. Մամայի հայրենասիրական նախաձեռնությունը՝ ամեն օր, աշխատանքի յուրաքանչյուր տեղամասում արտադրական պլանները գերակատարելու ուղղությամբ։ Դրա շնորհիվ պղնձաքիմիական կոմբինատի ցեխերում ու բաժանմունքներում նոր տարվա սկզբից սիստեմատիկաբար գերակատարվում են արտադրական պլանները։ Շամլուղի շատ հանքափորներ ամեն օր պլանից ավելի երկրին տալիս են տասնյակ տոննաներով հանքաքար։*

*Ալավերդու շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները ժամկետից շուտ 107,5 տոկոսով կատարեցին 1958 թվականի առաջին եռամսյակի արտադրական առաջադրանքը։ Անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ թողարկվեց 4,7 միլիոն ռուբլու ավելի արտադրանք։ Պարտիական կազմակերպությունների ձեռք առած կոնկրետ միջոցառումների և յուրաքանչյուր ձեռնարկության նկատմամբ շերտավորված մոտեցում ցուցաբերելու շնորհիվ այժմ շրջանում գրեթե չկան ետ մնացող ձեռնարկություններ։*

*Գործարաններում, հանքահորերում և կառույցներում ծավալվում է նորարարական և ռացիոնալիզատորական շարժումը, որն ուղղված է արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և բարելավման նպատակին։ Եթե պղնձաքիմիական կոմբինատում անցյալ տարի բանվորներից ու ինժեներա-տեխնիկական աշխատողներից ստացվել է 765 ռացիոնալիզատորական առաջարկություն, ապա 1958 թվականի հունվար-փետրվար ամիսներին ստացվել է 250 առաջարկություն։ Նորարարական առաջարկություններից շատերը ընդունվել ու ներդրվել են արտադրության մեջ, որից ստացված տնտեսական էֆեկտը կազմում է մի քանի հարյուր հազար ռուբլի։*

*Սակայն այն ամենը, ինչ կատարված ու ձեռք է բերված, չի կարող հանգստացնել մեզ։ Չի կարելի ասել, թե շրջանի արդյունաբերության մեջ ամեն ինչ բարեհաջող է։ Արտադրության առանձին տեղամասերում դեռևս ցածր է թողարկվող արտադրանքի որակը, թույլ է տրվում էլեկտրաէներգիայի ու վառելիքի զգալի գերածախս, հստակ ու համաչափ չի կազմակերպված աշխատանքը։ Շատ գործ կա անելու արդյունաբերության ներքին ռեզերվների ու հնարավորությունների հայտաբերման և նրանց խելացի, ռացիոնալ օգտագործման ուղղությամբ։*

*ՀԿՊ XIX համագումարը ամփոփեց ռեսպուբլիկայի էկոնոմիկայի ու կուլտուրայի բնագավառներում ձեռք բերված հաջողությունները և նշեց ժողովրդական տնտեսության հետագա զարգացման ուղիները։ Զարգացման հեռանկարները պայծառ են, թևավորող։*

*Այդ կարելի է թեկուզ տեսնել մոտակա տարիների ընթացքում Ալավերդու շրջանի արդյունաբերության զարգացման օրինակով։*

*Շրջանի կազմակերպությունները բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, ռեսպուբլիկայի պլանային օրգանների ու ժողտնտխորհի հետ միասին մշակում են Ալավերդու արդյունաբերության զարգացման յոթամյա՝ 1959—1965 թվականների հեռանկարային պլանի նախագիծը։*



*Ի՞նչ է իրենից ներկայացնելու այդ պլանը, ինչպե՞ս և ի՞նչ ուղղությամբ է զարգանալու շրջանի արդյունաբերությունը։ Փորձենք համառոտակի, ընդհանուր գծերով պատմել այդ մասին։*

*Ալավերդին հանդիսանում է ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի խոշոր կենտրոնը։ Հեռանկարային պլանով նախատեսվում է գունավոր մետաղաձուլության զարգացման այնպիսի բարձր տեմպ, որ երբեք չի եղել նախորդ տարիներին։*

*Հանքաքարի արդյունաբերական հանույթը 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, հանքվարչության Շամլուղի տեղամասում ավելանալու է 2,5, իսկ Ախթալայի տեղամասում՝ մոտ հինգ անգամ։ Միաժամանակ խիստ կերպով բարձրանալու է պոլիմետաղային հանքաքարից մետաղի կորզման տոկոսը. բանն այն է, որ երկրի առաջավոր ձեռնարկությունների համեմատությամբ մեզ մոտ դեռևս լավ չի կազմակերպված հանքաքարից մետաղի հանումն ու վերամշակումը, որի հետևանքով անօգուտ կորչում է մեծ քանակությամբ արժեքավոր մետաղ։ Այդ նպատակով նախատեսվում է 1960—1961 թվականներին կառուցել ու շահագործման հանձնել Ախթալայի հարստացուցիչ խոշոր ֆաբրիկան, որը հարստացման է ենթարկելու պղնձի հանքաքարը, ցինկակապարային կոնցենտրատները։ Դա հնարավորություն կտա մեծ չափով ավելացնելու տեղական հումքի ստացումը, կանխելու մետաղի կորուստները հանքաքարի մեջ. ներկայումս պղնձաքիմիական կոմբինատը օգտագործում է տեղական հանքաքարի 11 տոկոսը, իսկ 1965 թվականին այն հասցվելու է 40—45 տոկոսի։ Բացի այդ կավելանա ազնիվ մետաղների հանույթը, ինչպես նաև դրսից բերվող կոնցենտրատների ստացումը։ Զգալիորեն կկրճատվեն հանքաքարը պղնձաձուլարան փոխադրելու վրա կատարվող ծախսերը, կոմբինատում նոր, առաջավոր մեթոդներով կվերակառուցվի ձուլման տեխնոլոգիան, հնարավորություն կստեղծվի հրաժարվել վառերժակետային վառարաններում հանքաքարը հալելու հին ու բավական դժվար մեթոդից։*

*Զարգացման մեծ հեռանկարներ են ուրվագծվում պղնձաքիմիական կոմբինատի համար։ Արդեն սկսվել ու արագորեն ծավալվելու է կոմբինատի վերակառուցումը, ընդլայնվելու և կառուցվելու են նոր ցեխեր, բարեփոխվելու և կատարելագործվելու են տեխնոլոգիական պրոցեսներ։ Նախատեսվում է զգալի քանակությամբ կապիտալ ներդրում, որի 80 տոկոսը գնալու է նոր տեխնիկայի ներդրման վրա։*

*Ներկայումս սև պղնձի ձուլման համար տարեկան օգտագործվում է մոտ 15 հազար տոննա հեղուկ վառելանյութ. առաջիկա տարիներին կոմբինատն անցնելու է էլեկտրաձուլվածքին։ Դա հնարավորություն կտա նկատելի կերպով բարձրացնել արտադրանքի որակը և աշխատանքի արտադրողականությունը, և երկրորդ՝ ժողովրդական տնտեսության համար ազատել հազարավոր վագոն-ցիստեռններ, խնայել հեղուկ վառելանյութը։*

*Սկսվել է ու մյուս տարի կավարտվի էլեկտրոլիզի ցեխի երկրորդ հերթի կառուցումը. պլանավորված է 1960—1961 թվականներին շահագործման հանձնել այդ ցեխի երրորդ հերթը։ Այս տարի կավարտվի պղնձարջասպի*

ցեխի վերակառուցումը, որից հետո պղնձարջասպը կպատրաստվի ոչ թե սպիտակ մատից, ինչպես կատարվում է մինչև այժմ, այլ մաքուր պղնձի գրանուլներից։ Դրանով զգալիորեն կպարզեցվի արտադրության տեխնոլոգիան, քաղաքի մթնոլորտը կմաքրվի սպիտակ մատտի այրման ժամանակ առաջացող վտանգավոր գազերից, կվերանան թանկարժեք ու հազվագյուտ մետաղների կորուստները։

Հանքաքարի մշակման պրոցեսում գազերի հետ օդն են ցնդում մի շարք հազվագյուտ մետաղներ (սելեն, տելլուր, գերմանիում, մագնեզիում և այլն), որոնք մեծ նշանակություն ունեն մեր արդյունաբերության զարգացման համար։ Մեր խնդիրն է՝ կանխել այդ ցրումը, ավելացնել արդյունահանվող հանքաքարից պղնձի, ցինկի և հազվագյուտ մետաղների կորզման տոկոսը։

Ներկայումս անօգուտ օդն են ցնդում, թունավորելով շրջակայքը, կոմբինատի ծխնելույզներից դուրս եկող գազերը։ Աշխատանքներ են ձեռնարկված առաջիկայում այդ թունավոր գազերի ($NO_3$) լիկվիդացման և այն արդյունաբերական նպատակներով օգտագործելու ուղղությամբ։ Այդ կատարվելու է տեխնոլոգիական պրոցեսների բարեփոխման ճանապարհով. ներկայումս գոյություն ունեցող աշտարակային եղանակից կոմբինատն անցնելու է կոնտակտային եղանակին։ Դա ո՛չ միայն կլիկվիդացնի թունավոր գազերը, այլև մեծապես կավելացնի քիմիկատների և ծծմբաթթվի արտադրությունը։

Նոր տեխնիկայի արմատավորման, տեխնոլոգիական նոր, առաջավոր եղանակների կիրառման շնորհիվ մեծանում է կոմբինատի կարողությունը, նրա արտադրանքը։ Այդ նույն տարիներին սև պղնձի թողարկումն ավելանալու է մոտ 4 անգամ, ռաֆինացված պղնձինը՝ 4,5, ծծմբաթթվինը՝ 6, սուպերֆոսֆատինը՝ մոտ 3, պղնձարջասպինը՝ ավելի քան 1,5 անգամ և այլն։ Ինչպես կարելի է տեսնել մեջ բերված այս թվերից, գունավոր մետաղաձուլության զարգացման հետ համընթաց, նրա բազայի վրա մեծ վերելք է ապրելու քիմիական արդյունաբերությունը։ Մեր երկիրը ստանալու է ավելի շատ պարարտանյութեր, քիմիկատներ։

Ահա և Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանը։ Այստեղ սկսվել է ու մոտակա մեկ տարում կավարտվի երկրորդ վառարանի կառուցումը։ Մեծ աշխատանքներ են կատարվելու նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի ներդրման ուղղությամբ։ Գործարանը անցնելու է էլեկտրակերամիկական առարկաների արտադրության, թողարկվելու են էլեկտրական մեկուսիչներ և այլն։ Այստեղ վերամշակման են ենթարկվելու Ռուսթավիի մետալուրգիական գործարանի արտադրության մեջ գործածվող բարձր ճնշման այն աղյուսները, որոնք շարքից դուրս են եկել ու անպետքացել. այդ մնացորդները մշակվելու են, և ստացված աղյուսները վերադարձվելու են ռուսթավցիներին։

Յոթամյա պլանով նախատեսվում է զարգացնել շրջանի տեղական և անտառափայտամշակման արդյունաբերության ճյուղերը։ Թումանյանում կառուցվելու է փայտամշակման խոշոր գործարան։

Ալավերդու շրջանի արդյունաբերության և կոմունալ-կենցաղային աճող պահանջները բավարարելու նպատակով հեռանկարային պլանով նախատեսվում է ընդարձակել էներգետիկ բազան։ Արդեն փոխվում է և շուտով կավարտվի Ձորագէս-Ալավերդի բարձր լարման էլեկտրահաղորդման գծի անցկացումը, որով կրկնակի չափով կավելանա էլեկտրաէներգիայի մատակարարումը։ Նախապատրաստական աշխատանքներ են կատարվում Դեբետ գետի վրա Շնողի հիդրոէլեկտրակայանի կառուցման ուղղությամբ։ Շնողգէսի կառուցումը ավարտվելու է մինչև 1960 թվականը։



Մեծ նշանակություն կունենա Ղարադաղ-Երևան գազամուղի կառուցումը, որը հետագայում հասնելու է նաև Ալավերդի. բնական գազը կօգտագործվի և՛ արդյունաբերության, և՛ կոմունալ-կենցաղային կարիքների համար։

Արդյունաբերության արագաթափ զարգացումը պահանջում է բարելավել երկաթուղային տրանսպորտի աշխատանքը, մեծացնել նրա թողունակությունը։ Այդ նպատակով նախատեսվում է էլեկտրիֆիկացնել երկաթուղու Ալավերդի-Այրում տեղամասը, ընդլայնել Սանահինի լոկոմոտիվային պարկը, ընդարձակել երկաթուղային կայանները։ Ներկայումս Ալավերդի կայարանը շատ փոքր է և բոլորովին չի բավարարում մեր պահանջները. սկսվել է նոր խոշոր ապրանքային կայարանի կառուցումը, ուր ամբողջապես մեքենայացվելու են բեռնման ու բեռնաթափման աշխատանքները։

Ահա մոտավորապես զարգացման այն պատկերը, որը ունենալու է Ալավերդու արդյունաբերությունը մոտ ապագայում։ Հասկանալի է, որ այդ ամենը նախագիծ է. համաժողովրդական քննարկման ընթացքում կճշտվեն որոշ թվեր ու ժամկետներ, մեր առօրյա կյանքը նրանում կմտցնի իր ուղղումները։ Բայց ինչպիսին էլ լինի օրենքի ուժ ստացած արդյունաբերության զարգացման յոթամյա պլանը, այնուամենայնիվ մի բան հայտնի է՝ նոր, հզոր զարգացում կապրի Ալավերդին։ Նոր ծաղկման կհասնի պղնձաշխարհի քաղաքը՝ Ալավերդին, կբարեկարգվեն բանվորական ավանները, նոր ուժով կծավալվի բնակարանային, կոմունալ-կենցաղային և կուլտուրական շինարարությունը և որ կարևորն է՝ մեծապես կբարձրանա բանվորների և ծառայողների նյութական բարեկեցության մակարդակը։

Հեռանկարային պլանի իրականացումը նոր խոշոր քայլ կլինի մեր Հայրենիքի առաջընթացի ճանապարհին՝ լուծելու ՍՍՌՄ տնտեսական գլխավոր խնդիրը — բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքով պատմական կարճ ժամկետում հասնելու և անցնելու կապիտալիստական առավել զարգացած երկրներին։

---

# ՈՒՆԿՆԴՐԵԼ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՁԱՅՆԻՆ

Գ. ՆԱԶԱՐՅԱՆ

Ռեսպուբլիկայի բոլոր միջնակարգ դպրոցները, բարձրագույն ուսումնական հաստատությունները, գիտա-հետազոտական հիմնարկներն ունեն իրենց գրադարանները. հարուստ գրադարաններ ունեն նաև արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններ: Միայն Կուլտուրայի մինիստրության Կուլտուր-լուսավորական հիմնարկների վարչության ցանցում գործում են 1600 գրադարան, որոնք ունեն մոտ 9 միլիոն կտոր գիրք: 1957 թվականին ինքնուրույն մասսայական գրադարաններից օգտվել է 252 հազար մարդ: Բացի այդ, հազարավոր աշխատավորներ ունեն իրենց անձնական գրադարանները:

Թե որքան մեծ է աշխատավորների պահանջը գրքի նկատմամբ, ցույց են տալիս գրքի տպագրության ու գրականության վաճառքի վերաբերյալ եղած թվերը: Չորս տարում՝ 1954—1957 թվականներին, միայն Հայպետհրատի գծով հրատարակվել է 2127 անուն գիրք՝ 14 միլիոն 870 հազար օրինակ ընդհանուր տիրաժով: 1956—1957 թվականներին լույս է տեսել մոտ 1,5 անգամ ավելի հասարակական-քաղաքական օրիգինալ գրականություն, քան այն եղել է նախորդ՝ 1954—1955 թվականներին: Մեծապես աճել է գրքի վաճառքը. միայն Գրքի առևտրի վարչության միջոցով (առանց Հայկոոպի) 1957 թվականին վաճառվել է 21 միլիոն ռուբլու գրականություն:

Չնայած հրատարակչական գործի և գրականության վաճառքի կազմակերպման որոշ բարելավմանը, այնուամենայնիվ մեզ մոտ գրքի իրացման գործում կան լուրջ թերություններ: Թերակատարվում են գրքի վաճառքի պլանները, աճում են գրականության գերնորմատիվ մնացորդները: Այժմեականությունը կորցրած գրականության հաշվառումից հետո Հայգիրքը 1956—1957 թվականներին իր պահեստներից որպես մակուլատուրա դուրս գրեց 1525 անուն գիրք՝ 2,3 միլիոն ռուբլի ընդհանուր գումարով: Ներկայումս գրքի առևտրի ցանցում կուտակվել է մոտ 27 միլիոն, իսկ Հայկոոպի ցանցում՝ 8 միլիոն ռուբլու գրականություն:

Ինչո՞վ բացատրել այդ վիճակը: Ի՞նչն է խանգարում գրականության լայն տարածմանը: Փորձենք պատասխանել այդ հարցերին:

Ամենից առաջ հրատարակչական աշխատանքի մասին: Մեր կարծիքով ռեսպուբլիկայի հրատարակչական կազմակերպություններն իրենց թեմատիկ պլանները կազմելիս քիչ են հաշվի առնում ընթերցողների պահանջը. գրքի շուկայում հաճախ ընթերցողը մայրենի լեզվով չի գտնում իրեն հետաքրքրող գիրքը: Դրա փոխարեն երբեմն հրապարակ են գալիս այնպիսի գործեր, որոնք ցածրորակ են, կամ նրանց պահանջը քիչ է: Այսպես. 1950 թվականին 3000 օրինակով լույս է տեսել Խ. Փիրումովի «Բոնիֆիկատորը և նրա անելիքները» գիրքը, որի տիրաժի կեսը չի վաճառվել ու մնում է առևտրական ցանցում:



Բարձր տիրաժով, առանց իրացման հնարավորությունը հաշվի առնելու լույս է տեսել Շ. Մաթևոսյանի «Մալարիա» մեծածավալ աշխատությունը, որի տիրաժի մոտ կեսը մնում է գրախանութներում ու պահեստներում:

Հրատարակչական տարբեր կազմակերպությունների միջև չկա կոորդինացում, որի պատճառով, առանց հաշվի առնելու իրացման հնարավորությունները, հաճախ նույն տարում միևնույն թեմայի շուրջ տարբեր հրատարակչությունների գծով լույս են տեսնում մի քանի գրքեր ու ժողովածուներ: Դրանով պետք է բացատրել, որ այդ գրքերի զգալի մասը մնում է գրախանութներում ու պահեստներում և չի վաճառվում:

Չափազանց կարևոր է, որ հրատարակչությունները զբաղվեն իրենց հրատարակած գրականության իրացման ուսումնասիրության գործով, հետաքրքրվեն, թե այս կամ այն գիրքը ազգաբնակչության ո՞ր խավի կողմից է գնվում, այն ինչպիսի՞ ընդունելություն է գտնում ընթերցողների կողմից:

Գրքի վաճառքի կազմակերպման գործին հարվածում է նաև այն, որ հրատարակչությունները չունեն գրքի թողարկման կայուն գրաֆիկ. դրա հետևանքով ընթերցողները ժամանակին չեն ստանում պահանջված գրականությունը:

Ընթերցողների պահանջներն ու կարծիքները հաշվի չառնելու պատճառով սխալներ են թույլ տրվում հրատարակվող գրքերի տիրաժները սահմանելիս: Կան գրքեր, որոնք պետք է տպագրվեն փոքր, անգամ սահմանափակ տիրաժով, կան գրքեր էլ, որոնք պետք է հրատարակվեն բարձր տիրաժով: Օրինակ, այդ պահանջը հաշվի չառնելու հետևանքով Ռ. Զարյանի «Սիրանույշ» աշխատությունը (Գիտ. ակադեմիայի հրատարակչություն) տպագրվեց ոչ մեծ տիրաժով. հետագայում հրատարակիչները ստիպված եղան այն նորից վերահրատարակել՝ կատարելով ավելորդ ծախսեր: Փորձեք գրախանութներում գտնել Հով. Թումանյանի, Ավ. Իսահակյանի, Մուրացանի, Նար-Դոսի, կամ ժամանակակից մեր գրողների հաջող գործերը. դրանք չկան, որովհետև տիրաժ սահմանողները հաշվի չեն առել մասսաների պահանջը: Վերջերս 20 հազար օրինակ տիրաժով լույս տեսավ Ս. Զորյանի «Պապ թագավորը» և անմիջապես սպառվեց: Արդյոք հնարավոր չէ՞ր գիրքը հրատարակել ավելի բարձր տիրաժով, և այն որոշ ժամանակով ունենալ առևտրի ցանցում: Հայպետհրատը 1955 թվականին ձեռնարկեց Դ. Դեմիրճյանի երկերի վեցհատորյակի հրատարակությունը. առաջին հատորը 15 հազար օրինակով հրատարակելուց հետո Հայգիրքը ձեռնարկեց նրա բաժնեգրությանը, սակայն դեռ բաժնեգրությունը չավարտած Գրքի առևտրի վարչությունը մեխանիկորեն Պետհրատից պահանջեց հաջորդ հատորների տիրաժը 5000 օրինակով իջեցնել. Պետական հրատարակչությունն էլ տիրաժը իջեցնում է 10 հազարի, հինգ հազար բաժանորդներին զրկելով հետագա հատորները ստանալու հնարավորությունից:

Գիրքը պետք է լինի ո՛չ միայն հետաքրքիր, բովանդակալից, այլև արտաքուստ գրավիչ, լավ ձևավորված: Ընթերցողը մտնում է գրախանութ, նայում նոր ստացված գրականությունը, թերթում է այս կամ այն գիրքը. պարզ է, որ նա որևէ գրքի մասին իր առաջին տպավորությունը ստանում ու կարծիք է կազմում այն բանից, թե ինչպես է ձևավորված, կազմված ու տպագրված տվյալ գիրքը: Չի կարելի ժխտել այն բանը, որ վերջին տարիներին լավացել է գրքի տպագրության ու գեղարվեստական ձևավորման աշխատանքը: Բայց երբեմն հրատարակիչները լույս են ընծայում արտաքուստ գորշ,

անխնամ կազմված ու վատ տպագրված գրքեր, որը և մասամբ դառնում է
նրանց իրացման արգելքներից մեկը: Այսպես, 1956 թվականին լույս տեսավ
Ա. Չեխովի «Կաշտանկա» պատկերազարդ գիրքը՝ 10 հազար օրինակ տիրա-
ժով, սակայն խոտան տպագրության պատճառով այն չընդունվեց և վա-
ճառքի չհանվեց. վերջերս լույս տեսավ «Մանկական խոհանոց» գիրքը, որի
ձևավորումն ու տպագրությունը վատ է կատարված:

Գրքի վաճառքի ու նրա լայն տարածման ներկա վիճակը հիմնականում
պետք է բացատրել Հայգրքի. Հայկոոպի և «Սոյուզպեչատի» վատ աշխատան-
քով: Գիրք վաճառող կազմակերպությունները դեռևս սրտացավ վերաբեր-
մունք չեն ցուցաբերում իրենց հանձնարարված գործի նկատմամբ, ժամանա-
կին ընթերցողին իրազեկ չեն պահում ու նրանց հասցնում լույս տեսած
գրքերը: Կուլտուրայի մինիստրության Գրքի առևտրի վարչությունը, ինչպես
նաև Հայկոոպը վատ են կազմակերպել լույս տեսած գրքի ռեկլամը, նրանց
ցուցադրումը գրախանութներում: Ցուցադրումը վատ կազմակերպելու պատ-
ճառով հաճախ Երևանի գրախանութներում ընթերցողը չի կարող գնել իրեն
անհրաժեշտ գիրքը նույնիսկ այն ժամանակ, երբ տվյալ գիրքը խանութում
կա: Դեռևս լուրջ ուշադրություն չի դարձվում մամուլի, ռադիոյի և կինոյի
միջոցով գրքի պրոպագանդման վրա: Ի դեպ, ռեկլամի և գրքի պրոպագան-
դայի համար ամեն տարի զգալի գումարներ են նախատեսվում, սակայն
հաճախ այն իր նպատակին չի օգտագործվում:

Գրքի տարածման գործում խոշոր դեր ունի Հայգրքին կից «Գիրքը փոս-
տով» բաժինը, որը օրական տասնյակ նամակ-պատվերներ է ստանում: Սա-
կայն նա ի վիճակի չէ կատարել այդ պատվերները, քանի որ այդ բաժինը
չի կոմպլեկտավորված և աշխատանքի համար չունի հարմար շենք:

Գրքի առևտուրը քաղաքական ու կուլտուրական և պատասխանատու
լուրջ գործ է: Հասկանալի է, որ այդ աշխատանքում պետք է ներգրավել
քաղաքականապես հասուն, կուլտուրական, գիրք ու գրականություն սիրող
մարդկանց: Այդպիսի մարդիկ մեզ մոտ թե՛ գյուղում և թե՛ քաղաքում շատ
և շատ են: Սակայն չգիտես թե ինչու գրքի առևտրի ցանցում ներկայումս աշ-
խատողների զգալի մասը այդ գործի համար անհամապատասխան է: Գրքի
առևտրի կազմակերպման գործը իրենց ձեռքը պետք է վերցնեն տեղական
պարտիական ու սովետական կազմակերպությունները և, առաջին հերթին,
մտածեն կադրերի լավ ընտրության մասին:

Հարկավոր է մտածել գրախանութների շենքեր կառուցելու մասին: Երե-
վանում և Լենինականում ծավալված բուռն շինարարության պայմաններում,
գրախանութների մեծ մասը տեղավորված է հին շենքերում: Երևանի Ստա-
լինյան շրջանում գործող բոլոր գրախանութները տեղավորված են փոքր ու
խոնավ շենքերում: Մայրաքաղաքում գործող երաժշտական գրականության
միակ խանութը փակվեց, և շենքի բացակայության պատճառով քաղաքում
երկար ժամանակ նոտային գրականություն չվաճառվեց: № 1 գրախանութը
(պասաժը) տեղավորված է մի հին շենքում, որը զուրկ է պահեստային
հարմարություններից: Ավելին: Մայրաքաղաքում և ռեսպուբլիկայի երկրորդ
քաղաքում՝ Լենինականում հարմար շենքեր չինելու հետ միասին, եղածներն
էլ ճիշտ չեն տեղաբաշխված: Օրինակ, Լենինականում եղած 8 գրախանու-
թից միայն մեկն է, որ գտնվում է Տեքստիլ կոմբինատի շրջակայքում, մնա-
ցածները տեղավորված են քաղաքի կենտրոնում, իրար շատ մոտիկ:



Ավելի վատ է կազմակերպված գրքի վաճառքը գյուղական վայրերում ու
ավաններում: Ներկայումս ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում (բացի Երևան,
Լենինական և Կիրովական քաղաքներից) գրքի վաճառքով զբաղվում է Հայ-
կոոպը: Շրջաններում գրքի առևտուրը Հայկոոպին հանձնելը հետապնդում էր
մի նպատակ՝ բարելավել գրքի վաճառքը գյուղում, հնարավորություն ստեղ-
ծել, որպեսզի կոլտնտեսականը կոոպերատիվ խանութից աղ, լուցկի, շաքար,
գործվածքեղեն և այլ ապրանքներ գնելու հետ միասին գնի նաև իր ցանկա-
ցած գիրքը: Դժբախտաբար այդ վերակառուցումից հետո էլ դրությունը ոչ
միայն չլավացավ, այլև, մեր կարծիքով, վատացել է:

Ալավերդու շրջանում Ալավերդի քաղաքից բացի կա հինգ ավան և 30
գյուղ, սակայն ոչ մի գյուղում (բացի Ուզունլարից) չի կազմակերպված գրա-
կանության վաճառք: Նույն վիճակն է Բասարգեչարում և այլ շրջաններում:
Ստեղծվել է այնպիսի դրություն, երբ գիրքը գյուղական գնորդին չի հաս-
նում, այն շրջանային կենտրոնից գյուղ չի գնում:

Հայկոոպի ղեկավարները քիչ են մտահոգվում գրքի վաճառքի կազմա-
կերպման գործով: 1957 թվականին Հայկոոպը Հայգրքից պետք է ընդուներ
5 միլիոն 300 հազար ռուբլու գրականություն, այնինչ ընդունել է 4 միլիոն
ռուբլու գրականություն, այն էլ մեծ մասամբ դասագրքեր:

Բանն այն է, որ Հայկոոպը հրաժարվում է ընդունել և գյուղ ուղարկել
կոլտնտեսական աշխատավորության ու ինտելիգենցիայի համար ակտուալ
նշանակություն ունեցող քաղաքական, գեղարվեստական, գիտական և գյու-
ղատնտեսական անհրաժեշտ քանակությամբ գրականություն: Վերջերս Պե-
տական հրատարակչությունը 7000 օրինակով լույս ընծայեց Մացկևիչի «Ինչ
տեսանք մենք ԱՄՆ-ում և Կանադայում» գիրքը: Սակայն այս գրքից Հայկո-
ոպը գյուղական շրջանների համար պատվիրել է միայն 500 օրինակ, «Անաս-
նապահական ֆերմայի վարիչի տեղեկագիր» ժողովածուի 3000 տիրաժից՝
700 օրինակ, «Պղպատու տնկարան»-ի 3000 տիրաժից՝ 750 օրինակ և այլն:

Վատ է նաև բաժնեգրական գրականության տարածման գործը գյուղում:
Վերջերս ռեսպուբլիկայում սկսվել է Անատոլ Ֆրանսի, Լերմոնտովի, Դիկեն-
սի, Գ. Միխայլովսկու և այլ գրողների երկերի բաժնեգրությունը, որը շրջան-
ներում անցկացնելու փոխարեն Հայկոոպի ընկերները իրենց կաբինետն-
րում նստած՝ յուրաքանչյուր գրողի երկերից պահանջել են 150-ից 200 օրի-
նակ, և այդ այն ժամանակ, երբ պատվիրված գրականության քանակությու-
նից ավելին են պահանջում միայն Ալավերդու և Ղափանի գրախանութները:

Գրքի տարածման գործում խոշոր է Գրքի առևտրի վարչությանն առըն-
թեր Գրադարանային կոլեկտորի դերը: Նա սպասարկում, գրականություն է
մատակարարում ռեսպուբլիկայի 1850 գրադարանի: Գրադարանային կոլեկ-
տորը ավելի մոտիկից պետք է կապվի շրջանային ու գյուղական գրադարան-
ների հետ, ուսումնասիրի նրանց պահանջները ու կուլտուր-լուսավորական
հիմնարկների վարչության հետ ժամանակին բավարարի այն:

Անհրաժեշտ է վճռականորեն բարելավել գրքի վաճառքը, կազմակերպել
գրականության կուլտուրական առևտուրը:

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԻ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ

ՍՄԿՊ XX համագումարը պահանջեց վերակառուցել կոմունիստների քաղաքական ուսուցման գործը, մեծ ուշադրություն դարձնել ուսման մակարդակն է՛լ ավելի բարձրացնելու, կյանքից պրոպագանդայի կտրվածությունը հաղթահարելու, կադրերին տնտեսագիտական գիտելիքներով զինելու հարցերին։

Ղեկավարվելով համագումարի այդ պահանջով, Նոր Բայազետի շրջանի պարտիական կազմակերպությունները այս ուսումնական տարում առաջին անգամ կազմակերպեցին գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող տասը խմբակ, որտեղ ընդգրկվեց շուրջ 200 կոմունիստ։ Այդ խմբակների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ կոմունիստներին, մեր կադրերին գյուղատնտեսական գիտելիքներով զինելը լրջորեն նպաստում է կոլտնտեսային աշխատանքներում տեղ գտած թերությունների բացահայտմանն ու վերացմանը, կոլտնտեսային արտադրության վերելքի ապահովմանը։ Բերենք մի քանի օրինակ։ Նորադուզում կազմակերպված գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակում ընդգրկված են կոլտնտեսության մասնագետները, դաշտավարական բրիգադների բրիգադավարները, ֆերմաների վարիչները, կոլտնտեսության վարչության և գյուղսովետի գործկոմի նախագահներն ու պարտկազմակերպության քարտուղարը։ Խմբակի պարապմունքները տեղի են ունենում սիստեմատիկաբար և ժամանակին, ուսումնասիրվող թեմաները կապվում են կոլտնտեսության առջև դրված խնդիրների հետ։ Այսպես, օրինակ, «Գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցումը կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների արտադրության կարևորագույն տնտեսական ցուցանիշն է» թեման անցնելիս, պրոպագանդիստ Ղևոնդ Ղազարյանը մանրամասն և մատչելի լեզվով բացատրեց նյութը, այն կապեց ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ գյուղատնտեսության աշխատողներին ուղղված Դիմումում առաջ քաշված խնդիրների հետ, հանգամանորեն կանգ առավ իրենց կոլտնտեսությունում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով մթերքների արտադրության ավելացման հարցի վրա։

Այս պարապմունքի ժամանակ պարզվեց, որ չնայած կոլտնտեսությունը անցյալ տարի յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է մոտ 1600 կիլոգրամ կաթ և գերակատարել է կովերի կաթնատվության առաջադրանքը, բայց չի ապահովել հարյուր հեկտար հողատարածության դիմաց կաթի արտադրության պլանի կատարումը։ Դրա հիմնական պատճառը եղել է այն, որ կոլտնտեսությունում հարյուր հեկտար հողատարածության դիմաց պահվում է միայն 10,4 կով. մինչդեռ պահանջվում է պահել 15—20 կով։

Անդրադառնալով արտադրանքի մեկ միավորի վրա կատարած ծախսումների հարցին, խոսվեց կոլտնտեսությունում խոզի և ոչխարի մսի գների խիստ



տարբերության մասին։ 1957 թվականին արտադրված խոզի մեկ կիլոգրամ մսի համար ծախսվել է 13 ռուբլի 25 կոպեկ, իսկ ոչխարի մեկ կիլոգրամ մսի համար՝ 2 ռուբլի 46 կոպեկ։ Խմբակում հանգամանորեն վերլուծվեցին դրա պատճառները. պարզվեց, որ այդ հետևանք է այն բանի, որ ամեն տարի ոչխարների համար քիչ ծախսումներով կուտակվում է բավարար քանակի սեփական կեր, մինչդեռ խոզերին տրվող կերերի մեծ մասը գնվում է դրամով, որը և թանկ է նստում կոլտնտեսության վրա։

Այդ դիտողությունը արժանացավ կոլտնտեսության վարչության և պարտիական կազմակերպության ուշադրությանը։ Նրանք լուրջ միջոցառումներ իրականացրին և խոզերը ապահովեցին սեփական կերով, որը նպաստեց խոզի մսի ինքնարժեքի իջեցմանը և խոզաբուծության զարգացմանը։

Այս խմբակի օրինակը ցույց է տալիս, որ երբ ուսումնասիրվող թեման
պրոպագանդիստը պարզաբանում է խորն ու բազմակողմանիորեն, այն կա-
պում է տվյալ կոլտնտեսության առջև դրված խնդիրների հետ, բոլոր ունկըն-
դիրները մեծ սիրով են մասնակցում պարապմունքներին, տեսական հարցերի
քննարկման ժամանակ հանդես են բերում մեծ ակտիվություն, ուշի-ուշով
ուսումնասիրում, կոնսպեկտավորում են նյութերը և այլն։

Պարապմունքներն աշխույժ ու հետաքրքիր են անցնում նաև Արծվաքար
գյուղում կազմակերպված գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող
խմբակում։ Խմբակի պրոպագանդիստ Անդրանիկ Կարապետյանն ունի բարձ-
րագույն մասնագիտական կրթություն, լավ գիտի գյուղատնտեսության էկոնո-
միկան, մոտիկից ծանոթ է կոլտնտեսության աշխատանքներին, որը նրան
հնարավորություն է տալիս հաջող անցկացնել խմբակի պարապմունքները։
Ուսումնասիրվող յուրաքանչյուր հարց նա կապում է կոլտնտեսության առջև
դրված խնդիրների հետ, կոլտնտեսության ցուցանիշները համեմատում է շըր-
ջանի այլ կոլտնտեսությունների ցուցանիշների հետ, ցույց է տալիս իրենց
կոլտնտեսության այս կամ այն բնագավառում ետ մնալու պատճառները և
նշում դրանց վերացման ուղիները։

Այս խմբակի վերջին պարապմունքում ունկնդիրներն ուսումնասիրում
էին «Գյուղատնտեսության զարգացման խնդիրները 6-րդ հնգամյակում» թե-
ման։ Ունկնդիրներ Վաչագան Հովակիմյանը, Գառնիկ Սարգսյանը, Խաչիկ
Դանդիլյանը և ուրիշներ ո՛չ միայն լավ էին յուրացրել նյութը և սպառիչ պա-
տասխաններ էին տալիս պրոպագանդիստի առաջադրած հարցերին, այլև
մի շարք կոնկրետ դիտողություններ էին անում իրենց կոլտնտեսության որոշ
ճյուղերի աշխատանքների վերաբերյալ։ Ունկնդիր Խաչիկ Դանդիլյանը խոսե-
լով ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած՝ գյուղատնտեսության արտադրու-
թյան բոլոր ճյուղերի զարգացման բարձր տեմպերի մասին, նշեց, որ իրենց
կոլտնտեսության կաթնապրանքային ֆերման չի ապահովել այդ պահանջի
կատարումը. անցյալ տարի ցածր է եղել կովերի կաթնատվությունը, յուրա-
քանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է միայն
78 ցենտներ կաթ։ Պարզվեց, որ այս բոլորի հիմնական պատճառը կովերի
սերտչությունն է, բավարար քանակությամբ խտացրած և հյութալի կերերի
բացակայությունը, առաջավորների փորձի անբավարար ուսումնասիրումը և
արմատավորումը։ Այստեղ ունկնդիրների արած շատ դիտողություններ ար-
ժանանում են կոլտնտեսային վարչության և պարտիական կազմակերպու-
թյան ուշադրությանը։ Խմբակի պարապմունքներից մեկում ունկնդիրներ

Ռաֆիկ Մխեյանը և Հովհաննես Կարեյանը նշեցին, որ կոլտնտեսության «Ջուրաններ» կոչվող դաշտամասի ջրատար առուները տարիներ շարունակ չեն մաքրվել, որի հետևանքով էլ մոտ 40 հեկտար հողամաս դարձել է անջրդի, և բերքատվությունը այդ տարածության վրա կիսով չափ ընկել է։ Ունկնդիրները նշեցին, որ անհրաժեշտ է այս տարի ապահովել այդ տարածության ոռոգումը։ Հաշվի առնելով այդ առաջարկությունը՝ կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը արդեն միջոցներ են ձեռնարկել այդ դաշտը ոռոգելու, որի համար մաքրվելու են նախկին ջրատար առուները։

Կոլտնտեսությունը ունի լավ այգի և վերջին տարիներին մրգի առատ բերք է ստանում։ Պարապմունքներից մեկում ունկնդիրները հարց բարձրացրին՝ զարգացնելու այգեգործությունը։ Նրանք միաժամանակ խնդիր դրին պտղատու ծառեր աճեցնել նաև կոլտնտեսականների տնամերձ հողամասերում։ Հաշվի առնելով այդ, կոլտնտեսության վարչությունը նախատեսել է այս տարի կոլտնտեսականներին տալ հազարից ավելի պտղատու տնկիներ։

Ուսումնասիրվող թեմաները պրակտիկ աշխատանքի հետ կապելու լավ օրինակներ են ցույց տալիս նաև ՄՏ կայանի և Հացառատ գյուղի գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակները։

Սակայն չի կարելի ասել, թե շրջանում գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների աշխատանքը ամենուրեք հաջող է ընթանում։ Մի շարք խմբակներում պարապմունքներն անցնում են ցածր մակարդակով, տեսական նյութը չի զուգակցվում կոլտնտեսության առջև դրված խնդիրների հետ։ Այսպես, օրինակ, Բադիկյան գյուղի խմբակի պարապմունքներն անցնում են անկազմակերպ, խորն ու բազմակողմանիորեն չեն ուսումնասիրվում հարցերը, ունկնդիրներից շատերը սիստեմատիկ կերպով բացակայում են պարապմունքներից, չեն կոնսպեկտավորում հանձնարարվող նյութը և այլն։ Օրինակ, փետրվարի 28-ի պարապմունքին 18 ունկնդիրներից ութը բացակայում էին, իսկ մնացածների մեծ մասը չէր յուրացրել թեման։ Այդ խմբակի աշխատանքի անբավարար վիճակը հետևանք է այն բանի, որ պարտիական կազմակերպությունը ժամանակին հարկ եղած ուշադրությունը չի դարձրել նրա աշխատանքների կազմակերպման, անհրաժեշտ գրականություն ձեռք բերելու վրա։ Խմբակի ունկնդիրներից շատերը չունեն «Սոցիալիստական գյուղատնտեսական ձեռնարկությունների էկոնոմիկա» ձեռնարկը։ Խմբակի վատ վիճակը հիմնականում հետևանք է պրոպագանդիստ ընկ. Բ. Հովհաննիսյանի անբավարար աշխատանքի։ Նա գաղափարական ցածր մակարդակով է անցկացնում պարապմունքները, անցնելիք նյութը չի կապում կոլտնտեսության առջև դրված պրակտիկ խնդիրների հետ։

Գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների աշխատանքները վատ են կազմակերպված նաև Կարմիր գյուղում։ Այստեղ խմբակի պրոպագանդիստն է պարտկազմակերպության քարտուղար Ասքանազ Աղաջանյանը, որի մեղքով սիստեմատիկ կերպով ձախողվել են պարապմունքները։ Այդ խմբակը հունվարի 10-ից մինչև մարտի 1-ը ոչ մի պարապմունք չի ունեցել։ Խմբակի ունկնդիր, կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի վարիչ Անդրանիկ Գևորգյանը ամբողջ տարվա ընթացքում ներկա է եղել միայն երկու պարապմունքի, թեև շատ ցածր է նրա քաղաքական գիտելիքների մակարդակը և իրեն չի արդարացնում նաև պրակտիկ աշխա-



տանքում. նրա ղեկավարած ֆերմայում կովի միջին կաթնատվությունը 1957
թվականին եղել է 457 կիլոգրամ։ 1957 թվականի կաթի համախառն արտա-
դրությունը, 1956 թ. համեմատությամբ, կրճատվել է մոտ 60 տոկոսով։
Պարապմունքների սիստեմատիկ ձախողման փաստեր կան նաև մյուս
կազմակերպություններում։ Մեկ ամսից ավելի է, ինչ Նոր Բայազետի սովե-
տական տնտեսության խմբակի պրոպագանդիստ Սերյոժա Տոնոյանը ընտրը-
վել է Ծաղկաշեն գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ և այդ ժա-
մանակից ի վեր խմբակի ոչ մի պարապմունք տեղի չի ունեցել։
Կոլտնտեսային կադրերի էկոնոմիկական գիտելիքների հարստացմանը
մեծ չափով կարող է օգնել գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերի վե-
րաբերյալ դասախոսությունների, զեկուցումների, կոնսուլտացիաների, ռեֆե-
րատների կազմակերպումը, որը, սակայն, Նոր Բայազետի շրջանի մի շարք
սկզբնական պարտիական կազմակերպություններում չի արվում։ Բացի այդ,
կոլտնտեսային արտադրության հարցերի վերաբերյալ պարապմունքների ըն-
թացքում ունկնդիրների արած դիտողությունները միշտ չէ, որ արժանանում
են պարտիական կազմակերպությունների և կոլտնտեսությունների վարչու-
թյունների ուշադրությանը։ Գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասի-
րողներին լուրջ օգնություն պետք է ցույց տա պարտիայի Նոր Բայազետի
շրջկոմի քաղաքական լուսավորության կաբինետը։ Լավ կլիներ, որ շրջանի
մասշտաբով հրավիրվեին տնտեսագիտական կոնֆերանսներ, կազմակերպ-
վեին բարձրորակ դասախոսություններ, զեկուցումներ և այլն։
Ընդհանուր առմամբ, քաղլուսկաբինետի օգնությունը կոմունիստների
քաղաքական ուսուցմանը և, առանձնապես, գյուղատնտեսության էկոնոմի-
կան ուսումնասիրող խմբակների ունկնդիրներին խիստ անբավարար է։ Ինչ-
պես շրջանի գյուղերում, այնպես էլ քաղլուսկաբինետում չկան շրջանի գյու-
ղատնտեսության վերելքը պատկերող ստենդներ, դիագրամաներ և այլն։
Հարկավոր է, որ ՀԿՊ Նոր Բայազետի շրջկոմը, սկզբնական պարտիա-
կան կազմակերպությունները ավելի լուրջ ուշադրություն դարձնեն կոմու-
նիստների քաղաքական ուսուցման, առանձնապես գյուղատնտեսության էկո-
նոմիկան ուսումնասիրող խմբակների աշխատանքներին, սիստեմատիկաբար
հետևեն պարապմունքների ընթացքին, բարձրացնեն նրանց գաղափարական
բովանդակությունը, որպեսզի այդ խմբակների պարապմունքները ո՛չ միայն
նպաստեն ունկնդիրների գիտելիքների հարստացմանը, այլև օգնեն կոլտնտե-
սային արտադրությունում տեղ գտած թերությունների վերացմանը։

Ս. ԱՆՏՈՆՅԱՆ

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՆՔՆԱԿՐԹՈՒԹՅԱՄԲ ԶԲԱՂՎՈՂՆԵՐԻՆ

Ղափանի շրջանի մի շարք սկզբնական պ՛արտիական կազմակերպություն-
ներ հետևողական աշխատանք են կատարում կոմունիստների քաղաքական
ինքնակրթության գործը օրինակելիորեն կազմակերպելու ուղղությամբ։
Կոմունիստների քաղաքական ինքնակրթության գործը առանձնապես լավ
է կազմակերպված հանքվարչության, № 2 միջնակարգ դպրոցի, պոլիկլինի-
կայի և այլ պարտիական կազմակերպություններում։

Հանքվարչության պարտիական կոմիտեն և պարտիական սկզբնական կազմակերպությունները մարքսիզմ-լենինիզմի ինքնուրույն ուսումնասիրողների համար սիստեմատիկ դասախոսություններ և զեկուցումներ են կազմակերպում մարքսիստական-լենինյան թեորիայի, արդյունաբերության էկոնոմիկայի, միջազգային դրության, պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումների վերաբերյալ։ Այստեղ շատ կոմունիստներ ինքնակրթությամբ հետևողականորեն բարձրացնում են իրենց տեսական պատրաստականությունը և քաղաքական մակարդակը։ Այդպիսիներից է Արտաշես Հարությունյանը, որը ո՛չ միայն լավ է զբաղվում իր քաղաքական մակարդակի բարձրացմամբ, այլև հանքագործների առջև հանդես է գալիս դասախոսություններով և զեկուցումներով։ Վերջին ամիսների ընթացքում բանվորների համար նա դասախոսություններ է կարդացել՝ «Աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիների մասին», «Արհմիությունները կոմունիզմի դպրոց են» և այլ թեմաներով։ Քաղաքական ինքնակրթությամբ լավ են զբաղվում նաև կոմունիստներ՝ Բ. Փարսադանյանը (մեխանիկ), Ա. Սարգսյանը (հերթափոխի ղեկավար), Ա. Գրիգորյանը (էլեկտրիկ), Ա. Թևանյանը (դարբին) և ուրիշներ։

№ 1 միջնակարգ դպրոցում կազմակերպված են քաղաքատնտեսության, ժողովրդական կրթության ու կոմունիստական դաստիարակության հարցերն ուսումնասիրող սեմինարներ։ Այստեղ առանձնապես լավ է գործում քաղաքատնտեսությունն ուսումնասիրող սեմինարը։ Սեմինարի մասնակիցները նախօրոք մշակում են թեմաները և պարապմունքների ժամանակ մեկը հանդես է գալիս հիմնական զեկուցումով, մյուսները ելույթներ են ունենում, կատարում լրացումներ և զեկուցման շուրջը անում իրենց դիտողությունները։ Սեմինարի ակտիվ մասնակիցներից է Ա. Աղամիրյանը, որը սեմինարում հանդես է եկել «Առևտրական կապիտալ և առևտրական շահույթ» թեմայի մասին զեկուցումով։ Նա այս ուսումնական տարում մի շարք այլ թեմաների մասին զեկուցումներով հանդես է եկել նաև աշխատավորության առջև։ Լինելով դպրոցի պարտկազմակերպության քարտուղար, ընկ. Աղամիրյանը հետևում է ուսուցիչների քաղաքական մակարդակի բարձրացմանը և անհրաժեշտ օգնություն ցույց տալիս նրանց։

Լավ է գործում նաև քաղաքի պոլիկլինիկայի պարտկազմակերպությանը կից քաղաքատնտեսության սեմինարը, որի ղեկավարն է շրջկոմի հրահանգիչ Հ. Հարությունյանը։ Այստեղ իրենց քաղաքական մակարդակի բարձրացմամբ լավ են զբաղվում կոմունիստներ Լ. Խաչատրյանը, Ս. Սաղաթելյանը և Ս. Սարգսյանը, որոնք սիստեմատիկ կերպով աշխատում են գրքի վրա և հարըստացնում իրենց գիտելիքները։

Սակայն կոմունիստների քաղաքական ինքնակրթության գործում շրջանում թերությունները դեռևս շատ են։ Այսպես, օրինակ, եթե հանքվարչության պարտիական կազմակերպությունը քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողներին օգնելու նպատակով սիստեմատիկ կերպով դասախոսություններ և զեկուցումներ է կազմակերպել, որոնք, անշուշտ, տվել են դրական արդյունք, ապա նա մոռացության է տվել օգնության այնպիսի ձևերը, ինչպիսիք են՝ ռեֆերատները, կոնսուլտացիաները և տեսական սեմինարները։ Հանքվարչության պարտիական կոմիտեն վերջերս քննության առավ քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողների հետ տարվող աշխատանքի հարցը և նշեց, որ այդ



գործում դեռևս կան լուրջ թերություններ։ Անհրաժեշտ օգնության և հսկողության բացակայության պատճառով կոմունիստներ Ս. Պապյանը, Բ. Գասպարյանը, Հ. Մարտիրոսյանը և մի քանի ուրիշ ընկերներ լրջորեն չեն զբաղվում իրենց տեսական մակարդակի բարձրացմամբ և քաղաքական պատրաստականության տեսակետից շատ ետ են մնում, որը, անկասկած, անդրադարձել է նրանց պրակտիկ աշխատանքի վրա։

Ամենից վատն այն է, որ ոչ ամենուրեք է, որ հսկողություն է սահմանված ինքնակրթությամբ զբաղվողների աշխատանքի նկատմամբ։ Շրջկոմի սկզբնական պարտիական կազմակերպությունը (քարտուղար՝ Ս. Ղոնյան) պարտիական լուսավորության ընթացիկ ուսումնական տարվա անցած ամիսներին ամենևին չի անդրադարձել ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստների հարցին։ Դրանով պետք է բացատրել, որ այդ կազմակերպությունում առանձին կոմունիստներ անբավարար են զբաղվում իրենց քաղաքական մակարդակը բարձրացնելու գործով։

Քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստներին սիստեմատիկ օգնություն ցույց տալը պարտիական լուսավորության կաբինետի առաջնահերթ պարտականությունն է։ Ճիշտ է, կաբինետը որոշ աշխատանք կատարել է ինքնակրթությամբ զբաղվողների հետ, նրանց համար կազմակերպել է դասախոսություններ, զեկուցումներ և կոնսուլտացիաներ։ Սակայն կաբինետի կատարած աշխատանքը դեռ անբավարար է, այն չի ապահովում կոմունիստների պահանջները։ Չի կարելի հանդուրժել այնպիսի դրություն, երբ ուսումնական ամբողջ տարվա ընթացքում չի ուսումնասիրվել և ընդհանրացվել որևէ պրոպագանդիստի, սեմինարի ղեկավարի կամ կոնսուլտանտի աշխատանքի լավագույն փորձը։

Թեորիական հարցերի խոր ուսումնասիրման համար հարկավոր է հաճախակի կազմակերպել տեսական կոնֆերանսներ։ Նման միջոցառման կիրառումը ավելի կբարձրացնի կոմունիստների պատասխանատվությունը. Նրանք կզգան, որ կոնֆերանսներում հանդես գալու համար հարկավոր է լրջորեն պատրաստվել, բազմակողմանիորեն ուսումնասիրել հանձնարարված թեման, կատարել կարդացածի համառոտ կամ ընդարձակ գրառում, օգտագործել տեղական փաստերը և այլն։ Մինչդեռ պարտիական կազմակերպությունները այս հարցին լուրջ ուշադրություն չեն դարձնում։ Այդ է պատճառը, որ պարտիական լուսավորության կաբինետում և մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններում մինչև այժմ ոչ մի թեորիական կոնֆերանս չի կազմակերպվել։

ՀԿՊ Ղափանի շրջկոմը և սկզբնական պարտիական կազմակերպությունները կարող են և պետք է արագորեն վերացնեն կոմունիստների ինքնուսուցման աշխատանքներում եղած թերությունները, լավ կազմակերպեն մարքսիստական-լենինյան թեորիայի ուսումնասիրման գործը։

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ՕՐԻՆԱԿԵԼԻ ԽՄԲԱԿ

*Կոմունիստների տնտեսական գիտելիքների մակարդակի բարձրացման ու կոլտնտեսային արտադրության մեջ նրանց ավանգարդային դերի ապահովման ուղղությամբ Շահումյանի շրջանի Ն. Զարբախ գյուղի Լենինի անվան կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունը դրական աշխատանք է կատարում։ Պարտիական բյուրոն սիստեմատիկաբար զբաղվում է կոմունիստների գաղափարական-քաղաքական ուսուցումը կազմակերպելու գործով։ Երկրորդ տարին է, որ այստեղ գործում է գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող խմբակը, որտեղ ընդգրկված են պարտիայի 25 անդամ և 5 անպարտիական ընկերներ։*

*Այդ խմբակի պրոպագանդիստն է կոլտնտեսության վարչության նախագահ Սուրեն Մովսիսյանը։ Նա մշտապես զբաղվում է իր տեսական-քաղաքական գիտելիքների խորացման գործով և լավ է ղեկավարում խմբակի աշխատանքները։ Խմբակն ունի նախօրոք մշակված թեմատիկ պլան, որտեղ ընդգրկված են կոլտնտեսության արտադրության պլանավորման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, գյուղատնտեսական արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսերի իջեցման, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության և այլ հարցեր։ Ընկ. Մովսիսյանը լրջորեն նախապատրաստվում է ամեն մի պարապմունքին, ուսումնասիրում հիմնական և օժանդակ գրականությունը, օգտագործում կոլտնտեսությունից վերցրած փաստերն ու տվյալները։ Նա պարապմունքներն անց է կացնում կենդանի զրույցի ձևով, որը բոլոր ունկնդիրներին հնարավորություն է տալիս մասնակցելու զրույցին, ցուցաբերելու մեծ ակտիվություն և խորապես յուրացնելու անցած նյութը։*

*Էկոնոմիկայի հարցերի բազմակողմանի ուսումնասիրությունը նպաստում է կոլտնտեսության արտադրության կազմակերպումը բարելավելու, կոմունիստների ավանգարդային դերը արտադրության մեջ բարձրացնելու, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործին։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսերի կրճատման ուղիների հարցը մշտապես գտնվում է ունկնդիրների և պրոպագանդիստի ուշադրության կենտրոնում։ Այս թեմայի ուսումնասիրությանը նվիրված պարապմունքը անցավ բարձր մակարդակով։ Պրոպագանդիստ Ս. Մովսիսյանը մանրամասն վերլուծության ենթարկեց թեման, այն կապելով կոլտնտեսության կողմից կիրառվող կոնկրետ միջոցառումների հետ։ Այդ պարապմունքը ունկնդիրներին մեծ չափով օգնեց լավ ըմբռնելու արտադրության ինքնարժեքի իջեցման ուղիները և նրանց հնարավորություն տվեց պրակտիկ աշխատանքում զգալի չափով իջեցնել բանջարեղենի ամեն մի ցենտների վրա կատարվող ծախսերը։ Այսպես, օրինակ, եթե 1955—1956 թվականներին ամեն մի ցենտներ բանջարեղենի արտադրության վրա ծախսվեց 2 աշխօրից ավելի, ապա 1957 թվականին ծախսվեց 1,42 աշխօր։ Առանձնապես մեծ չափով աճել է անասնաբուծական մթերքների արտադրությունը և զգալիորեն իջել են արտադրանքի մեկ միավորի ծախսերը։ Եթե 1954 թվականին մեկ կովի կաթնատվությունը եղել է 2438 կգ., իսկ մեկ ցենտներ կաթի արտադրության վրա ծախսվել է 3,50 աշխօր, ապա 1957 թվականին յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը կազմել է 3284 կգ. և մեկ ցենտներ կաթի արտադրության վրա ծախսվել է 2,41 աշխօր։*



*Խմբակի վերջին պարապմունքը նվիրված էր «Աշխատանքի կազմակերպումը և վարձատրությունը կոլտնտեսությունում» թեմայի ուսումնասիրությանը։ Պրոպագանդիստը նախօրոք մշակել էր զրույցի պլան, ընդգրկելով թեմայի հիմնական հարցերը։ Թեորիական հարցերը սերտորեն շաղկապվեցին կոլտնտեսությունից վերցրած կոնկրետ փաստերի հետ, և պարապմունքն անցավ չափազանց հետաքրքիր։ Պարապմունքին լավ էին նախապատրաստվել ունկնդիրներ Ս. Ալոյանը, Խ. Շարոյանը, Հ. Հարությունյանը, Կ. Համբարձումյանը և ուրիշներ։ Այս ընկերների ելույթները վկայում են, որ նրանք լավ հասկանալով հարցի թեորիական կողմը, կարողանում են ճիշտ վերլուծել կոլտնտեսային արտադրության կազմակերպման դրական և բացասական կողմերը։ Խոսելով գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մասին, ունկնդիր Խ. Շարոյանը կոնկրետ փաստերի հիման վրա ցույց տվեց այն հաջողությունները, որ այգեգործության բնագավառում ձեռք է բերել Զարբախի կոլտնտեսությունը։ Այդ հաջողությունների հիմնական պատճառը եղել է այգեգործական աշխատանքների մեքենայացումը, որը մեծ չափով նպաստել է արտադրանքի մեկ միավորի ինքնարժեքի իջեցմանը։ Մինչև 1957 թվականը այգիների փորը կատարվում էր ձեռքով, մեկ հեկտարի վրա ծախսվում էր 60 աշխօր և մեկ հեկտարից ստացվում էր միայն 40 ցենտներ բերք։ Իսկ 1957 թվականին, երբ այգիների միջշարային վարը կատարվեց տրակտորով և մեկ հեկտար վարին ծախսվեց միայն 40 աշխօր, միջին բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից կազմեց 112 ցենտներ։ Պարապմունքին ելույթ ունեցավ նաև Հ. Հարությունյանը, որը պատմեց սոցիալիստական մրցության մասին։*

*Խմբակի պարապմունքների ժամանակ կոնկրետ օրինակներով ցույց տըրվեց, որ աշխատանքի ճիշտ կազմակերպման և անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման շնորհիվ զգալիորեն բարձրացել է անասունների մթերատվությունը։ Այսպես, օրինակ, կոլտնտեսությունում մեկ անասնապահ խնամում էր 10 կով, իսկ մեկ կթվոր կթում էր 7 կով, ներկայումս, աշխատանքի մեքենայացման շնորհիվ 4 անասնապահ խնամում է 110 կով, իսկ մեկ կթվոր կթում է 13 կով։*

*Խմբակում ստացված գիտելիքները մեծ չափով նպաստում են կոլտնտեսային ղեկավար կադրերի զարգացմանը. դրանում կարելի է համոզվել թեկուզ հետևյալ փաստով։ Խմբակի ունկնդիր, բրիգադավար Խ. Շարոյանը իր տնտեսական գիտելիքների բարձրացման շնորհիվ այժմ ավելի կոնկրետ է ղեկավարում բրիգադայի աշխատանքները և ավելի խոր թափանցում կոլտնտեսային արտադրության մեջ։ Դրա մասին է վկայում այն, որ անցած գյուղատնտեսական տարում նրա ղեկավարած բրիգադայի մշակած 14 հեկտար բանջարեղենի տարածության յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսված 205 ցենտների փոխարեն ստացվեց 255 ցենտներ բերք, իսկ 15 հեկտար հացահատիկի տարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 32 ցենտներ։*

*Նշված փաստերը ցույց են տալիս, որ սոցիալիստական էկոնոմիկայի հարցերի հետևողական ուսումնասիրությունը կոմունիստների և բոլոր կադրերի համար կենսական անհրաժեշտություն է, այն նպաստում է արտադրության կոնկրետ և գործիմաց ղեկավարմանը, օգնում է կոլտնտեսության ղեկավար աշխատողներին՝ խոր կերպով տիրապետելու իրենց գործին, հարստացնելու իրենց տնտեսական գիտելիքները, կուտակելու ղեկավարման փորձ։*

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

## «ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ XIX ԴԱՐՈՒՄ»

*Վերջին ժամանակներս Հայաստանի տնտեսական զարգացման պատմության վերաբերյալ լույս են ընծայվել պրոֆ. Վ. Ա. Ռշտունու* «Крестьянская реформа в Армении в 1870 году», *պրոֆ. Հ. Ե. Թումանյանի* «Экономическое развитие Армении за период 1828—1920 гг» *աշխատությունները, իսկ նորերս ռուսերեն լեզվով լույս տեսավ նաև տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ Մ. Հ. Ադոնցի* «Экономическое развитие Восточной Армении в XIX веке» *մեծածավալ աշխատությունը։*

*Անդրկովկասի ժողովուրդների, հատկապես հայ ժողովրդի համար XIX դարը կարևորագույն նշանակություն ունեցավ, քանի որ այդ դարի սկզբին տեղի ունեցավ Արևելյան Հայաստանի միավորումը Ռուսաստանի հետ, որն իրենից ներկայացնում է պատմական խոշոր նշանակություն ունեցող փաստ նրա տնտեսական, սոցիալական զարգացման համար։ Այդ պատճառով պատահական չէ, որ հայ ժողովրդի անցյալը, մանավորապես նրա տնտեսական զարգացումն ուսումնասիրողներն առանձնակի ուշադրություն են դարձնում XIX դարի վրա։ Այդ դարին է նվիրված նաև Մ. Ադոնցի աշխատությունը։*

*Գրախոսվող աշխատությունը բաղկացած է երեք հատվածից՝ ա) «Արևելյան Հայաստանի էկոնոմիկան պարսկական տիրապետության վերջին շրջանում», բ) «Արևելյան Հայաստանի տնտեսական զարգացումը Ռուսաստանի հետ նրա միավորումից հետո մինչև 1870 թվականի գյուղացիական ռեֆորմը», գ) «Կապիտալիզմի զարգացումը Հայաստանում գյուղացիական ռեֆորմից մինչև XIX դարի վերջն ընկած ժամանակաշրջանում»։*

*Աշխատության այդպիսի ստորաբաժանումը օրինական և ճիշտ պետք է համարել, քանի որ այն համապատասխանում է պատմական փաստական զարգացմանը։*

*Հեղինակն իր աշխատության ներածության մեջ ճիշտ է նշում, որ «Հայաստանի տնտեսական զարգացման պատմությունը, հատկապես Ռուսաստանի հետ նրա միավորումից հետո, կազմում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պատմության անբաժան մասը» (էջ 5) և այդ պատճառով Հայաստանի տնտեսական զարգացման պատմությունը նա կապում է Ռուսաստանի և ողջ Անդրկովկասի տնտեսական զարգացման հետ։ Հայաստանը 1828 թվականից կազմում էր ռուսական իմպերիայի մի մասը, հետևաբար նրա տնտեսական զարգացման օրինաչափությունները հիմնականում նույնն էին, ինչ որ Ռուսաստանի և Անդրկովկասի այլ մասերի տնտեսական և սոցիալական զարգացման օրինաչափությունները, չնայած, որ Հայաստանի տնտեսական զարգացումը անկասկած ուներ իր առանձնահատկությունները։ Այդ պատճառով չի կարելի համաձայնել Մ. Ադոնցի հետ, երբ նա ասում է, թե «մենք մեր աշխատության մեջ աշխատել ենք ցույց տալ ոչ այնքան այն, ինչ ընդհանուր է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների համար, որքան այն, ինչ որ առանձնակի, սպեցիֆիկ է Հայաստանի տնտեսական զարգացման համար» (էջ 5—6)։ Հենց տվյալ աշխատության մեջ արված եզրակացությունները հերքում են նրա այդ թեզը, քանի որ նա ցույց է տալիս ֆեոդալական և կապիտալիստական կարգերի համար բնորոշ հիմնական գծերը իրենց սպեցիֆիկ, կոնկրետ արտահայտությամբ Հայաստանի պայմաններում։ Ոչ տեղին պետք է համարել նաև հեղինակի այն միտքը, թե տվյալ աշխատության հիմնական խնդիրներից մեկն է՝ ուսումնասիրել Հայաստանում «ֆեոդալիզմի կազմալուծման և կապիտալիզմի ծագման ու զարգացման պրոցեսը ժամանակագրական հետևողականությամբ» (էջ 7)։ «Ժամանակագրական հետևողականությունը» ճիշտ կլինի քաղաքացիական պատմության ուսումնասիրության դեպքում, բայց ոչ տնտեսական պրոցեսների ուսումնասիրության համար։*

*Մ. Ադոնցը նշում է Անդրկովկասը Ռուսաստանի հետ միավորվելու պատմական կարևոր նշանակությունը որպես շրջադարձ Անդրկովկասի ժողովուրդների պատմական բախտում, հայ ժողովրդի ֆիզիկական բնաջնջման վտանգից ազատումը, նրա կոնսոլիդացիայի, խաղաղ ստեղծագործական կյանքի համար, ռուս ժողովրդի պրոգրեսիվ կուլտուրայի բարերար ազդեցությունը հայ ժողովրդի կուլտուրայի, հասարակական մտքի զարգացման վրա։ Վերլուծելով հայ ժողովրդի սարսափելի ծանր կացությունը պարսկական տիրապետության պայմաններում, նա ցույց է տալիս հայ ժողովրդի դրության համեմատական լավացումը՝ Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելուց հետո, չնայած հայ ժողովրդի նկատմամբ ռուսական ցարիզմի գաղութարարական քաղաքականությանը։*



*Աշխատության առաջին մասում հեղինակը քննության առնելով Հայաստանի հասարակական և քաղաքական կարգը XVIII դարի վերջին և XIX դարի սկզբին, անցնում է պարսկական տիրապետության ժամանակ Հայաստանի տնտեսական դրության և, առաջին հերթին, ագրարային հարաբերությունների հարցի քննարկմանը։ Այստեղ առանձնակի նշանակություն ունի հողային սեփականության ձևերի գնահատման հարցը, որը տարբեր կերպ է բացատրվել ոչ միայն մինչ-ռևոլյուցիոն շրջանի ուսումնասիրողների, այլ որոշ չափով նաև սովետական գիտնականների կողմից։ Հարցն այն է, թե պարսկական տիրապետության օրոք Հայաստանում գոյությու՞ն է ունեցել հողի մասնավոր սեփականություն, թե ոչ։ Նախառևոլյուցիոն շրջանի մի շարք ուսումնասիրողներ (Շոպեն, Կուչաև, Իվանենկո, Ա. Երիցյան և մյուսներ) այն տեսակետն են հայտնել, որ պարսկական տիրապետության պայմաններում հողի մասնավոր սեփականություն չի եղել, այլ հողն իրավականորեն պատկանել է պարսկական պետությանը, հանձին շահի։ Մ. Ադոնցը փաստական արխիվային և այլ տվյալների հիման վրա գալիս է այն ճիշտ եզրակացության, որ Երևանի խանությունում և Անդրկովկասի մյուս իրանական տիրապետություններում գոյություն է ունեցել հողի մասնավոր սեփականություն, որի բացահայտ արտահայտումն էր հողի առ ու ծախը, որի մասին հեղինակը բերում է շատ փաստեր։*

*Այդ հարցի կապակցությամբ սկզբունքորեն ճիշտ պետք է համարել հեղինակի կողմից նշված տարբերումը հողի «տիրապետման» և «սեփականության» հասկացությունների միջև, քանի որ հողի տիրապետումը (օգտագործումը) դեռ չի նշանակում նրա սեփականատերը լինել։*

*Կասկածանքի տակ առնելով ըստ սեփականության ձևերի հողի բաշխման վերաբերյալ Շոպենի տվյալները, Մ. Ադոնցը, ելնելով բնուչաների (հարկադրման միավոր) քանակից, տալիս է այլ տվյալներ։ Այդ նոր մեթոդով հաշվարկելու հետևանքով ստացվում է, որ բոլոր հողերի 1/3-ից ավելին կազմում էին մյուլքադարների և թիուլականների, այդ թվում նաև վանքապատկան հողերը։*

*Հեղինակը փաստերի հիման վրա ցույց է տալիս, որ չնայած Պարսկաստանում և Հայաստանում իրավականորեն գոյություն չունեին ճորտատիրական հարաբերություններ, սակայն փաստորեն գոյություն ունեին «ճորտատիրության տարրերը», գյուղացիների մի տեղից մյուս տեղը փոխադրվելու անազատությունը, արտատնտեսական հարկադրանքը։ Սակայն, ի տարբերություն իրավականորեն ճորտատիրություն ունեցող երկրների, այստեղ «գյուղացիների հիմնական մասսան ամրացված էր ոչ թե առանձին ֆեոդալների հողերին, այլ ամեն մի խանության տերիտորիային, ավելի ճիշտ՝ որոշակի հարկերին և պարհակներին»։ Ճորտատիրության իրավական բացակայման պայմաններում գյուղացիների տնտեսական վիճակը, նրանց կողմից մյուլքադարներին, թիուլականներին, վանքերին և Երևանի խանին տրվող բոլոր տուրքերը, հարկերը և պարտավորությունները փաստորեն ավելի ծանր էին, քան պաշտոնապես ճորտատիրություն ունեցող երկրներում։ Հենվելով Շոպենի տվյալների վրա, հեղինակը ցույց է տալիս, որ Հայաստանում պարսկական տիրապետության ժամանակ գոյություն ունեին մոտ 40 տարբեր տեսակի հարկեր, տուրքեր և պարտավորություններ։ Մ. Ադոնցը մանրամասն կերպով քննության է առնում կալվածատերերի և գյուղացիների փոխհարաբերությունները, ֆեոդալական ռենտայի ձևերը, երբ հողային ռենտան, պետական տուրքերը, նույն թվում նաև պարտույթները «կլանում էին հարկատու բնակչության աշխատանքով ստեղծված համախառն եկամտի կեսից ավելին» (էջ 78), այսինքն՝ գյուղացիների ոչ միայն հավելյալ աշխատանքը, այլև անհրաժեշտ աշխատանքի մի մասը (էջ 91)։ Եղած տվյալների հիման վրա հեղինակը կազմել է Հայաստանի բնակչության սոցիալական կազմի վերաբերյալ աղյուսակը, ըստ որի գյուղացիները կազմում էին ամբողջ բնակչության 89,2 տոկոսը, արհեստավորները՝ 4,7, խոշոր հողատերերը՝ 1,9, հոգևորականությունը՝ 3,2, վաճառականները և այլն՝ 1,0 տոկոսը (էջ 86)։*

*Ինչպես արդեն ասված է, իր աշխատության երկրորդ բաժնում Մ. Ադոնցը քննության է առնում Արևելյան Հայաստանի տնտեսական զարգացման հարցը՝ Ռուսաստանի հետ նրա միավորումից հետո մինչև 1870 թվականը։ Հեղինակը մանրամասն կերպով (գուցե ավելի, քան դա անհրաժեշտ էր տվյալ աշխատության համար) քննության է առնում ցարական կառավարության վարչական քաղաքականությունը Հայաստանում, ընդ որում նա առարկում է Ի. Պետրուշևսկուն, Վ. Ռշտունուն և Վ. Պարսամյանին, նշելով, որ Անդրկովկասում կենտ-*

բռնացված ռուսական վարչություն ստեղծելու մասին Գանի ռեֆորմը մի քայլ առաջ էր խանական իրավակարգի համեմատությամբ և այն չի կարելի «գնահատել միայն որպես ռեակցիոն ակտ, քանի որ միաժամանակ նա ուղղված էր խանական իրավակարգի դեմ» (էջ 105)։ Մենք կարծում ենք, որ հեղինակը ճիշտ է նաև այս հարցում։

Գրքում ապա քննության է առնվում ռուսական ցարիզմի տնտեսական քաղաքականությունը Անդրկովկասում 1840—1850 թթ., հատկապես այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ ցարիզմի մաքսային քաղաքականությունը Անդրկովկասում և ռուսական կապիտալի առաջին փորձերը (հիմնականում անհաջող)՝ տնտեսապես «յուրացնելու» Անդրկովկասը։ Պետք է նշել, որ հեղինակի բարձրացրած այդ հարցերը մեր համապատասխան գրականության մեջ մինչև այժմ մշակված չէին։ Հեղինակը փաստերով ցույց է տալիս այն պայքարը, որ տեղական առևտրականները մղում էին օտարերկրյա առևտրական կապիտալի արտոնյալ մաքսային տարիֆի դեմ և ռուսական կապիտալի մի շարք փորձերը՝ իր ձեռքը գցելու Անդրկովկասի առևտուրը և ստեղծելու առաջին արդյունաբերական ձեռնարկությունները Անդրկովկասում։

Չնայած ցարիզմի գաղութարարական քաղաքականությանը, ագրարային հարցի չլուծվածությանը, Հայաստանի գյուղատնտեսությունը զգալիորեն զարգացավ (սակայն ոչ այնքան տեխնիկայի, որքան ցանքային տարածությունների, անասունների գլխաքանակի ավելացման տեսակետից)։ Այսպես, եթե Հայաստանում բոլոր դաշտային կուլտուրաների ցանքատարածությունը 1829 թվականին կազմում էր 87.000 հեկտար, ապա 1870 թվականին այն հասավ մինչև 213.170 հեկտարի (աճը կազմում է մոտ 244 տոկոս)։ Սակայն այդ նույն ժամանակաշրջանում ցորենի բերքատվությունը բարձրացավ միայն 36 տոկոսով, իսկ գարունը՝ 16 տոկոսով։ Նշանակալի չափով աճեց նաև անասունների գլխաքանակը։ Հեղինակի հաշվարկումներով գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճը 1870 թվականին (1870 թ. գներով), 1829 թվականի համեմատությամբ կազմեց 167 տոկոս (էջ 170)։ Սակայն քիչ հետո, նույն էջի վերջում հեղինակը գրում է, որ «Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելուց հետո, 40 տարվա ընթացքում գյուղատնտեսության համախառն արտադրանքն աճեց 2,7 անգամ»։ Հասկանալի է, որ այդ երկու թվերը միմյանցից մեծ չափով տարբերվում են և կարոտ են ճշտման։

Պարսկական տիրապետության տարիներին չափազանց ետ էր Հայաստանի արդյունաբերությունը. ոչ միայն բացակայում էին իսկական իմաստով ֆաբրիկա-գործարանային ձեռնարկություններ, այլ բացակայում էին նաև մանուֆակտուրային և, նույնիսկ, պարզ կոոպերացիայի տիպի արդյունաբերական արհեստանոցներ։ «Աշխատանքի կոոպերացումը ջուլհակագործական զբաղմունքի մեջ,— ասում է Ադոնցը,— կիրառվում էր միայն ընտանիքի շրջանակներում» (էջ 173)։

XIX դարի 60-ական թվականներից Հայաստանի արդյունաբերության մեջ մենք արդեն տեսնում ենք նաև ավելի խոշոր ձեռնարկություններ, որոնք միջին թվով ունեին մի քանի վարձու բանվորներ։ Հասկանալի է, որ «միջին թվերը» իրական պատկերը չեն տալիս, որովհետև կային ձեռնարկություններ, որոնք ունեին համեմատաբար մեծ թվով բանվորներ։ Այսպես, օրինակ, 1865 թվականին ներկարարական ամեն մի ձեռնարկությանը ընկնում էր մոտ 20 բանվոր, պղնձաձուլական, մետաքսամանման ձեռնարկություններին՝ 70-ական բանվոր, աղահանքերին՝ 153 բանվոր և այլն (էջ 182)։ Հետևաբար մենք տեսնում ենք, որ արդյունաբերության որոշ ճյուղերում արդեն անցում է կատարվում մանր արհեստավորական տնտեսությունից վարձու աշխատանքի վրա հիմնված կապիտալիստական ձեռնարկություններին։ Սակայն դրանք հիմնականում ձեռքի աշխատանքի վրա հիմնված կապիտալիստական պարզ կոոպերացիայի և մանուֆակտուրային տիպի տնտեսություններ էին, ոչ թե մեքենայական տեխնիկա ունեցող ֆաբրիկա-գործարանային ձեռնարկություններ։

Հեղինակը փաստերով ցույց է տալիս արդյունաբերության առանձին ճյուղերի (աղի, պղնձի և այլն) արտադրանքի աճը։ Այսպես. 1857 թվականից մինչև 1870 թվականը պղնձի արտադրանքը 6460 փթից հասել էր մինչև 13,179 փութ (էջ 195)։

Հայաստանի ժողովրդական տնտեսության վերը նշված որոշ վերելքի հիման վրա հեղինակը ցույց է տալիս նաև ապրանքաշրջանառության աճը։

Աշխատության հաջորդ գլխում քննության են առնվում գյուղացիների վիճակը և գյուղացիական շարժման հարցերը։ Հեղինակը այստեղ կանգ է առնում սկզբունքորեն կարևոր նշանակություն ունեցող այն հարցի վրա, թե արդյոք Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելուց հետո լավացա՞վ հայ ժողովրդի, հատկապես նրա հիմնական մասի՝ գյուղացիության տնտեսական վիճակը թե՞ ոչ։ Հայտնի է, որ սովետահայ գիտնականներից ոմանք (պրոֆ. Վ. Ռշտունին և մյուսները) այն կարծիքն են արտահայտել, որ զանազան տուրքերի աճի



հետևանքով տեղի է ունեցել աշխատավորների դրության վատթարացում։ Այդ տեսակետը ավելի ցայտուն ու որոշակիորեն է արտահայտել Բ. Բորյանը, որը ուղղակիորեն ասում է, թե «հայերի վիճակը Ռուսաստանի իշխանության տակ չլավացավ, այլ վատթարացավ» (տե՛ս «Армения», մասն I, էջ 170)։ Մ. Ադոնցը տեղին և ճշտորեն առարկում է այդ սխալ տեսակետի դեմ, ասելով, որ «այդ պնդումը չի համապատասխանում պատմական իրականությանը» (էջ 232)։ Գրախոսվող գրքում հայ ժողովրդի տնտեսական կյանքի զարգացման մասին բերված փաստական տվյալները ցույց են տալիս նրա դրության լավացումը՝ պարսկական տիրապետության ժամանակաշրջանի համեմատ։

Ապա ցույց են տրվում գյուղացիական շարժումները Հայաստանում մինչև 1870 թվականները։ Հեղինակը փաստական հարուստ նյութով ցույց է տալիս, որ գյուղացիական ռեֆորմի նախօրերին նկատվում է գյուղացիական շարժման որոշ ակտիվացում և ուժեղացում նաև Հայաստանում, թեպետև ավելի փոքր մասշտաբներով, քան դա տեղի ուներ Ռուսաստանում և Վրաստանում։

***

Աշխատության վերջին և ամենագլխավոր մասն է «Կապիտալիզմի զարգացումը Հայաստանում գյուղացիական ռեֆորմից հետո մինչև XIX դարի վերջն ընկած ժամանակաշրջանում»։

Մ. Ադոնցը ճիշտ է վարվել իր աշխատության մեջ քննության առնելով նաև կապիտալի նախասկզբնական կուտակման հարցը Հայաստանում, որպես անհրաժեշտ նախադրյալ կապիտալիստական արտադրաեղանակի առաջացման համար։ Այս հարցը նա քննարկում է իր աշխատության «Կապիտալիզմի զարգացումը արդյունաբերության մեջ» գլխում, մինչդեռ նպատակահարմար կլիներ այն քննել մինչև գյուղացիական ռեֆորմի հարցերի քննարկումը, քանի որ գյուղացիական ռեֆորմը ինքը հանդիսացավ նախասկզբնական կուտակման պրոցեսի մյուս, երկրորդ կողմը։

Կապիտալի նախասկզբնական կուտակումը Անդրկովկասում և, մասնավորապես, Հայաստանում, տեղի ուներ գյուղացիական ռեֆորմից առաջ՝ առևտրի, վաշխառության, կապալների, զորքի մատակարարումների միջոցով։ Հայաստանում կապիտալների քչության գլխավոր պատճառներից մեկն էլ, ինչպես ճիշտ նշվում է գրքում, այն էր, որ «հայկական կապիտալը տեղավորված էր գլխավորապես բուն Հայաստանի տերիտորիայից դուրս», Թիֆլիսում, Բաքվում և այլն (էջ 407)։ Հայաստանում կապիտալի նախասկզբնական կուտակման հարցի քննարկման կապակցությամբ հեղինակը ասում է, որ դրամական կապիտալների կուտակումը տեղի էր ունենում «համարյա թե բացառապես ներքին շուկայի հաշվին» (էջ 405), որ Հայաստանը ինքը գաղութային շահագործման ենթարկվելով, «բոլորովին չգիտեր «նախասկզբնական կուտակման» այնպիսի աղբյուրներ, ինչպիսիք են գաղութային քաղաքականությունը և գաղութային առևտուրը» (նույն տեղ)։ Այս թեզը, մեր կարծիքով, կարիք ունի ճշտման։ Ադոնցը. ինքն է ցույց տալիս Հայաստանի արտաքին առևտրի դերը և չափերը, որ հայ վաճառականներին մեծամեծ օգուտներ էր տալիս։ Այդ առևտուրը կատարվում էր նաև Արևելքի ավելի հետամնաց երկրների հետ։ Հետևաբար, արտաքին առևտրում, անկասկած, գոյություն ուներ նաև ոչ համարժեքային (էկվիվալենտային) առևտուր։

Գյուղացիական ռեֆորմը Հայաստանում նույնպես իրագործվեց հօգուտ կալվածատերերի, որոնց ձեռքում մնաց ամենալավ հողերի $1/3$-ը, որը հետագայում նրանք կապալով տալիս էին գյուղացիներին և դրանով փաստորեն տնտեսականորեն պահպանում ֆեոդալական հարաբերությունները։ Ռեֆորմից հետո գյուղացիների պարհակները մնում էին ուժի մեջ, որոնք կրում էին ֆեոդալական բնույթ և կլանում գյուղացիների ոչ միայն հավելյալ արդյունքը, այլև անհրաժեշտի մի մասը։ Այսպիսով, ֆեոդալական հարաբերությունների փաստական առկայությունը 1870 թվականի ռեֆորմից հետո ծանր տնտեսական վիճակ ստեղծեց գյուղացիության համար և խանգարում էր կապիտալիզմի զարգացումը։

Աշխատության 10-րդ գլխում քննարկվում է Հայաստանի գյուղատնտեսության մեջ կապիտալիզմի զարգացման հարցերը։ Գյուղացիական ռեֆորմը, չնայած նրա աղճատ բնույթին, բայց և այնպես նախապայմաններ ստեղծեց կապիտալիզմի զարգացման համար ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ արդյունաբերության մեջ։ Հեղինակը ֆեոդալական խոշոր տնտեսությունների բացակայումով է բացատրում այն, որ Հայաստանի գյուղատնտեսության մեջ կապիտալիզմի զարգացումը պրուսական ուղու ճիշտ օրինակը չէր, այլ այն զարգանում էր կուլակային տնտեսության գծով (էջ 325 և 400)։ Սակայն պետք է ասել, որ Անդրկովկասում և, մասնավորապես, Հայաստանում կապիտալիստական ֆերմերական տիպի տնտեսությունները հազվագյուտ չէին։ Հայաստանում կապիտալիստական ֆերմերական տիպի տնտեսություն էր աշխատության մեջ նկա-

րագրված Կախանովի և Շան-Գիրեյի տնտեսությունը Արագդայանի դաշտում։ Հեղինակը ճիշտ է բնորոշում այդ տնտեսության սոցիալական բնույթը, ասելով, որ մենք այստեղ տեսնում ենք «կապիտալիստական ձևով վարվող տնտեսության զարմանալի (?) զուգակցումը ֆեոդալականի հետ, որում տիրապետում է կապիտալիստական տարրը» (էջ 337)։

Ըստ Ս. Զավարյանի հաղորդման, XIX դարի վերջերին Հայաստանի գյուղատնտեսության մեջ կային խոշորագույն տնտեսություններ. «Ես հանդիպել եմ,— ասում է նա,— տասնյակ հազար ռուբլի կապիտալով գյուղացի-հարուստների, որոնց մոտ ցանքսի մեջ էին 1000, 2000 և նույնիսկ 6000 փութ հացահատիկ (80, 160, 500 դեսյատին)» (տե՛ս С. Заваров, «Опыт исследования сельского хозяйства», էջ 281)։ Հասկանալի է, որ այդպիսի մեծ ցանքային տարածություն ունեցող տնտեսությունները կարող էին լինել ոչ միայն կուլակային, այլ նաև վարձու աշխատանքի վրա հիմնված կապիտալիստական ֆերմերական խոշոր տիպի տնտեսություններ։ Հետևաբար Անդրկովկասում և, մասնավորապես, Հայաստանում կապիտալիզմը գյուղատնտեսության մեջ չէր զարգանում միայն կուլակային տնտեսությունների ձևով, այլ մասամբ կապիտալիստական ֆերմերական տնտեսությունների ձևով։

Կապիտալիզմի զարգացումը գյուղատնտեսության մեջ, ինչպես ճշտորեն ասում է Ադոնցը, երկկողմանի պրոցես է։ «Ապամիջականացման» հետևանքով, մի կողմից, նա առաջ է բերում գյուղական բուրժուազիա, իսկ մյուս կողմից՝ գյուղացիների մեծ մասին նետում պրոլետարիատի շարքը։ Այս կապակցությամբ հեղինակն այն միտքն է հայտնում, որ համայնական հողատիրությունը հակազդում էր գյուղական բուրժուազիայի ձեռքում հողի կենտրոնացմանը և դրանով իսկ «դանդաղեցնում էր գյուղացիության քայքայման պրոցեսը և կապիտալիզմի զարգացումը գյուղատնտեսության մեջ» (էջ 329)։ Այս թեզը, ակներև սխալ է։

Լենինը բազմիցս նշել է. «Հակառակ այն թեորիաների, որոնք վերջին կես դարում տիրապետող են եղել մեզ մոտ, ռուսական համայնական գյուղացիությունը ոչ թե կապիտալիզմի հակոտնյան է, այլ ընդհակառակն, նրա ամենախոր և ամենահաստատուն հիմքն է» (Երկեր, հ. 3, էջ 200)։ Այլ կերպ, համայնական հողատիրությունը չէր խանգարում, նույնիսկ դանդաղեցման իմաստով, կապիտալիզմի զարգացմանը, որն անխուսափելիորեն տանում էր համայնքի քայքայման։

Գյուղատնտեսության մեջ կապիտալիզմի զարգացման ցուցանիշներն են՝ հողի կենտրոնացումը ունևորների, կուլակների ձեռքում, հողի վարձակալության աճը, վարձու աշխատանքի կիրառումը, գյուղացիության շերտավորումը և արտագնացության աճը։ Հայաստանի գյուղատնտեսության մեջ այդ տնտեսական պրոցեսները համապատասխանորեն բացատրված են Մ. Ադոնցի կողմից։ Հեղինակը մասնավորապես ճիշտ է նշում հողի վարձակալության երկու տիպը—հողի վարձակալումը ունևոր և չքավոր գյուղացիների կողմից, որը կատարվում էր տարբեր պատճառներով և տարբեր տնտեսական նպատակով։ Նրա տվյալներից պարզվում է, որ վարձակալությամբ տրված հողերի 71 տոկոսը կազմում էր գյուղական բուրժուազիայի բաժինը, իսկ 29 տոկոսը՝ գյուղական բնակչության $^{4}/_{5}$ մասը կազմող աշխատավոր գյուղացիության բաժինը (էջ 340)։

Անցնելով առևտրական և վաշխառուական կապիտալի դերին գյուղի շերտավորման պրոցեսում, հեղինակը ասում է, որ առևտրական և վաշխառուական կապիտալի քայքայիչ գործունեությունը առաջ էր բերում արդյունաբերական կապիտալ, ֆեոդալական արտադրաեղանակը վեր էր ածվում կապիտալիստականի (էջ 341)։ Մինչդեռ Վ. Ի. Լենինը գրել է. «առևտրային և վաշխառուական կապիտալի ինքնուրույն զարգացումը մեր գյուղում կասեցնում է գյուղացիության քայքայումը» (Երկեր, հ. 3, էջ 217), այսինքն՝ կապիտալիզմի զարգացումը գյուղատնտեսության մեջ։ Վ. Ի. Լենինի այդ եզրակացությունը պետք է հասկանալ այն իմաստով, որ առևտրական և վաշխառուական կապիտալը քամելով գյուղացիական տնտեսությունների եկամուտները, դժվարացնում էին նրանց մի մասի անցումը ունևորների շարքը։ Հեղինակն իր աշխատության մեջ բերում է իր ժամանակ աղմուկ հանած Մաղաք Պետրոսյանի հոդվածները վաշխառության մասին Ղազախի գավառում, որտեղ, օրինակ, Կոթի գյուղում 200 գյուղացիական տնտեսություններից միայն երեքն էին ազատ պարտքից, իսկ մնացածները թաղված էին պարտքերի մեջ։ Իհարկե, այս դեպքում վաշխառուական կապիտալը (որը հաճախ զուգակցվում էր առևտրական կապիտալի հետ) դանդաղեցնում էր գյուղի շերտավորումը, գյուղացիներին պահելով համարյա թե միևնույն տնտեսական մակարդակի վրա։ Գյուղացիության շերտավորման հիմնական ցուցանիշը վարձու աշխատանքի կիրառումն է։ 1897 թվականին Հայաստանի գյուղացիական տնտեսությունների միայն 3,5 տոկոսը ունեին մշտական բանվորներ, այդ տոկոսը ավելի բարձր էր Արարատյան հարթավայրում (6,8 տոկոս)։ Հայաստանի գյուղատնտեսության մեջ XIX դարի վերջում վարձու բանվորները կազմում էին մոտ 40—45 հազար, որի $^{4}/_{5}$ սեզոնային բանվորներ էին։



Մի շարք տվյալների հիման վրա հեղինակը տալիս է Հայաստանի գյուղացիության սոցիալական պատկերը XIX դարի վերջին (էջ 364)։ Այդ աղյուսակում ցույց է տրված «ունևորների» խումբը. դա անորոշ է, քանի որ դրա տակ հասկացվում են ինչպես ունևորները (ոչ կուլակները), այնպես էլ կուլակները։ Սակայն Ադոնցը «ունևորների» այդ ամբողջ խումբը դասում է կուլակների շարքը։ Աշխատության 382-րդ էջում նա ուղղակիորեն ասում է, որ XIX դարի վերջին կուլակային տնտեսությունները կազմում էին գյուղացիական բոլոր տնտեսությունների 13—14 տոկոսը։ Սա, իհարկե, Հայաստանի պայմանների համար չափազանցություն է։ Հեղինակն ինքն է նշում, որ «գյուղացիների շերտավորումը Ռուսաստանում ավելի ուժեղ արտահայտված բնույթ ուներ, քան Հայաստանում» (էջ 364)։ Չէ՞ որ ինքը Ադոնցն է ցույց տալիս, որ այդ ժամանակաշրջանում Հայաստանի գյուղատնտեսության մեջ մշտական վարձու բանվորներ ունեցող տնտեսությունները կազմում էին միայն 3,5 տոկոսը. ինչպե՞ս դա համաձայնեցնել 13—14 տոկոս կուլակության հետ։

Գյուղացիության շերտավորումը բացահայտորեն երևում է նաև գյուղական բյուջեների՝ հեղինակի կողմից վերլուծումից, գյուղացիության շերտավորման պրոցեսն է ցույց տալիս նաև չքավոր գյուղացիների արտագնացությունը։ XIX դարի 90-ական թվականներին Երևանի նահանգից տարեկան աշխատանքի էր դուրս գնում 12.000—15.000 մարդ։

Մ. Ադոնցը ճիշտ է վարվել իր աշխատության մեջ քննության առնելով Հայաստանի կապիտալիստական արդյունաբերության ձևերի, նրա զարգացման ստադիաների հարցը և այն կապել է Հայաստանում արդյունաբերական հեղաշրջման հետ։ Հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես կապիտալիստական արդյունաբերության հետ ունեցած մրցման հետևանքով դեպի իրենց անկումն էին գնում արհեստավորական տնայնագործական զբաղմունքները։ Նա նշում է, որ Հայաստանի հետռեֆորմյան արդյունաբերության մեջ մեծ տեսակարար կշիռ ուներ մանուֆակտուրային արտադրությունը, մասնավորապես պղնձի արդյունաբերությունը գտնվում էր զարգացման մանուֆակտուրային աստիճանում՝ ձեռքի աշխատանքի հիման վրա, բայց զարգացած աշխատանքի բաժանումով (էջ 440—441)։ Մանուֆակտուրային աստիճանի վրա էին գտնվում նաև թեթև ու սննդի արդյունաբերության շատ ձեռնարկություններ։ «Կապիտալիստական մանուֆակտուրային շրջանը տևեց ոչ երկար,— ասված է գրքում,— ընդամենը 2—3 տասնամյակ, որից հետո Հայաստանի արդյունաբերությունը սկսեց անցնել մեքենական խոշոր արտադրության ստադիային» (էջ 441)։ Սակայն հեղինակը համարյա թե ոչինչ չի ասում մանուֆակտուրային նախորդող կապիտալիստական պարզ կոոպերացիայի մասին։ Արդյոք այն բացակայո՞ւմ էր Հայաստանում։ Ո՛չ, դրա համար հիմք չկա։ Այն մանր արհեստանոցները, որոնք միջին թվով ունեին մի քանի բանվորներ, բայց առանց աշխատանքի բաժանման, իրենցից ներկայացնում էին կապիտալիստական պարզ կոոպերացիայի տիպի տնտեսություններ։ Հեղինակը ճիշտ է, երբ ասում է, թե Հայաստանում մանուֆակտուրային (և պարզ կոոպերացիայի) ստադիան կարճատև եղավ, սակայն նա փաստորեն դրա բացատրությունը չի տալիս։ Այդ փաստը, իհարկե, պետք է բացատրել Հայաստանի տնտեսական զարգացման առանձնահատկությամբ։

Հեղինակը խոսում է կապիտալիզմի՝ խորությամբ և լայնությամբ զարգացման մասին, նշելով Ռուսաստանի կապիտալիստական հարաբերությունների «լայնությամբ» զարգացման պրոգրեսիվ մեծ նշանակությունը ազգային ծայրամասերի համար։ Սակայն դրա հետ միասին հեղինակը պետք է ցույց տար այդ երևույթի հակասական կողմը՝ կապված ցարիզմի գաղութարարական քաղաքականության, ազգային ծայրամասերը կենտրոնական Ռուսաստանի արդյունաբերության համար ագրարային-հումքային բազայի ստեղծման հետ։

Կապիտալիզմի զարգացումը, ինչպես ցույց է տվել Մարքսը, միջնադարի վաշխառուական վարկի փոխարեն ստեղծում է իր սեփական վարկային սիստեմը, կապիտալիստական բանկերի միջոցով։ Մ. Ադոնցը ճիշտ է վարվել, իր աշխատության մեջ կանգ առնելով նաև Անդրկովկասում և, մասնավորապես, Հայաստանում վարկային հիմնարկների հիմնման հարցի վրա, որոնք արագացնում էին կապիտալիզմի զարգացումը, նրա ընդլայնված վերարտադրությունը։ Հեղինակը ճիշտ է նշում բանկերի առանձնակի մեծ դերը Անդրկովկասում, հատկապես Հայաստանում, մեծ գումարով կապիտալների բացակայության պայմաններում։ Սակայն պետք է ասել, որ գրքի հեղինակը կոնկրետ փաստերով ցույց չի տվել բանկերի և վարկային այլ հիմնարկների դերը կապիտալիստական արտադրության և առևտրի զարգացման գործում, կապիտալիստական հարաբերությունների ծավալման և նրանց հակասությունների ուժեղացման գործում։

* * *

Իր աշխատության վերջին (13-րդ) գլխում հեղինակը քննում է XIX դարում Հայաստանում սոցիալ-ժողովրդագրական (դեմոգրաֆիական) տեղաշարժերի հարցը։ Հեղինակը ճիշտ է վարվել՝ վերլուծման ենթարկելով նաև այդ հարցը, քանի որ այն կարևոր նշանակություն ունի հայ ժողովրդի տնտեսական և սոցիալական կյանքում տեղի ունեցած տեղաշարժերի ըմբռնման համար և որոշ իմաստով ամփոփում է այն բոլորը, ինչ որ ասված է աշխատության նախորդ գլուխներում։ Հեղինակը պատմական ակնարկով ցույց է տալիս հայ ժողովրդի տեղաշարժերը պատմական դժբախտ իրադրությունների, պարսկական և թուրքական զավթիչների հալածանքների, ավերումների, կոտորածների, բռնի տեղափոխումների և այլնի հետևանքով։ Այդ ամենի հետևանքով հայ ժողովրդի զգալի մասը ստիպված էր թողնել իր հայրենի հողը և ապաստան գտնել այլ երկրներում, և, առաջին հերթին, Ռուսաստանում։ Վերոհիշյալ պատմական փաստերի հետևանքով XIX դարի սկզբին Արևելյան Հայաստանի բնակչությունը կազմում էր միայն մոտ 100 հազար մարդ։ Եվ միայն Արևելյան Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելուց հետո է սկսում արագ կերպով աճել Հայաստանի ազգաբնակչությունը, սկզբում ոչ այնքան բնական աճի հետևանքով, որքան Պարսկաստանից և, հատկապես, Թուրքիայից ներգաղթի միջոցով։ 1828—1831 թթ. Պարսկաստանից Անդրկովկաս տեղափոխվեցին 40 հազար հայեր, իսկ Թուրքիայից՝ 65 հազար, որոնցից հայկական մարզում տեղավորվեցին 57,2 հազար հոգի (44,5 տոկոս)։ Սակայն ճիշտ ձևով չի արտահայտված Մ. Ադոնցի այն միտքը, թե «հայերի տեղափոխումը Թուրքիայից շարունակվեց մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանում» (էջ 502)։ Առանց որևէ բացատրության այդ թեզը կարող է սխալ մեկնաբանում ստանալ։ Հայտնի է, որ մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանում, Թուրքիայում և Արևմտյան Հայաստանում XIX դարի մոտ 3 միլիոն հայերից (բնաջնջման քաղաքականության հետևանքով) մնացել էին միայն աննշան թվով հայեր։

Այնուհետև հեղինակը քննության է առնում Հայաստանի բնակչության սոցիալական կազմի փոփոխումների և հայ բուրժուական ազգի կազմավորման հարցը։ «Հայկական ազգի պոտենցիալ տարրերը,— ասում է նա,— կազմավորվում են դեռ մինչկապիտալիստական շրջանում, հայ ժողովրդի կազմավորումից հետո» (էջ 520)։ Տնտեսական կապերի ուժեղացումը, նույնիսկ հայերի տարբեր երկրներում ցրվածության պայմաններում, հայ բուրժուական ազգի կազմավորման համար նախադրյալներ ստեղծեցին։ Այդ հարցում ևս հսկայական նշանակություն ունեցավ Հայաստանի՝ Ռուսաստանի հետ միավորվելու փաստը։ Սակայն հայ բուրժուական ազգի կազմավորումը ուժեղացավ XIX դարի երկրորդ կեսում, կապված ապրանքա-կապիտալիստական հարաբերությունների զարգացման հետ։ Վերը նշված փաստերի հիման վրա հեղինակը հանգում է այն ճիշտ եզրակացության, որ XIX դարի վերջերին բուրժուական հայ ազգը արդեն կազմավորված էր։ Այդ ժամանակ Հայաստանում արդեն առաջ էին եկել կապիտալիզմի համար բնորոշ դասակարգերը՝ բուրժուազիան և պրոլետարիատը։ Միաժամանակ հեղինակը տեղին է նշում, որ բուրժուազիայի զգալի մասը XVII—XIX դարի սկզբին գործում էր Հայաստանից դուրս (Հնդկաստան, Կ. Պոլիս, Աստրախան, Ն. Նախիջևան, Մոսկվա, Մոզդոկ, Ղզլար և այլն)։ Սակայն Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելուց հետո հայ խոշոր բուրժուազիայի գործունեության կենտրոնը փոխադրվում է Անդրկովկաս (Թիֆլիս, Բաքու և այլն), որտեղ նա կարևորագույն դիրքեր էր գրավում առևտրի և արդյունաբերության ասպարեզներում։ Միաժամանակ տեղի էր ունենում Հայաստանի պրոլետարիատի կազմավորումը։ Ճիշտ է Ադոնցը, երբ ասում է, թե «արդյունաբերական հայ պրոլետարիատի կազմավորման պրոցեսը պետք է դիտել ո՛չ միայն Հայաստանի, այլև ամբողջ Անդրկովկասի տերիտորիայի սահմաններում» (էջ 526)։ Հայաստանի (ինչպես և Անդրկովկասի) բանվորների դրությունը չափազանց ծանր էր, որի մասին հեղինակը բերում է մի շարք բնորոշ փաստեր։ Սակայն պետք է ասել, որ այդ կարևոր հարցը՝ բանվորների վիճակի հարցը, թույլ է լուսաբանված գրքում։

Հեղինակը խոսում է բանվորների և այլ աշխատավորների մեջ սոցիալիստական գաղափարների տարածման, բուրժուական պարտիաների և հատկապես «դաշնակցության» դեմ մղվող պայքարում Կոմունիստական պարտիայի դերի մասին։ Ի վերջո Մ. Ադոնցը հանգում է այն եզրակացության, որ հայ ազգի ձևավորումը կատարվեց այնպիսի սոցիալ-պատմական պայմաններում, որոնք անհնար էին դարձնում հայկական անկախ պետության ստեղծումը և միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ հնարավոր դարձավ հայ ժողովրդի ազգային ազատությունը. Հայաստանում հաստատվեց Սովետական իշխանություն, որը նրան ազատեց ամեն տեսակի շահագործումից ու ճնշումից։

Սրանք են այն հիմնական հարցերը, որ բարձրացված են գրախոսվող աշխատության մեջ։ Հեղինակը կատարել է քրտնաջան, լուրջ աշխատանք, հավաքել է մեծ թվով փաստական տվյալներ, օգտագործել վիճակագրական աղբյուրներ, քննադատորեն վերախմբավորելով ու վերլուծելով դրանք, ցույց է տվել հայ ժողովրդի տնտեսական զարգացումը XIX դարում։ Աշխատությունը, ինչպես տեսանք, զերծ չէ նաև թերություններից և առանձին սխալներից։ Բացի մեր կողմից նշված թերություններից, եզրափակման կարգով պետք է ասել, որ Մ. Ադոնցի աշխատությունը, մանավանդ, իր առանձին մասերում, կրում է պատմական-տնտեսական բնույթ, համապատասխան կարգով ոչ ամեն դեպքումն են բարձրացված Հայաստանի տնտեսական զարգացման սկզբունքային հարցերը։ Հատկապես թույլ են պարզաբանված կապիտալի շրջանառության ոլորտից արտադրության ոլորտին անցնելու, գյուղական համայնքների և արհեստավորական համքարությունների քայքայման հարցերը։ Դրա հետ միասին աշխատության մեջ կան կրկնողություններ, ձգձգվածություն։ Աշխատության կառուցվածքի առանձին մասեր կարիք են զգում հղկման։ Կան նաև մի շարք անհաջող ձևակերպումներ, օրինակ «Лишь после крестьянской реформы В. И. Ленин писал» (էջ 107), «На месте бывшей деревни Гюмри возник в 1837 году город Александрополь» (էջ 211), ստացվում է, որ Գյումրին մի տարում (1837 թ.) վերածվեց քաղաքի՝ անվան փոփոխման կապակցությամբ։



Ինչ վերաբերում է աշխատության մեջ բերված թվական տվյալներին և նրանց օգտագործմանը, ապա պետք է ասել, որ Ադոնցը մեծ աշխատանք է կատարել դրանց խմբավորման և քննադատորեն օգտագործելու ասպարեզում։ Սակայն այստեղ ևս գոյություն ունեն թերություններ։ Այսպես, օրինակ, 384 էջում ասված է, որ 1898 թվականին Հայաստանում արտադրվում էր 500 փութ շվեյցարական պանիր, իսկ առանձին տվյալներով այն կազմում է 2800 փութ։ 181-րդ էջում պղնձաձուլական ձեռնարկությունների բանվորների թիվը ցույց է տրված 329, իսկ հաջորդ էջում՝ 349։ Թվերի մեջ տարբերություններ կան №№ 17 և 71 աղյուսակներում. այսպես, ճարպահալման ձեռնարկությունների բանվորների թիվը նույն տարվա համար մեկ ցույց է տրված 35 հոգի, մեկ՝ 335. մետաքսամանվածքային ձեռնարկություններում բանվորների թիվը ցույց է տրված և՛ 70 մարդ, և՛ 35 մարդ, արտադրանքը՝ և՛ 40.000 ռուբլի և 48.000 ռուբլի և այլն։

Սակայն, չնայած թերություններին և առանձին սխալներին, պետք է ասել, որ այս գիրքը լուրջ օգնություն կհանդիսանա ոչ միայն հայ ժողովրդի տնտեսական կյանքի պատմությունն ուսումնասիրողների, այլև XIX դարի պատմությամբ, ինչպես նաև հասարակական մտքի պատմությամբ զբաղվողների համար։ Պետք է ցանկանալ, որ ընկ. Ադոնցը տա իր աշխատության շարունակությունը, Հայաստանի տնտեսական զարգացումը XX դարում, ինչպես մինչսովետական, այնպես էլ, հատկապես, սովետական շրջանում։

Ս. ԶՈՒՐԱԲՅԱՆ

ջախջախումը, որի կազմակերպիչը բոլշևիկների պարտիան էր։ Կոռնիլովշչինայի դեմ մղվող պայքարում տեղական պարտիական կազմակերպություններին ճիշտ կողմնորոշելու և նրանց մոբիլիզացնելու համար պարտիայի Կենտկոմը Վ. Ի. Լենինի ցուցումների հիման վրա նրանց տալիս է անհրաժեշտ հրահանգավորում։ ՌՍԴԲՊ(բ) Բաքվի կոմիտեն օգոստոսի 30-ին Կենտկոմից ստանում է հետևյալ հեռագիրը. «Հանուն կոնտրռևոլյուցիայի հետմղման Սովետի հետ աշխատում ենք տեխնիկական և ինֆորմացիոն համագործակցությամբ, քաղաքական գծի լիակատար ինքնուրույնության պայմաններում։ Իրադարձությունների իմաստը՝ համաձայնողական քաղաքականության լիակատար կրախ, ռևոլյուցիան փրկելու համար բուրժուազիայից ամբողջովին խզվելու հիման վրա իշխանության կազմակերպման անհրաժեշտություն» (էջ 31)։

Հոկտեմբերյան զինված ապստամբության նախօրեին Կենտկոմը տեղական պարտիական կազմակերպություններին է հասցնում պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հոկտեմբերի 10-ի և 16-ի լենինյան որոշումները զինված գրոհի կազմակերպման մասին, մոբիլիզացնում նրանց սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։

Ժողովածուի երկրորդ բաժնում տեղ գտած պարտիական կազմակերպությունների, առանձին կոմունիստների, բանվորների ու գյուղացիների նամակները՝ հասցեագրված Կենտկոմին, ցույց են տալիս, թե ինչպես բոլշևիկյան կազմակերպությունները դուրս գալով ընդհատակից, ակտիվ գործունեություն են ծավալում աշխատավոր զանգվածների շրջանում, կազմակերպում և պայքարի են կոչում նրանց հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի։

Ի դեմս բոլշևիկների պարտիայի բանվորներն ու գյուղացիները տեսնում էին իրենց արմատական շահերի իսկական պաշտպանին։ Մայիսի 6-ին Իվանովո-Վոզնեսենսկի 1500 բանվորներ դիմել են ՌՍԴԲՊ(բ) տեղական կոմիտեին՝ խնդրելով «հաղորդել իրենց ցանկությունը տեսնելու և լսելու ընկեր Լենինին» (էջ 123)։ Եկատերինոսլավի նահանգի Վետկա կայարանից հայտնում էին Կենտկոմ. «Այն ամենը, ինչ ուղարկում եք դուք, անցնում է ձեռքից-ձեռք և անմիջապես կարդացվում է մի քանի անգամ» (էջ 154)։ ՌՍԴԲՊ(բ) Կարսի կոմիտեն պարտիայի Կենտկոմին հայտնում էր, որ «Լենինը հողի մասին» գրքի կարիքը և ընդհանրապես բոլշևիկյան գրականության մեծ պահանջ կա (տե՛ս էջ 365)։

Երրորդ բաժնում զետեղված են զինվորական մասերի պարտիական կազմակերպությունների, գնդային կոմիտեների, առանձին զինվորների՝ Կենտկոմին ուղղված նամակները։

Փաստաթղթերի ժողովածուի երկրորդ գիրքը ընդգրկում է տեղական պարտիական կազմակերպությունների հետ ՌՍԴԲՊ(բ) Կենտկոմի Քարտուղարության նամակագրությունը 1917 թվականի հոկտեմբերի 26-ից մինչև 1918 թվականի փետրվարն ընկած ժամանակաշրջանը։ Սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման այդ ժամանակաշրջանը Վ. Ի. Լենինը անվանել է Սովետական իշխանության հաղթական երթի ժամանակաշրջան։ Այս ժամանակաշրջանում Կենտկոմը ավելի է ընդլայնում և ամրապնդում իր կապերը պարտիական կազմակերպությունների, բանվորական, գյուղացիական և զինվորական զանգվածների հետ։

Պարտիական կազմակերպություններին Կենտկոմի ուղարկած նամակներում գլխավոր ուշադրությունը դարձվել է սոցիալիստական ռևոլյուցիայի հետագա զարգացման և նրա հաղթանակի ամրապնդման արմատական հարցերի վրա։ Կենտկոմը պահանջում էր, որպեսզի պարտիական կազմակերպությունները հանդես բերեն վճռականություն, համարձակություն և նախաձեռնություն նշված խնդիրների լուծման գործում։ 1917 թվականի հոկտեմբերի 27-ին ՌՍԴԲՊ(բ) Բերդյանսկի կոմիտեին Կենտկոմը գրում էր. «...այսպիսի ժամանակ դժվար է Ձեզ տալ որևէ ավելի կոնկրետ հրահանգ, քան «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը։ Դա, թվում է, միակն է, որ կարելի է ասել միայն այսպիսի լրացումով, որ անհրաժեշտ է ձեր ձեռքը վերցնել ամենից առաջ փոստը և հեռագրատունը, ինչպես և երկաթուղիները» (էջ 3)։

Մի շարք փաստաթղթեր պատմում են, թե ինչպես էր պարտիայի Կենտկոմը կազմակերպում պայքարը կոնտրռևոլյուցիայի դեմ, մշտապես հետաքրքրվում այդ պայքարի ընթացքով, անդուլ կերպով մասսաներին պարզաբանում կոնտրռևոլյուցիոն ելույթների էությունը, կոնկրետ ցուցումներ տալիս Կարմիր գվարդիայի ջոկատներ կազմակերպելու, աշխատավորներին զինելու, զենք հայթայթելու մասին։ Պարտիայի Կենտկոմի նամակագրության մեջ մեծ տեղ են գրավում սովետական պետական ապարատի նոր օրգանների ստեղծման և նրա աշխատանքի հարցերը։ Կենտկոմը տեղական պարտիական կազմակերպություններին կոչ էր անում համարձակորեն ղեկավարել աշխատավոր զանգվածների ռևոլյուցիոն ստեղծագործական ակտիվությունը՝ բուրժուական պետական ապարատի ջախջախման և նոր, սովետական պետական ապարատի ստեղծման համար։ ՌՍԴԲՊ(բ) Կենտկոմը նրանց բացատրում է պետական



ապարատի նոր օրգանների ֆունկցիաները, սովետական պետական ապարատի գործունեության դեմոկրատական սկզբունքները, նրա սերտ կապը աշխատավորական լայն զանգվածների հետ։

Ժողովածուում տեղ գտած փաստաթղթերը վառ կերպով ցույց են տալիս, որ իր գոյության առաջին իսկ օրից Սովետական պետությունը հետևողական պայքար է մղել խաղաղության համար, որը համապատասխանում էր ո՛չ միայն Ռուսաստանի, այլև ամբողջ աշխարհի ժողովուրդների կենսական շահերին։

ՌՍԴԲՊ(բ) Կենտկոմի Քարտուղարության նամակագրության մեջ մեծ տեղ են գրավում պարտիական շինարարության հարցերը։ Կենտկոմը տեղական պարտիական կազմակերպություններին մշտապես հրահանգավորում էր, թե ինչպես ամրապնդել պարտիական շարքերի միասնությունը, կազմակերպել նոր պարտիական բջիջներ, աշխատել կադրերի հետ, ծավալել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք։

Երկրորդ բաժնում հրատարակված փաստաթղթերը՝ ՌՍԴԲՊ(բ) Կենտկոմին ուղղված պարտիական կազմակերպությունների բանաձևերը, կոմունիստների, բանվորների ու գյուղացիների նամակները ցույց են տալիս, թե ինչպես էր երկրի տարբեր տեղերում ծավալվում սոցիալիստական ռևոլյուցիան։ Դրանք վկայում են, որ Հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակը Պետրոգրադում, Սովետական իշխանության դեկրետները հողի և խաղաղության մասին մեծ ոգևորությամբ ընդունվեցին երկրի ողջ աշխատավորական զանգվածների կողմից, արժանացան համաժողովրդական հավանության և ամենաակտիվ աջակցության։

Ինչպես երևում է մի շարք փաստաթղթերից, տեղական պարտիական կազմակերպությունները ամբողջովին պաշտպանում էին պարտիայի Կենտրոնական Կոմիտեի լենինյան գիծը, սերտորեն համախմբվում նրա շուրջը, վճռականորեն հանդես գալիս սոցիալիստական ռևոլյուցիայի դասալիքների և պարտիայի միասնությունը խախտողների դեմ։ Նրանք խստորեն դատապարտում են Կամենևին, Զինովևին, Շլյապնիկովին և ռևոլյուցիայի մյուս կապիտուլյանտներին, որոնք, համաձայն չլինելով պարտիայի քաղաքականության հետ, 1917 թվականի նոյեմբերի 15-ին և 17-ին դուրս են գալիս Կենտկոմի և Ժողկոմսովետի կազմից։ Այդ կապակցությամբ Կենտկոմին ուղարկված բանաձևում Կովկասյան երկրային կոմիտեն գրել է. «Լիակատար վստահություն արտահայտել պարտիայի ԿԿ-ին և համերաշխություն նրա բոլոր միջոցառումներին ու քայլերին սոցիալիստական ռևոլյուցիայի ծավալման գործում, պետական իշխանություն նվաճած և ժողովուրդների պատմության մեջ մեծագույն օրինակ հանդիսացող բանվոր դասակարգի սոցիալիստական ստեղծագործության պատասխանատու րոպեներին իրենց ռևոլյուցիոն պոստերը լքած ընկերներին հրավիրել ռևոլյուցիոն կարգի և հիշեցնել նրանց պարտիայի, բանվոր դասակարգի ու սոցիալիզմի առաջ ունեցած ռևոլյուցիոն պարտքի մասին» (էջ 350)։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն գոհունակությամբ է ընդունում իր խոշոր կազմակերպություններից մեկի՝ ՌՍԴԲՊ(բ) Կովկասյան կազմակերպության երկրային կոմիտեի բանաձևը։ Կենտկոմի պատասխան նամակի մեջ ասված է. «Թանկագին ընկերներ։ Ձեր բանաձևը ստացել ենք և ողջունում ենք ձեր գծի կայունության համար։ Միայն այդպիսի միասնական ու համերաշխ աշխատանքով է հնարավոր հասնել մեր վերջնական նպատակին՝ սոցիալիզմին։ Նրա ուրվականը այնքան չի վախեցրել ցարիզմին, որքան նրա իրականացման առաջին քայլերը վախեցնում են բուրժուազիային, որը և գործադրում է ամեն տեսակի հնարավոր ջանքեր, որպեսզի կազմալուծի մեր շարքերը։ Այնպիսի խոշոր կազմակերպության, ինչպիսին է ՌՍԴԲՊ(բոլշևիկների) Կովկասյան երկրային կոմիտեն, աջակցությունը առավել ևս գնահատելի է այն ժամանակ, երբ պատասխանատու պոստեր զբաղեցրած ընկերների մի մասը թեքվել է աջ։ Առաջվա նման համընթաց մենք կգնանք դեպի առաջ պայծառ ապագային՝ սոցիալիզմին հասնելու համար» (էջ 86)։

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը կատարել է օգտակար և արժեքավոր գործ, հրատարակելով ՌՍԴԲՊ(բ) Կենտկոմի Քարտուղարության նամակագրությունը տեղական պարտիական կազմակերպությունների հետ։ Հրապարակված փաստաթղթերը ներկայացնում են մեծ հետաքրքրություն, ունեն խոշոր գիտական արժեք և մեծապես կնպաստեն բոլշևիկների պարտիայի հերոսական պատմության, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պատմության խոր ուսումնասիրությանը։

Կ. ՌՈԴՈՒՄՅԱՆ

# ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅ ԱԶԳԻ ԾԱԳՄԱՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Ազգերի ծագման և զարգացման պատմության մարքսիստական ուսումնասիրությունը գիտական և քաղաքական խոշոր նշանակություն ունի։ Հիրավի, մեր դարաշրջանում, երբ հասարակական կյանքում կատարվող խոր հեղաշրջումների շնորհիվ արմատապես փոփոխվում են ազգային հարաբերությունները, վերածընվում, վերափոխվում են ազգերը, գիտական մեծ հետաքրքրություն է ներկայացնում այն երկար ու ձիգ ուղին, որ անցել են ժողովուրդները, մաքառելով իրենց ազատության և անկախության համար։ Սակայն առավել կարևոր է ուսումնասիրել Սովետական Միության ազգերի կազմավորման, նրանց հետագա պատմական զարգացման պրոցեսը։ Չէ՞ որ առաջինը մեր երկրում վերացվեցին մարդու կողմից մարդու շահագործումը, ազգային թշնամանքն ու ճնշումը, ստեղծվեցին սոցիալիստական ազգերը, ազգեր, որոնց անքակտելի բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը ոգևորիչ օրինակ են աշխարհի բոլոր ժողովուրդների համար։

Այս տեսակետից ակտուալ է և հետաքրքիր Մ. Մելիքյանի վերջերս լույս տեսած աշխատությունը, որը նվիրված է սոցիալիստական ազգերից մեկի՝ հայ ազգի առաջացմանը և նրա սոցիալիստական վերափոխմանը *։

Անցյալ տարի այդ գիրքը հրատարակվել էր ռուսերեն լեզվով, որը որոշ ճշգրտումներից ու լրացումներից հետո թարգմանվել է հայերեն։

Հայ ազգի կազմավորման, զարգացման և հետագայում սոցիալիստականի վերափոխվելու հարցը սերտորեն կապված է ինչպես հայ ժողովրդի ընդհանուր քաղաքացիական պատմության, այնպես էլ հայոց լեզվի, գրականության, արվեստի և կուլտուրայի մյուս բնագավառների բազմաթիվ հարցերի հետ։ Ինչ խոսք, որ այդ պրոբլեմատիկ հարցի գիտական լուծումը հսկայական ներդրում կլինի հայագիտության մեջ։

* Մ. Ա. Մելիքյան — «Հայ ազգի կազմավորման և նրա սոցիալիստական վերափոխման հարցի շուրջը», Երևանի Պետհամալսարանի հրատարակչություն, 240 էջ։

Միևնույն ժամանակ ճիշտ չէր լինի կարծել, թե այն կարող է լուծվել մի աշխատությամբ կամ միայն մեկի ուժերով։ Իրավացի է հեղինակը, երբ աշխատության ներածության մեջ գրում է, որ դրա համար անհրաժեշտ է տարբեր բնագավառների մասնագետների՝ ազգագրագետների, պատմաբանների, լեզվաբանների, տնտեսագետների, փիլիսոփաների, մենք կավելացնենք նաև գրականագետների համատեղ աշխատանքը։ Ավելացնենք նաև, որ Մ. Մելիքյանը հեռու է հայ ազգի ծագման և զարգացման պրոբլեմն «սպառելու» հավակնությունից։ Նա միայն գտնում է, որ գրախոսվող աշխատությունը, իր բառերով ասած, «ինչ-որ չափով կօգնի այս կարևոր և, մի շարք տեսակետներից, բարդ պրոբլեմի ուսումնասիրությանը» (էջ 7)։

Գրախոսվող աշխատությունը բաղկացած է ներածությունից, երկու բաժիններից և եզրափակումից. առաջին բաժինը վերնագրված է՝ «Հայ ազգը կապիտալիզմի ժամանակ», երկրորդը՝ «Հայ ազգի սոցիալիստական վերափոխումը»։

Հեղինակը հայ ազգի ծագումը ուրվագծում է հայ ժողովրդի պատմության ընդհանուր ֆոնի վրա։ Հենվելով սովետական գիտնականների արժեքավոր հետազոտությունների վրա, նա նշում է, որ հայ ազգության՝ որպես էթնիկական ու պատմական ընդհանրության կազմավորումը, որ սկսվել է դեռևս մեր թվարկությունից շատ առաջ, եղել է մի երկարատև և բարդ պրոցես, ըստ որում աշխատանքի բաժանման և տերիտորիալ-տնտեսական կապերի զարգացման հետևանքով հայկական ցեղերն աստիճանաբար միավորվել են, ստեղծել մի միասնական էթնիկական ընդհանրություն։ Այնուհետև գրքում համառոտակի ցույց են տրըվում այդ էթնիկական ընդհանրության հիմնական կոմպոնենտների՝ համաժողովրդական լեզվի, տերիտորիալ կապերի, հոգեկան կերտվածքի ընդհանրության դերը ազգության ձևավորման մեջ։ Այդ էթնիկական ընդհանրությունը, նրա կոմպոնենտները ոչ թե տոհմային և ցեղային կապերի շարունակությունն ու ընդհանրացումն են, այլ հենց այդ կապերի կազմալուծման և տեղական, այսինքն՝ տերիտորիալ-տնտեսական կապերի ստեղծման արդյունքը, նախնադարյան համայնական հասարակության քայքայման և դասակարգային հասարակության առաջացման հետևանքը։ Հետագայում, մեր թվարկության առաջին դարերից սկսած, երբ Հայաստանում արդեն զարգանում են ֆեոդալական հարաբերությունները և նրա առանձին մասերի կառավարողների՝ նախարարների կողմից ուժեղանում է առանձնանալու, իր տիրապետության մեջ պարփակվելու ձգտումը, ֆեոդալական անջատվածությունը թուլացնում է ժողովրդի դիմադրողականությունը, հեշտացնում երկրի զավթումը օտար նվաճողների կողմից։ Շատ բռնակալներ են նվաճել Հայաստանը, բայց նրանցից և ոչ մեկը չի կարողացել ընկճել ժողովրդի ազատատենչ ոգին։ Հայ ժողովուրդը միշտ էլ անձնուրաց պայքար է մղել իր բազում ոսոխների դեմ։ Այդ բռնակալները ոչընչացել են, անհետացել, իսկ հայ ազգությունը, շնորհիվ իր կայուն ընդհանրության, պահպանել է իր գոյությունը, իր ինքնուրույնությունը։

Հեղինակը, այսպիսով, շոշափում է այն պրոցեսները, որոնք կարելի է ասել, անմիջականորեն կապված են հայ ազգի ստեղծման պատմական նախապատրաստման հետ, ցույց է տալիս, որ ազգը բնութագրող տարբեր տարրերն իրենց արմատներն ունեն հեռու անցյալում։ Նրանք ձևավորվել և կայունացել են աստիճանաբար, դարերի ընթացքում։ Բայց այստեղ հեղինակին կարելի է կշտամբել այն բանի համար, որ նա համարյա սահմանափակվում է միայն այդ պրոցեսներն ու տարրերը հիշատակելով։ Հանրահայտ է, որ հայ ժողովրդի ստեղծած բազմադարյան կուլտուրան, որտեղ արտացոլված է ժողովրդի հոգևոր կերպարը, հարուստ աղբյուր է նրա զարգացման օրինաչափությունների ըմբռնելու և հասկանալու համար։ Մինչդեռ Մ. Մելիքյանն իր աշխատության մեջ միանգամայն անբավարար է օգտագործել այդ աղբյուրները, իսկ այս հանգամանքը հասցրել է այն բանին, որ հեղինակի որոշ դրույթներ վերոհիշյալ հարցերում ավելի շուտ դեկլարատիվ հայտարարությունների բընույթ են կրում։

Գրախոսվող աշխատության մեջ նշվում է, որ բուրժուական հարաբերությունների զարգացման զուգընթաց՝ հայերը ձևավորվում են որպես ժամանակակից ազգ։ Իր եզրակացություններում հեղինակը հենվում է սովետական հայագիտության նվաճումների վրա։ Ուսումնասիրելով ազգի գոյացման պրոցեսը, Մ. Մելիքյանը հաշվի է առնում ո՛չ միայն ներքին, այլև արտաքին հանգամանքները, որոնք արագացնում կամ դանդաղեցնում են այդ պրոցեսը։ Գրքի հիմնական արժանիքը, մեր կարծիքով, այն է, որ նրա հեղինակը պատմական երևույթները մեկնաբանելիս ձգտում է հանդես բերել ինքնուրույն մոտեցում. նա ոչ թե հետևում է սովորական սխեմաներին, աշխատելով շաբլոնին «հարմարեցնել» փաստերը, այլ իր եզրակացությունները կառուցում է՝ ելնելով փաստերից։

Ամենից առաջ հեղինակը ցույց է տալիս պատմական պրոցեսի այն յուրահատկությունը, որ ապրել է հայ ժողովուրդը՝ սկսած XIII—XV դարերից։ Հազարամյա կուլտուրա ունեցող հայ ժողովուրդը ենթարկվեց թաթարա-մոնղոլական քոչվոր ցեղերի արշավանքներին։ Բարբարոսական ասպատակությունների հետևանքով Հայաստանը, որ գտնվում էր զարգացած ֆեոդալիզմի աստիճանում, ետ շպրտվեց. նրա պատմության մեջ կատարվեց այն «հետադարձ թռիչքներից» մեկը, որոնց մասին խոսում էր Վ. Ի. Լենինը։ Այդ «հետադարձ թռիչքը» արտահայտվեց ոչ միայն երկրի արտադրողական ուժերի անկումով, այլև այն բանով, որ հայ ժողովրդի մի մեծ հատվածը իր գոյությունը պահպանելու համարստիպված եղավ վերաբնակվել ուրիշ երկրներում, որտեղ ստեղծվում են հայկական գաղութներ։ Այդ երկրներում կապիտալիստական հարաբերությունների զարգացման պրոցեսը շարժման մեջ է դնում հայ հասարակության տիրապետող դասակարգին՝ առևտրականներին և հոգևորականությանը, խթանում հայ գաղութներում բուրժուական գաղափարախոսության մշակմանը և տարածմանը։

Իր ժամանակի առաջավոր բուրժուական գաղափարախոսությունը հսկայական ազդեցություն է թողել հայ ժողովրդի հիմնական հատվածի վրա, որն ապրում էր Հայաստանում։ Հեղինակը ցույց է տալիս, որ XVIII դարում սկսվում է հայ բուրժուական ազգի կազմավորման պրոցեսը, որն արագացավ հայկական հողերի մի զգալի մասը Ռուսաստանին միավորելուց հետո։ Հետռեֆորմյան շրջանում, երբ Անդրկովկասի երկրներում տիրապետող են դառնում բուրժուական հարաբերությունները, Հայաստանում ավարտվում է հայ ժողովրդի՝ որպես ազգի կազմավորումը։

Հայ ազգի կազմավորումը հեղինակը դիտում է որպես մի համընդհանուր միասնական պրոցես։ Նա միանգամայն ճիշտ կերպով հերքում է այն հակագիտական տեսակետը, ըստ որի հայ ազգի կազմավորումը տեղի է ունեցել միայն Արևելյան Հայաստանում։ Անշուշտ միանալով Ռուսաստանին՝ Արևելյան Հայաստանի, այստեղ բնակվող ժողովրդական մասսաների համար ստեղծվում են անհամեմատ բարենը-

պաստ պայմաններ։ Ամենից առաջ բարենպաստ իրավիճակ ստեղծվեց արտադրողական ուժերի զարգացման համար, ռուսական առաջավոր կուլտուրան հսկայական ազդեցություն թողեց հայ հասարակական մտքի հետագա զարգացման վրա։ Եթե թուրքական բռնակալների մարդատյաց քաղաքականությունն ի վերջո հասցրեց նրան, որ բնաջնջվեցին միլիոնավոր հայեր, ապա Արևելյան Հայաստանի հայերը, կապելով իրենց բախտը ռուս ժողովրդի բախտի հետ, ընթացան այն ուղիով, որը հասցրեց հայ ժողովրդի սոցիալիստական պետականության հաստատմանը։

Հայ բուրժուական ազգի կազմավորման պրոցեսն ընթացել է կապիտալիստական հարաբերությունների ընդլայնման և ամրապնդման հիման վրա, հայ բուրժուազիայի ղեկավարությամբ։ Այդ բուրժուազիան, պայքարելով ազգի կոնսոլիդացիայի համար, անշուշտ, առաջավոր դեր էր խաղում։ Սակայն նա դառնում է ռեակցիոն ուժ, երբ ծավալվում է պրոլետարիատի դասակարգային պայքարը։ Նա բոլոր միջոցներով ձգտում է իրեն ներկայացնել որպես «ազգի փրկիչ» և «ազգի միասնության» իր քարոզով աշխատում է թշնամանք սերմանել հայ պրոլետարիատի և մյուս ազգերի պրոլետարների միջև։ Դաշնակցությունը՝ հայ բուրժուազիայի պարտիան, նրա սպասարկուն, ամեն ինչ անում է ազգի մեջ դասակարգային հակասությունները սքողելու, պրոլետարիատի պայքարը բուրժուազիային ձեռնտու հունի մեջ գցելու համար։ Մինչդեռ կապիտալիզմի հետագա զարգացումն ավելի է սրում դասակարգային պայքարը։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ուժեղանում, ամրապնդվում է պրոլետարիատի ինտերնացիոնալ համախմբվածությունը։

Գրքում հեղինակը հանգամանորեն կանգ է առնում հայ սոցիալիստական ազգի կազմավորման վրա, աշխատում է բացահայտել այն, ինչ հատուկ է սոցիալիստական ազգին, բնորոշել նրա տնտեսական, քաղաքական և սոցիալական հիմքերը։

Ազգային ճնշումը ոչնչացնելու և բոլոր ազգերի ու ժողովուրդների իրավահավասարություն ստեղծելու համար ամենից առաջ անհրաժեշտ է ոչնչացնել կապիտալիզմը, իշխանությունը տալ պրոլետարիատին և դրանով իսկ նրան դարձնել ազգի ղեկավար ուժը։ Այդ բանը Ռուսաստանում կատարեց Հոկտեմբերյան ռևոլյուցիան, որի շնորհիվ մեր երկրում արմատական փոփոխություններ կատարվեցին հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում նաև ազգային հարաբերությունների մեջ։

Ռուսաստանի սովետական կառավարությունը պրոլետարիատի դիկտատուրան օգտագործեց երկրի բոլոր ժողովուրդներին ռուսական ռևոլյուցիոն պրոլետարիատի շուրջը համախմբելու համար։ Սովետական իշխանության քաղաքական, տնտեսական և ռազմական օգնությամբ Ռուսաստանի մյուս ազգերի բանվոր դասակարգը տապալեց իր ազգային բուրժուազիայի տիրապետությունը և կանգնեց իր ազգի գլուխ։ Սովետական կարգերի շնորհիվ խորտակվեցին տիրապետության և ստորադասման այն բռնի կապերը, որոնք ստեղծվել էին կապիտալիզմի օրոք, և ժողովուրդների միջև հաստատվեցին բարեկամական, մինչ այդ չտեսնված, հարաբերություններ։

Հայ սոցիալիստական ազգի կազմավորումը հեղինակը բաժանում է երկու շրջանի։ Առաջին շրջանը, որ սկսվել է Հոկտեմբերյան ռևոլյուցիայով, ավարտվում է հայ բուրժուազիայի իշխանության տապալմամբ և Հայաստանում սովետական կարգերի հաստատմամբ, հայ ժողովրդի ինքնուրույն սոցիալիստական պետականության ստեղծումով։ Սովետական իշխանությունը Հայաստանում, ինչպես և մյուս ռեսպուբլիկաներում, գլխավոր պայմանն էր հայ ազգի սոցիալ-քաղաքական իղձերի իրականացման և նրա հոգևոր կերպարի սոցիալիստական վերափոխության համար։ Սոցիալիստական շինարարությունը, որի ընթացքում արմատական որակական փոփոխություններ տեղի ունեցան ինչպես ազգի տնտեսական և սոցիալական կյանքում, այնպես էլ նրա հոգևոր կերպարի մեջ, կազմում է սոցիալիստական ազգի կազմավորման պրոցեսի երկրորդ շրջանի բովանդակությունը։ Շահագործող դասակարգերի ոչնչացմամբ, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ հայ ազգը, ինչպես նաև ՍՍՌՄ-ի մյուս բոլոր ազգերը, դարձավ սոցիալիստական ազգ։

Հասարակության հոգևոր կյանքի սոցիալիստական վերափոխման, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմը հաղթահարելու գործում խոշոր դեր խաղաց կուլտուրական ռևոլյուցիան։ Ամբողջ ժողովուրդը հարստացավ հոգևոր կերտվածքի զուտ սոցիալիստական այնպիսի գծերով, ինչպիսիք են՝ կոլեկտիվիզմը, ընկերական փոխօգնությունը, սովետական հայրենասիրությունը, բարեկամությունը և հարգանքը մյուս ժողովուրդների նկատմամբ, մասսայական հերոսությունը, սրտացավ վերաբերմունքը դեպի սոցիալիստական սեփականությունը և այլն։

Բացահայտելով սոցիալիզմի կառուցման հետևանքով հայ ազգի տնտեսական ու քաղաքական կյանքի, հոգևոր կերպարի մեջ կատարված այս արմատական փոփոխությունները, հե-



ղինակը միաժամանակ ցույց է տալիս դրանց ազդեցությունը ազգի հատկանիշների զարգացման վրա։ Այս հարցին նվիրված գլուխը գիտական տեսակետից հետաքրքիր է և շատ բանով ինքնուրույն, սակայն, դժբախտաբար, չափազանց թռուցիկ է գրված։

Այսպիսով, գրախոսվող աշխատության մեջ բարձրացված են բազմաթիվ հարցեր, որոնք խոշոր նշանակություն ունեն հայ ազգի ծագման և զարգացման պատմությունն ուսումնասիրելու համար։ Չի կարելի, իհարկե, պահանջել, որ բոլոր այդ հարցերն էլ իրենց լրիվ պատասխանը գտնեին գրքում։ Եվ մենք մեզ իրավունք էլ չենք վերապահում այդպիսի պահանջ ներկայացնել հեղինակին։ Բայց գիրքը, անշուշտ, ավելի շահած կլիներ, եթե հեղինակը, մանավանդ նրա երկրորդ բաժնում, հաղթահարեր իր ձեռքի տակ ունեցած, քննարկվող առանձին հարցերին վերաբերող բոլոր փաստերը աշխատության մեջ տեղավորելու ցանկությունը, ավելի շատ ուշադրություն դարձներ փաստերը վերլուծելու և ընդհանրացնելու վրա։

Մյուս կողմից, կան էական հարցեր, որոնք անմիջապես կապված են քննարկվող պրոբլեմի հետ, բայց անհրաժեշտ չափով չեն հիմնավորվում համոզեցուցիչ փաստերով։ Դրանով պետք է բացատրել, որ գրքի առանձին հատվածներում հարցերը քննարկվում են մակերեսայնորեն։ Այդ նկատելի է, մանավանդ, կապիտալիզմի շրջանում հայ ազգի ներսում եղած դասակարգերի բնութագրմանը նվիրված էջերում։ Այստեղ հեղինակի օգտագործած նյութը բավականին սահմանափակ է և մասամբ էլ հենվում է միայն գեղարվեստական գրականության վրա։ Ակնհայտ է, որ այս հարցում նա բավականաչափ քրտնաջան գիտական պրպտումներ չի կատարել։ Գրքի երկրորդ բաժնում նույնպես որոշ հարցեր քննարկվում են հապճեպ, առանց անհրաժեշտ խորության։ Այստեղ էլ հեղինակը երբեմն առաջադրում է կարևոր մի հարց, դատողություններ է անում դրա շուրջը, բայց իր մտքերը չի ամրապնդում բավականաչափ փաստական նյութերով։ Այսպես, օրինակ, սոցիալիզմի կառուցման շրջանում դասակարգային պայքարի հարցին նվիրված գլուխը ավելի շատ ընդհանուր դրույթներ է պարունակում, քան կոնկրետ, բնորոշ փաստեր, և դրա համար էլ հեղինակի դիտողությունները դասակարգային պայքարի սրման, ազգային նիհիլիզմի ռեցիդիվների մասին մնում են առարկայազուրկ։

«Հայ ազգի կազմավորման և նրա սոցիալիստական վերափոխման հարցի շուրջը» գրքի ռուսերեն հրատարակության մեջ թույլ էին տրված մի շարք թերություններ, անճիշտ ձևակերպումներ, որոնց մեծ մասը ճշտված և ուղղված է ներկա հայերեն տարբերակում։ Այսպես, օրինակ, հեղինակը առանց որևէ հիմքի ու հիմնավորման առաջ էր քաշել մի սխալ թեզ, ըստ որի իբրև թե արևմտահայ գրական լեզուն ավելի առաջ է կազմավորվել, քան արևելահայ գրական լեզուն։ Կամ աշխատության առաջին բաժինը չգիտես՝ թե ինչ նկատառումներով բաժանված էր միայն երկու գլխի, ուր քննարկվել էին բազմաթիվ լուրջ և ինքնուրույն հարցեր. օրինակ, առաջին գլխում, որ վերնագրված էր «Հայ ազգի ծագումն ու կազմավորումը», քննարկվում էին այնպիսի ինքնուրույն հարցեր, ինչպիսիք են՝ հայ ազգության (էթնոսի) կազմավորումը, ազգի կազմավորման սկզբնավորումը և նրա զարգացման փուլերը։ Այս բոլոր հարցերի միավորումը մեկ գլխի մեջ հանգեցրել էր նրան, որ առանձին հարցեր միանգամայն անբավարար էին լուսաբանվել։ Հայկական տարբերակում այդ բաժինն արդեն ունի վեց գլուխ, կատարվել են փոքր հավելումներ։ Չնայած կառուցվածքային այդ մասնակի փոփոխություններին, այնուամենայնիվ ներկա հրատարակության մեջ չի հաղթահարված շարադրանքի որոշ մակերեսայնությունը։ Այստեղ քննարկվում է միջին դարերում հայ ազգության զարգացման հարցը, որն անկասկած լուրջ և տվյալ ուսումնասիրության համար շատ կարևոր հարց է, որը, սակայն, շարադրված է չափազանց թռուցիկ, մեկ-երկու պարբերությամբ։ Այդ իսկ պատճառով այնպիսի կարևոր մոմենտներ, ինչպես, օրինակ, դասակարգերի փոխհարաբերությունը հայ ազգության մեջ միջին դարերում, շրջապատող ազգությունների և ցեղերի փոխադարձ ազդեցությունը, նրանց տնտեսական և կուլտուրական համագործակցությունը և այլն, աշխատության մեջ համարյա թե չեն լուսաբանվել։ Գրքում կարելի է հանդիպել նաև առանձին անորոշ մտքերի և ձևակերպումների։ Այսպես. 123-րդ էջում կարդում ենք. «Անդրկովկասյան ժողովուրդները՝ վրացիները, հայերը, ադրբեջանցիները գտնըվում էին ազգային ձևավորման բարձրագույն աստիճանի վրա, երբ սկսվեց Հոկտեմբերյան ռևոլյուցիան»։ Հեղինակը չի բացատրում, թե դա ինչ «բարձրագույն աստիճան» է, երբ է սկսվում այն, ինչ է նրա բովանդակությունը։

Աշխատության մեջ տեղ են գտել նաև կրկնություններ, ոճական անհարթություններ։ Բայց այս պակասությունները, որոնց թիվը, թերևս, կարելի է ավելացնել, հիմք չեն տալիս տարակուսելու այն բանում, որ քննարկվող գիրքն ունի բարձր արժանիքներ։

ԱԲ. ՍԻՄՈՆՅԱՆ

## «ՊԱՐՏԻԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ»

Հայպետհրատը թարգմանել և լույս է ընծայել Դ. Բախշիևի «Պարտիական դեմոկրատիայի լենինյան սկզբունքները» գրքույկը: Կոմունիստական պարտիայի պրակտիկ գործունեությունից վերցրած հարուստ փաստական նյութի հիման վրա հեղինակը պարզ ու մատչելի լեզվով շարադրել է մեր պարտիայի դեմոկրատիայի լենինյան սկզբունքները: Նա հանգամանորեն ցույց է տալիս, որ Կոմունիստական պարտիայի դեմոկրատիան նրա կենսական ուժի անսպառ աղբյուրն է:

Խոսելով Կոմունիստական պարտիայի դեմոկրատիայի էության մասին, հեղինակը ցույց է տալիս, որ պարտիական օրգանները ղեկավարման դեմոկրատական օրգաններ են, Կոմունիստական պարտիայում ղեկավարությունը կոլեկտիվ է, պարտիայի աշխատանքներին մասնակցում են բոլոր կոմունիստները, լայն զարգացած քննադատությունն ու ինքնաքննադատությունը պարտիայի խոր դեմոկրատականության արտահայտություններն են, պարտիան միշտ մասսաների, ժողովրդի հետ է: Աշխատության մեջ այս հարցերից յուրաքանչյուրին նվիրված է առանձին գլուխ, ուր մի քանի ենթավերնագրերով լայնորեն պարզաբանվում է շոշափվող թեման:

Խոսելով ներպարտիական դեմոկրատիայի մասին, հեղինակը նշում է, որ Կոմունիստական պարտիայի դեմոկրատական կառուցվածքը անխզելիորեն կապված է ցենտրալիզմի հետ, կազմակերպության և պարտիական ղեկավարության կենտրոնացման հետ, որ «դեմոկրատական ցենտրալիզմը գործիք է զարգացնելու կարգապահությունը պարտիայում, ամեն կերպ ամրապնդելու կոմունիստների լայն ակտիվության, նրանց ստեղծագործական նախաձեռնության ու ինքնագործունեության վրա հիմնըված պարտիայի և պարտիական ղեկավարության միասնությունը» (էջ 11):

Աշխատության մեջ ցույց է տրված, թե ինչպես պարտիայի զարգացման հետ միասին զարգանում է նրա դեմոկրատիան, որի կիրառման շրջանակները բանվոր դասակարգի դիկտատուրայի պայմաններում ընդլայնվում են, իսկ սկզբունքները ձեռք են բերում նոր, է՛լ ավելի խոշոր նշանակություն: Հատկապես շեշտվում է այն, որ պարտիական դեմոկրատիան ավելի զարգացավ անհատի պաշտամունքի դեմ մղվող պայքարի, ՍՄԿՊ XX համագումարի կողմից ներպարտիական դեմոկրատիայի լենինյան տրադիցիաների վերականգնման շնորհիվ, որը մեծապես նպաստեց կոլեկտիվ ղեկավարության ամրապնդման, պարտիական կազմակերպությունների, մեր բոլոր կոմունիստների ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության զարգացման:

Գրքույկի հեղինակը փաստական հարուստ նյութերով ցույց է տալիս ներպարտիական դեմոկրատիայի կիրառման ուղղությամբ մի շարք պարտիական կազմակերպությունների աշխատանքի ուսանելի փորձը, ինչպես նաև այդ գործում դեռևս նկատվող թերությունները և դրանց վերացման միջոցները:

«Պարտիական դեմոկրատիայի լենինյան սկզբունքները» գրքույկը լուրջ օգնություն է պարտիական աշխատողներին:

Գրքույկը բաղկացած է 206 էջից, լույս է տեսել 3000 տիրաժով, գինն է 2 ռ. 20 կ.:

---

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

*Հարգելի ընկերնե՛ր։*

*Վերջերս Երևանի Պետական Համալսարանի հրատարակությամբ լույս է տեսել Կ. Պ. Կարագյանի «Սպառողական կոոպերացիայի ծագումը և զարգացումը Հայաստանում» մեծածավալ աշխատությունը։ Անշուշտ այն արժեքավոր գիրք է, և նրա հրատարակումը պետք է ողջունել։ Թողնելով մեր մասնագետներին այդ գրքի ամբողջական վերլուծումն ու արժեքավորումը, ցանկանում ենք մի քանի խոսք ասել տվյալ աշխատության առաջին բաժնի հինգերորդ գլխի վերաբերյալ, ուր խոսվում է մեր՝ Ջարխեչ գյուղի սպառողական կոոպերատիվ ընկերության գործունեության մասին։*

*Իրավացի է հեղինակը, երբ նա գրում է, որ «Հայաստանում կոոպերատիվ շարժման պատմության մեջ իր ուրույն և պատվավոր տեղն ունի նախկինում Ղազախի գավառի, իսկ ներկայումս Իջևանի շրջանի Ջարխեչ (Կույբիշև) գյուղը» (էջ 148)։ Այդ կոոպերատիվը, որը հիմնադրվել էր 1908 թվականին, իրոք իր ժամանակի համար առաջադիմական խոշոր քայլ էր։ Նրա գործունեությունն ուղղված է եղել գյուղի առևտրականների ու վաշխառուների կողմից գյուղացիների կեղեքումը սանձահարելու և հողի աշխատավորների տնտեսական դրությունը հնարավորին չափ բարելավելու նպատակին։*

*Մինչդեռ այդ աշխատության մեջ մեր կոոպերատիվի բուն գործունեության վերաբերյալ նյութերը միակողմանի են ու սուբյեկտիվ բնույթի։ Չկա կատարված գործի վերլուծությունն ու ամփոփումը։ Դրա փոխարեն գրքի հեղինակը պատեհ ու անպատեհ առիթներով չափից ավելի է գովաբանում Գալուստ Հարությունյանի անձնավորությունը, մեջբերումներ է անում նրա հիշողություններից, պարբերականներում զետեղված նրա թղթակցություններից, նրան ուղղված ինտիմ նամակներից և այլն։*

*Հիրավի, խոշոր է ընկ. Գ. Հարությունյանի կատարած աշխատանքը մեր կոոպերատիվի կազմակերպման ու ամրապնդման գործում։ Սակայն նա մենակ չէր։ Մեր կոոպերատիվն ուներ իր ակտիվ գործիչները, նրա շուրջը համախմբված էին մի շարք աշխատավորներ, որոնք հետագայում քիչ գործ չկատարեցին սովետական իշխանության հաստատման ու ամրապնդման գործում։*

*Մեր հարգելի հեղինակը գրում է, որ այդ կոոպերատիվի ցուցանակի տակ գործում էր Գ. Հարությունյանի գլխավորությամբ ստեղծված ռևոլյուցիոն խմբակը, որ կոոպերատիվի հիմնական նպատակն էր քողարկել այդ խմբակի գործունեությունը։ «Կոոպերատիվի գոյության ամբողջ ժամանակաշրջանում,— անվերապահորեն հայտարարում է Կ. Կարագյանը,— նրա ցուցանակի տակ ծավալված ռևոլյուցիոն աշխատանքը նպաստել է սովետական կարգերի հաստատմանը մեր երկրում» (էջ 182)։*

*Ամեն կերպ խտացնելով գույները, գունազարդելով իրողությունը, հեղինակը այնպես է նկարագրում այդ «ռևոլյուցիոն» խմբակի գործունեությունը, որ ընթերցողն ակամա ստանում է այն տպավորությունը, որ մեզ մոտ դեռևս 1908 թվականից գոյություն է ունեցել իրոք ռևոլյուցիոն, մարքսիստական խմբակ։ Բայց իր այդ պնդումը հաստատելու համար ընկ. Կարագյանը չի բերում և ոչ մի փաստ ու փաստարկում, արխիվային նյութեր, բոլշևիկյան գործիչների ու մամուլի վկայակոչումներ։ Մենք գրքի համապատասխան էջերում չենք գտնում այն հարցի պատասխանը, թե որո՞նք էին Ջարխեչի «ռևոլյուցիոն» խմբակի ծրագիրն ու նպատակները, նրա տակտիկան, թե հայ իրականության պայմաններում խմբակը հասարակական ո՞ր հոսանքներին ու կազմակերպություններին էր հարում։*

*Իրականում մեր գյուղում մինչև 1919 թվականի վերջը, երբ հիմնադրվեց կոմունիստական բջիջ, չի եղել ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական, բոլշևիկյան կազմակերպություն։*

*Իրականում ընկ. Կարագյանը ակամա Գ. Հարությունյանի անցյալ գործունեությունը միակողմանի և աղավաղված է լուսաբանում։ 1906 թվականի երկրորդ կեսից մինչև 1908 թվականը Հարությունյանն իրոք ապրել ու աշխատել է Բաքվում, սակայն այդ և հետագա տարիներին նա հարել է էսեռներին, ունեցել իր ընկերներն այդ պարտիայից, Ջարխեչից*

*աշխատակցել է Բաքվում լույս տեսնող էսեռական ու այլ մանրբուրժուական թերթերին։ Մեր կարծիքով ընկ. Կարագյանի աշխատության հինգերորդ գլխի էական պակասությունն այն է, որ հեղինակը փաստորեն անտեսել է ընկ. Գ. Հարությունյանի և նրա գլխավորած խմբակի էվոլյուցիան։ Փաստն այն է, որ միայն սկսած 1919 թվականից ընկ. Գ. Հարությունյանը գիտակցաբար և անվերապահորեն անցավ ռևոլյուցիայի կողմը և դարձավ մեր կոմբջիջի հիմնադիրներից, պարտիական ու սովետական ակտիվ գործիչներից մեկը։*

*Ահա ամբողջ իրողությունը։*

*Չի կարելի համաձայնել հեղինակի այն պնդմանը, որ ռևոլյուցիոն «խմբակի անդամները դառնում են Սովետական իշխանության հենարանը Ջարխեչ գյուղում»։ Դա մոլորություն է, քանի որ կոոպերատիվի վարչությունը սողոսկած և այդ խմբակում ընդգրկված մի քանի մարդիկ չեն եղել և չէին կարող լինել Սովետական իշխանության հենարանը մեր գյուղում։*

*Դժբախտաբար ընկ. Կարագյանի գրքի տվյալ գլուխը խճճում է ու աղավաղում պատմության այդ էջը և դառնում սխալ մեկնությունների աղբյուր։*

*Ա. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ*
*ՍՄԿՊ անդամ 1920 թ. մայիսից*
*Մ. ԳՈՒԼՅԱՆ*
*ՍՄԿՊ անդամ 1920 թ. մարտից*

---

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»-Ի ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

*«Լենինյան ուղիով» ամսագրի 1958 թվականի № 1-ում տպագրված ընկ. Մ. Մելիքյանի «Ականավոր մարքսիստի երկերի երկրորդ հատորը» վերնագրով հոդվածի կապակցությամբ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի դիրեկցիան խմբագրությանը հայտնում է, որ հոդվածում արդարացի կերպով քննադատված են հատորի ծանոթագրություններում տեղ գտած սխալներն ու թերությունները։*

*Թույլ տրված սխալների համար ինստիտուտի դիրեկցիան զգուշացրել է ծանոթագրություններ կազմող ավագ գիտական աշխատող ընկ. Օհանջանյանին, որն այդ պատասխանատու գործի նկատմամբ հանդես է բերել անփութություն։*

*Հանձնարարված է ինստիտուտի ՍՄԿՊ պատմության սեկտորին՝ Ստ. Շահումյանի Երկերի երրորդ հատորի հրատարակությունը նախապատրաստել բարձր որակով։*

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



*ՎՖ 02672* *Պատվեր 1023* *Տիրաժ 6300*

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: *Ստորագրված է տպագրության 17/IV 1958 թ*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։*

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՀԱՅԳՐՔԻ ՈՒ ՀԱՅԿՈՈՊԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասուն տարին», *Հայպետհրատ, գինը՝ 80 կոպ.։*

ՀՈՎ. ԻՆՃԻԿՅԱՆ — «Բոգդան Կնունյանց», *Հայպետհրատ, գինը՝ 5 ռ. 85 կոպ.։*

Վ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ, Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ — «Ուրվագծեր Սովետական Հայաստանի պատմության», *պրակ II, Գիտ. ակադ. հրատարակչ., գինը 8 ռ. 40 կոպ.։*

Վ. ԱՎԱԳՅԱՆ — «Էջեր Անդրկովկասում օտարերկրյա ինտերվենցիայի պատմությունից», *Հայպետհրատ, գինը՝ 1 ռ. 40 կոպ.։*

Ռ. ՎԱՐՏԱՆՈՎ — «ՍՄԿԿ XX համագումարը սոցիալիստական հասարակության արտադրողական ուժերի զարգացման ուղիների մասին», *Հայպետհրատ, գինը՝ 1 ռ. 65 կոպ.։*

Ջ. ԳՈԼԼԱՆ — «Մեծ Բրիտանիայի քաղաքական սիստեմը», *Հայպետհրատ, գինը՝ 5 ռ.։*

Հ. ՆԳԱՆՅԱՆ—«Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և ազգային-ազատագրական շարժումները Իրանում» (1917—1921), *Գիտ. ակադեմիայի հրատ., գինը՝ 1 ռ. 25 կոպ.։*

Մ. ՍԱՐԳՍՅԱՆ — «Գևորգ Բաշինջաղյան», *Գիտ. ակադ. հրատարակչ., գինը՝ 7 ռ. 15 կոպ.։*

ՀՈՄԵՐՈՍ — «Ոդիսական», *Գիտ. ակադ. հրատարակչ., գինը՝ 7 ռ.։*

«ՌՈՒՍ-ՀԱՅԵՐԵՆ ՊՈԼԻՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆ» — *Գիտ. ակադ. հրատարակչ., գինը՝ 15 ռ. 90 կ.։*

Ս. ԱՅՎԱԶՅԱՆ — «Խիղճը», *Հայպետհրատ, գինը՝ 4 ռ. 90 կոպ.։*

Ս. ԱԼԱՋԱՋՅԱՆ — «Պարտություն», *Հայպետհրատ, գինը՝ 6 ռ. 50 կոպ.։*

Ք. ԹԱՓԱԼՑՅԱՆ — «Կյանքի արշալույսը», *Հայպետհրատ, գինը՝ 6 ռ. 35 կոպ.։*

«ԲԵԼՈՌՈՒՍԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՆԹՈԼՈԳԻԱ», *Հայպետհրատ, գինը՝ 15 ռ.։*

Ե. ՉՈՒԲԱՐ — «Սկզբում», *Հայպետհրատ, գինը՝ 2 ռ. 85 կոպ.։*

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ — «Հայրենի լեգենդներ», *Հայպետհրատ, գինը՝ 3 ռ. 45 կոպ.։*

«ԷՋԵՐ ՀԱՅ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԱՐՁԱԿԻՑ», *Գիտ. ակադ. հրատարակչ., գինը՝ 7 ռ. 25 կոպ.։*

Ա. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ — «Կարի արտադրության առաջավոր ձևերն ու մեթոդները Հայաստանի կոլտնտեսություններում», *Հայպետհրատ, գինը՝ 1 ռ. 15 կոպ.։*

Լ. ԲԱԽՎ — «Մեր օրերի ռեակտիվ տեխնիկան», *Հայպետհրատ, գինը՝ 1 ռ. 90 կոպ.*

ՅՈՒ. ԼԻՊՍ — «Իրերի ծագումը», *Հայպետհրատ, գինը՝ 10 ռ. 15 կոպ.։*

Մ. ԿԱՍՅԱՆ, Ի. ՏԵՐ ԱԶԱՐՅԱՆ — «Մետաղների կտրման հիմունքները», *Հայպետհրատ., գինը՝ 7 ռ. 80 կոպ.։*